ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**3** ՄԱՐՏ 1971

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении**

## Բովանդակություն

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ— *Լենինյան կուսակցության ֆորումը* . . . . . . . 3

*Հայաստանի կոմունիստական կուսակցության XXV համագումարը* . . . 9

ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՑ-ՀԱՄԱԳՈՒՄԱՐ

Ս. Հ. ՄՈՎՍԻՍՅԱՆ.— *Գիտատեխնիկական պրոգրեսը Հայաստանի արդյունաբերության մեջ* . . . . . . . . . . . . . . 19

Մ. Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆ— *Մասսաների ստեղծագործ աշխատանքի շնորհիվ* . 28

Ս. Խ. ՕՀԱՆՅԱՆ— *Արգասավոր տարիներ* . . . . . . . . . 36

Ք. Բ. ՊԵՏՐՈՍՅԱՆ— *Արդյունաբերական Գորիսը հինգ տարում* . . . . . 40

Ռ. Դ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— *Գոհացուցիչ արդյունքներ* . . . . . . . . 45

Ա. Գ. ԶԱԼԻՆՅԱՆ— *Հայաստանի կոմկուսը թվերով* . . . . . . . . 50

ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԴԻՐԵԿՏԻՎՆԵՐԻ ՆԱԽԱԳԻԾԸ

Ս. Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ— *Էներգետիկան նոր հնգամյակում։* Պ. Ռ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ— *Զարգացման լայն հեռանկարներ։* ՅՈՒ. Ե. ԽՈՋԱՄԻՐՅԱՆ— *Հանուն ժողովրդի բարեկեցության։* Հ. Ա. ՆԱԶԱՐՅԱՆ— *Երկու ցանկություն* . . . . . . . . . . . . . . . . 55

ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

Լ. Ա. ԲԱՅՐԱՄՅԱՆ— *Կոմունարներն անմահ են* . . . . . . . . 67

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ

Վ. ԿՈՐՏՈՒՆՈՎ— *Իմպերիալիզմի գաղափարական առասպելների փլուզումը* 73

---

Բ. Տ. ՅՈՒԶԲԱՇՅԱՆ— *Ընդդեմ անկումայնության և հետադիմության* . . 83

ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ

Կ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆ, Լ. Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ— *Հողային-անտառային մելիորացումը Հայաստանում* . . . . . . . . . . . . . 94

---

Վ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— *Մեր նորոգ ճարտարապետությունը* . . . 104

# Содержание


**Передовая** — Форум ленинской партии . . . . . . . 3
XXV съезд Коммунистической партии Армении . . . . . 9

**От съезда к съезду**

**С. А. Мовсесян** — Научно-технический прогресс в промышленности Армении . . . . . . . . . . . 19
**М. О. Мурадян** — Созидательный труд трудящихся . . . 28
**С. Х. Оганян** — Плодотворные годы . . . . . . . 36
**Х. Б. Петросян** — Промышленный Горис за пять лет . . . 40
**Р. Д. Григорян** — Вдохновляющие итоги . . . . . . 45
**А. Г. Залинян** — Компартия Армении в цифрах . . . . . 50

**Обсуждаем проект Директив XXIV съезда КПСС**

**С. А. Варданян** — Энергетика в новой пятилетке. **П. Р. Арзуманян** — Перспективы развития. **Ю. Е. Ходжамирян**—Во имя благосостояния народа. **Г. А. Наджарян** — Наши пожелания . . . . . . . . . . . . . . 55

**Знаменательные даты**

**Л. А. Байрамян** — Коммунисты бессмертны . . . . . 67

**Международные отношения и борьба идеологий**

**В. Кортунов** — Крушение идеологических мифов империализма . 73

———

**Б. Т. Юзбашян** — Против упадничества и регресса . . . . 83

**Наука и жизнь**

**В. О. Казарян, Л. С. Варданян** — Почвенно-лесная мелиорация в Армении . . . . . . . . . . . . 94

———

**В. М. Арутюнян** — Новая армянская архитектура . . . . 104







# ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՖՈՐՈՒՄԸ

Մարտի 30-ին բացվում է Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարը: Համընդհանուր ուշադրությունը, որ գրավում է ՍՄԿԿ համագումարը թե՛ երկրի ներքին կյանքում, թե՛ արտասահմանում, բացատրվում է այն վիթխարի դերով, որ մարդկության պատմության ներկա դարաշրջանում խաղում է Լենինի ստեղծած կուսակցությունը: Չէ՞ որ XX դարում աշխարհի հասարակական-քաղաքական կարգացման բոլոր իրապես նոր և առաջադիմական երևույթներն անխզելիորեն կապված են լենինյան կուսակցության հեղափոխական գործունեության և պայքարի հետ: Այսօր էլ ՍՄԿԿ XXIV համագումարը ներկայացնում է քաղաքական խոշորագույն մի իրողություն, որը կոչված է ուղենիշ հանդիսանալու Սովետական Միության գալիք կարգացման, ինչպես նաև միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման միասնության հետագա ամրապնդման գործում:

Կուսակցությունը դեպի իր համագումարն է գնում կոմունիստական շինարարության բնագավառում ձեռք բերած մեծագույն հաջողություններով, նոր փորձով հարստացած, վստահ իր քաղաքական գծի ճշմարտացիության մեջ, նոր խիզախումների համար հեղափոխական ավյունով լեցուն: Կուսակցությունը դեպի համագումար է գնում այնպիսի հիշարժան օրերին, երբ ութերորդ հնգամյակը հաջողությամբ ավարտած սովետական ժողովուրդը կանգնել է նոր հորիզոններ տանող ելագծում: Եվ որպես ժողովրդի՝ մարտերում ու աշխատանքում կոփված խնկական ավանգարդ, կուսակցությունը նրան վստահորեն առաջնորդում է կոմունիստական շինարարության ուղիով՝ բանվոր դասակարգին, կոլտնտեսային գյուղացիությանը, մտավորականությանը առավել սերտորեն համախմբելով լենինյան դրոշի ներքո:

«Պետք է առաջ գնալ, պետք է առաջ նայել, պետք է համագումար բերել լավ մտածված և ուշադրությամբ, կուսակցության բոլոր անդամների ընդհանուր աշխատանքով, ընդհանուր ջանքերով *մշակված* տնտեսական շինարարության *գործնական փորձը*»,— ասում էր Վ. Ի. Լենինը կուսակցության IX համագումարին նախապատրաստվելու առթիվ գրած նամակում: Հետևելով մեծ առաջնորդի խորհրդին, կուսակցությունն իր XXIV համագումարն է գնում երկրի էկոնոմիկայի բոլոր բնագավառներում ձեռք բերված գործնական փորձի վիթխարի պաշարով, որը ութերորդ հնգամյակում սովետական մարդկանց ամենօրյա գործունեության ընդհանրական արգասիքն է, ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների կենսագործման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում սովետական ժողովրդի ձեռք բերած պատմական նոր հաղթանակների արդյունքը:

Այդ փորձը, իրոք, հարուստ է: Անցած հնգամյակում խոշոր հաջողություններ են ձեռք բերվել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման, սոցիալական խնդիրների լուծման, սովետական մարդկանց կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման ասպարեզներում: Ամրապնդվել է սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը: Զարգացել է սոցիալիստական դեմոկրատիան, բարձրացել է մեր հայրենիքի միջազգային հեղինակությունը, ամրապնդվել է Սովետական Միության պաշտպանական հզորությունը:

Կոմունիստական կուսակցության քաղաքականությունը և պրակտիկ գործունեությունը կենդանի կերպով մարմնավորում են բոլոր աշխատավորների ու նրանց ավանգարդի օրգանական կապը, որն առավելապես ամրապնդվեց և խորացավ ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների կենսագործման, ութերորդ հնգամյակի հաջող կատարման համար մղած պայքարում: Բնականաբար, իր հերթական XXIV համագումարը կուսակցությունը դիմավորում է ժողովրդի հետ անքակտելի միասնությամբ, օրինական հպարտությամբ ընդհանուր հայտարարի բերելով հնգամյա ստեղծարար աշխատանքի պտուղները:

1970 թվականին ազգային եկամուտը 1965 թվականի մակարդակը գերազանցեց 41 տոկոսով: Արդյունաբերական արտադրության ծավալն աճեց 1,5 անգամ: Արագ զարգացում ստացան մասնավորապես տեխնիկական առաջադիմությունը և արտադրության արդյունավետության բարձրացումը ապահովող ճյուղերը: Հինգ տարում, օրինակ, էլեկտրաէներգիայի արտադրության ծավալը աճեց 54 տոկոսով, մեքենաշինությանն ու մետաղամշակմանը՝ 74, իսկ քիմիական ու նավթաքիմիական արդյունաբերությանը՝ 78 տոկոսով: 8,3 տոկոսով աճել է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը: Ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումների ծավալը կազմել է 352 միլիարդ ռուբլի, որը 1,4 անգամ ավելի է, քան նախորդ հինգ տարում: Գյուղատնտեսության զարգացման համար իրագործված միջոցառումները նույնպես տվել են լուրջ արդյունքներ: Բավական է նշել, որ գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը 1966—1970 թվականներին 21 տոկոսով ավելի էր, քան 1961—1965 թվականներին:

Այս թվերը բավականին պերճախոս կերպով վկայում են բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մեր մեծ հայրենիքի բոլոր աշխատավորների անձնվեր աշխատանքի մասին: Կուսակցության ծրագրային լոզունգն է. «Ամեն ինչ հանուն մարդու, հանուն նրա բարեկեցության»: Ութերորդ հնգամյակում առավել ևս բարձրացան սովետական մարդու նյութական և կուլտուրական մակարդակը, նրա բարեկեցությունը: Բավական է հիշատակել, որ հինգ տարում կառուցվեց ու շահագործման հանձնվեց 518 միլիոն քմ բնակելի տարածություն: Դա նշանակում է, որ 55 միլիոն մարդ փոխադրվեց նոր բնակարան, ընդսմին նրանց 90 տոկոսը՝ առանձին բնակարաններ՝ իրենց հարմարություններով:

Նոր հասարակարգի կառուցման ժամանակակից խնդիրները վճռելիս անշեղորեն ղեկավարվելով լենինյան գաղափարներով, կուսակցությունը հոգ է տանում, որպեսզի աշխատավորների աշխարհայացքը ձևավորվի այդ մեծ գաղափարների ոգով: Կուսակցության գաղափարական աշխատանքի հիմնական բովանդակությունը նպատակամղված է բանվորներին, գյուղացիներին, մտավորականությանը բարձր քաղաքական գիտակցականությամբ դաստիարակելուն: Մասսաներին պինելով Լենինի գաղափարներով, կուսակցությունը ձգտում է, որպեսզի սովետական մարդկանց գաղափարական աճող պինվածությունն իր արտահայտությունը գտնի գործնական աշխատանքում: Եվ, եթե հնգամյակում ձեռք բերվեցին իրոք պատմական հաջողություններ, ապա այդ գործում իր վիթխարի նշանակությունն ունեցավ կուսակցության գաղափարական գործունեությունը, որն առանձնապես մեծ թափ ստացավ Հոկտեմբերյան հեղափոխության 50 և Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյա հոբելյանների տոնակատարությամբ:

Վ. Ի. Լենինը կոմունիստներին կտակել է ոչ միայն պրոպագանդել, զարգացնել մարքսիստական տեսությունը, այլև այն պահպանել խեղաթյուրումներից ու նենգափոխությունից: Անցած ժամանակաշրջանը մարքսիզմ-լենինիզմի տեսության մաքրության պահպանման համար պայքարի մի ժամանակաշրջան էր, երբ մեր կուսակցությանը հաջողվեց հեղափոխական ուսմունքի հողի վրա առավել ևս ամրապնդել միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման միասնությունը: Մեր կուսակցությունը պայքարում է լենինիզմից բոլոր կարգի շեղումների ու նահանջների դեմ, աչքի լույսի պես պահպանում սոցիալիստական գաղափարախոսության մաքրությունը: Նա բոլոր կոմունիստներին ու աշխատավորներին կոչ է անում Լենինից սովորել համոզվածություն և գաղափարական աննկունություն, հեղափոխական տեսության խեղաթյուրումների դեմ պայքարի կրքոտություն, անհաշտվողականություն մարդկանց գիտակցության մեջ հին աշխարհի մնացուկների դրսևորման նկատմամբ: Կուսակցությունն ուսուցանում է, որ բուրժուական և ռևիզիոնիստական գաղափարախոսության նկատմամբ հաշտվողական վերաբերմունքն անհամատեղելի է կոմունիզմի գործուն և գիտակից կառուցողի կերպարի հետ:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը բարձր է գնահատում ժողովրդի վստահությունը: Իր հերթին, սովետական ժողովուրդը ջերմորեն հավատում է կուսակցությանը, ավելի քան հինգ տասնամյակների սոցիալիստական ստեղծարար աշխատանքի փորձից համոզված, որ լենինյան կուսակցությունը սովետական հասարակարգը վարում է միակ ճիշտ, գիտական ուղիով՝ դեպի կոմունիստական գալիքը:

«Շատ բան է արված, հաջողություններն ակնհայտ են,— ասաց Լ. Ի. Բրեժնևը Երևանում, Սովետական Հայաստանի և Հայաստանի կոմկուսի 50-ամյակի տոնահանդեսին,— բայց մեր՝ կոմունիստներիս նշանաբանը եղել և միշտ կլինեն լենինյան խոսքերը. կանգ չառնել նվաճածի վրա, անպայման առաջ շարժվել, անցնել առավել բարդ խնդիրների լուծմանը»: Իսկ առջևում հենց այդ նոր ու բարդ խնդիրներն են ծառանում, նախատեսվում այն բնագծերը, որոնք իրենց կոնկրետ արտահայտությունը կգտնեն ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներում: Սովետական ժողովուրդը վստահ է իր ապագային, որովհետև համոզված է, որ լենինյան կուսակցության համագումարը, ինչպես միշտ, գալիք աշխատանքների ծրագրերը մշակելիս, ելնում է մարքսիզմ-լենինիզմի գիտական սկզբունքներից: Այդ սկզբունքների իմացությունը հնարավորություն է տալիս պարզորոշ տեսնել սոցիալական զարգացման մոտակա և հեռավոր հեռանկարները:

ՍՄԿԿ Կենտկոմի հավանությանն արժանացած և ժողովրդի լայն խավերի քննարկմանը հանձնված՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագիծը հենց այդ գիտական սկզբունքների խոր

իմացությամբ մշակված ստեղծարար ծրագիր է, որ նախատեսում է երկրի ժողովրդական տնտեսության հետագա հարաճուն վերելք, նրա պաշտպանական հզորության առավել ամրապնդում, ժողովրդի կենսամակարդակի անշեղ բարձրացում: Այդ ծրագիրը մարմնավորում է կուսակցության լենինյան գլխավոր գիծը, արտահայտում է սովետական ժողովրդի ամենաարմատական շահերը: Դա երկրի ընդհանուր և յուրաքանչյուրի անձնական շահերի ներդաշնակ միասնության արտահայտությունն է:

Դիրեկտիվների նախագիծն ամենուրեք արժանանում է ժողովրդական պանգվածների միահամուռ հավանությանը և լայնորեն քննարկվում նաև արտասահմանյան մամուլում: Հատկանշական է, որ վերջինիս օրգանները շեշտում են, թե սովետական հնգամյա պլանի դիրեկտիվները ուղղված են ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակի կգալի աճ ապահովելուն: Այդ, իրոք, ամենաէական կետն է, որը դիրեկտիվների նախագծում ընդհանրացված ձևով այսպես է շարադրված. «*Հնգամյակի գլխավոր խնդիրն է՝ ապահովել ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալի վերելք սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության և աշխատանքի արտադրողականության աճի արագացման հիման վրա*»: Հնգամյակի գլխավոր խնդրի կենսագործման համար նախագիծն անհրաժեշտ է համարում ապահովել հանրային արտադրության, հատկապես գյուղատնտեսության, թեթև ու սննդի արդյունաբերության աճի արագ տեմպեր ու համամասնական զարգացում, կգալիորեն բարձրացնել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արդյունավետությունը:

Այսպիսով, հնգամյակի գլխավոր խնդրի կենսագործման բանալին սոցիալիստական արտադրության արդյունավետության բարձրացումն է, գիտատեխնիկական առաջադիմությունը և աշխատանքի արտադրողականության աճի արագացումը: Դա մեր հասարակության զարգացման ներկա էտապում կենսական նշանակություն ունեցող ստրատեգիական այն գիծն է, որ մշակվել է ՍՄԿԿ XXIII համագումարում և կոնկրետ արտահայտություն գտել Կենտկոմի հետագա պլենումներում, մասնավորապես դեկտեմբերյան (1969 թ.) պլենումում: Առաջադրելով գիտատեխնիկական առաջադիմության արագացման խնդիրը, կուսակցությունը դրա մեջ տեսնում է ոչ միայն պարզապես արտադրության քանակական ավելացումը, այլև նոր որակական արդյունքներ, քանի որ կոմունիստական հասարակությունը կարող է հիմնվել գիտության, տեխնիկայի, արտադրության մեջ ամենաառաջավորի վրա: Ֆրանսիական «Էքո» թերթը, անդրադառնալով դիրեկտիվների նախագծում արծարծված այս կարևոր խնդրին, գրում է, թե Մոսկվան, հրապարակելով դիրեկտիվների նախագիծը, ցույց է տալիս, որ նա «հենվում է համարյա բացառապես աշխատանքի արտադրողականության ֆենոմենալ աճի վրա»: Խոսքը տվյալ դեպքում այնպիսի մասշտաբների թռիչքի մասին է, շարունակում է թերթը, որ միանգամայն հնարավոր հարց է ծագում. ինչպիսի՞ն են նրա հաջողության շանսերը: Եթե հաջողությունը ձեռք բերվի, ապա ազգային եկամուտը հինգ տարում կաճի 37—40 տոկոսով: Բնականաբար, ընդգծում է «Էքո»-ն, այդպիսի ճիգերի համար չի կարելի պահանջարկ առաջադրել միայն մարդուն: Ավտոմատացումն ու ծրագրայնացումը ճանաչվում են որպես առաջադիմության էությունն իսկ:

Փարիզյան թերթը հեռու չէ ճշմարտությունից: Գիտատեխնիկական առաջադիմության և աշխատանքի արտադրողականության հիման վրա, կառավարման ու պլանավորման սիստեմի ու մեթոդների կատարելագործման ճանապարհով ապահովվելու է հանրային արտադրության բազմակողմանի ինտենսիվացում և արդյունավետության բարձրացում: «*Արտադրության ինտենսիվացումը և արդյունավետության բարձրացումը,*— նշված է դիրեկտիվների նախագծում,— *երկրի տնտեսական զարգացման հիմնական գիծն են ինչպես մոտակա տարիներին, այնպես էլ երկարատև ժամանակաշրջանում, հանդիսանում են կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման կարևորագույն պայմանը*»:

Դիրեկտիվների նախագիծն աչքի է ընկնում նպատակասլացությամբ. նախատեսվող բոլոր միջոցառումները և ծրագրերը ի սպաս են դրված գլխավոր խնդրի կենսագործմանը: Հատկանշական է, օրինակ, որ հնգամյակում արդյունաբերության հիմնական խնդիրների շարքում կարևոր է համարվում սոցիալիստական էկոնոմիկայի, հատկապես գյուղատնտեսության ու նրա հետ կապված ճյուղերի զարգացման ինդուստրիալ բազայի ընդլայնումն ու կատարելագործումը: Նույն հետևողականությամբ պլանավորելով հնգամյակում արդյունաբերական արտադրանքի միջին հաշվով 42—46 տոկոսով աճ, արտադրության միջոցների արտադրության աճը նախատեսվում է 41—45, իսկ սպառման ապրանքների արտադրությանը՝ 44—48 տոկոսով:

Կուսակցությունը բազմակողմանիորեն մշակել է գյուղատնտեսության արմատական վերելքի պրոբլեմը, որն իր արտահայտությունը գտավ Կենտկոմի հուլիսյան (1970 թ.) պլենումում: Բարձրացնել գյուղատնտեսությունն այնպիսի մակարդակի, որով ամբողջովին բավարարվեին երկրի պահանջները՝ բնակչության պահանջմունքը սննդամթերքի, իսկ արդյունաբերությանը՝ հումքի նկատմամբ,— սա է կոմունիստական շինարարության ներկա էտապի կենտրոնական խնդիրներից մեկը, որի լուծումը խոշոր ավանդ կլինի երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում: Դիրեկտիվների նախագծում գիտական խորությամբ հաշվի են առնված այս բոլոր հարցերը և, գյուղատնտեսությանը հատուկ ուշադրություն է նվիրված: Գյուղատնտեսական արտադրանքը տարեկան միջին հաշվով 20—22 տոկոսով կգերազանցի նախորդ հնգամյակի համապատասխան ցուցանիշները: Պետությունը գյուղատնտեսության զարգացման նպատակին ներդնում է ավելի քան 82 միլիարդ ռուբլի: Գյուղատնտեսությանը կտրամադրվի վիթխարի չափերով տեխնիկա. 1.700 հազար տրակտոր, 1,100 հազար բեռնատար ավտոմեքենա, 1,500 հազար տրակտորի կցան, 170 հազար էքսկավատոր և բուլդոզեր, 541 հազար հացահատիկի կոմբայն, 230 հազար սիլոսահավաք մեքենա և այլն:

Սոցիալիստական շինարարության հաջողության կարևոր գործոն է տրանսպորտի և կապի միջոցների լավ աշխատանքը: Դիրեկտիվների նախագծում պլանավորվում է նոր թափ հաղորդել տրանսպորտի և կապի հետագա զարգացմանը: Խորությամբ ուսումնասիրված և պարզաբանված են կապիտալ շինարարության առավել բարելավման հարցերը: Ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները նախատեսվում է ավելացնել 36—40 տոկոսով:

Լայնածավալ հեռանկարներ բացող ծրագրի բոլոր կետերի հիմնական նպատակը սովետական ժողովրդի բարօրության աննախադեպ բարձրացումն է: Այդ միջոցառումների իրագործումը հնարավորություն կընձեռի հնգամյակում 20—22 տոկոսով բարձրացնել բանվորների և ծառայողների միջին աշխատավարձը, մոտավորապես 30 տոկոսով՝ բնակչության ռեալ եկամուտները:

Կավելացվեն ապրանքային ռեսուրսները: Կկառուցվեն 565—575 միլիոն քառակուսի մետր մակերեսով բնակարաններ:

ՍՄԿԿ XXIV համագումարի քննարկմանը ներկայացվող դիրեկտիվների նախագիծը մարմնավորում է կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունը: Այդ ստեղծարար ծրագիրը նախատեսում է եղբայրական հանրապետությունների տնտեսության ու կուլտուրայի հետագա անշեղ վերելք: Սովետական Հայաստանում, օրինակ, արդյունաբերական արտադրանքը կաճի 60—63 տոկոսով, կգործարկվեն մի շարք նոր ձեռնարկություններ, հատկապես կզարգանա սննդի և թեթև արդյունաբերության, գունավոր մետալուրգիայի և ոչ-մետաղատար մեքենաշինության արդյունաբերությունը: Ոռոգելի հողերը կավելանան ևս 50 հազար հեկտարով, իսկ 130 հազար հեկտար արոտավայրեր կդառնան ջրարբի:

Սովետական Միության եղբայրական ժողովուրդների հետ մեկտեղ Հայաստանի բոլոր աշխատավորները, միահամուռ հավանություն տալով դիրեկտիվների նախագծին, առավել թափ են հաղորդում ՍՄԿԿ XXIV համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությանը: Աշխատանքով և միայն աշխատանքով է ստեղծվում այն ամեն անհրաժեշտը, որ կապմում է մեր սոցիալիստական հասարակության հզորությունը և կենսունակությունը: Այս գիտակցությունն առաջնորդում է սովետական երկրի բոլոր մարդկանց. դա նշանաբանն է նաև Սովետական Հայաստանի աշխատավորների: ՍՄԿԿ XXIV համագումարի նախօրյակին, բարձր գնահատելով հանրապետության բանվորների, գյուղացիների, մտավորականության հայրենանվեր աշխատանքը, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը կառավարական բարձր պարգևների արժանացրեց հանրապետության արդյունաբերական, գյուղատնտեսական մի շարք ձեռնարկությունների և գիտական հաստատությունների: Դրանց թվում էին Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը, նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտը, Ստեփանավանի անասնաբուծական սովխոզ-տեխնիկումը, Նոյեմբերյանի «Ձեյթուն» սովխոզը, Ագարակի պղնձա-մոլիբդենային կոմբինատը, Հոկտեմբերյանի պահածոների գործարանը և այլն:

Կուսակցության համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունը արտահայտում է սովետական մարդկանց կամքն ու ձգտումը՝ նոր հաջողություններ ձեռք բերելու, ավելի լավ աշխատելու, ավելի շատ արտադրանք տալու: Ամենուրեք նրանք խորամուխ են լինում ձեռնարկությունների գործունեության մեջ, քննադատաբար վերլուծում գործերի վիճակը, ռեզերվներ են հայտնաբերում՝ հանրային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար: Գլխավորելով մասսաների շարժումը դեպի տնտեսության զարգացման նոր բնագծեր՝ կուսակցական կազմակերպությունները գաղափարական ու տնտեսական գործունեության բոլոր լծակներն ուղղում են այն նպատակին, որպեսզի յուրաքանչյուր անհատ, որտեղ էլ աշխատելիս լինի, պետական պլանի մեջ տեսնի իր անձնական աշխատանքի ծրագիրը, արժանի ներդրում անի այդ պլանի կատարման գործում:

Մասսաների քաղաքական-աշխատանքային հզոր վերելքի, գալիք լուսաշող հեռանկարների պատշաճ ոգևորության պայմաններում է բացվում ՍՄԿԿ XXIV համագումարը: Կուսակցության ու ժողովրդի անքակտելի միասնությունը նրա աշխատանքի հաջողության լավագույն առհավատչյան է:

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Հայաստանի կոմունիստական կուսակցության XXV համագումարը, որը տեղի ունեցավ անցած ամսի 25—26-ը, խոշոր իրադարձություն է հանրապետության կոմունիստների, բոլոր աշխատավորների կյանքում: Հանրապետության կուսակցական կազմակերպությունները համագումար էին եկել կուռ ու միասնական շարքերով, կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում ձեռք բերած աննախընթաց հաջողություններով, Սովետական Միության կոմունիստական կուսակցության և նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը սերտ համախմբված:

ՀԿԿ XXV համագումարը լսեց և քննարկեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Ե. Քոչինյանի հաշվետու զեկուցումը Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի 1966—1970 թվականների գործունեության մասին: Համագումարը հաշվետու ժամանակաշրջանում ՀԿԿ Կենտկոմի քաղաքական գիծը գտավ ճիշտ, իսկ պրակտիկ գործունեությունը՝ բավարար: Համագումարը նաև լսեց ու քննարկեց ՀԿԿ Կենտկոմի վերստուգիչ հանձնաժողովի զեկուցումը, ընտրեց ՀԿԿ Կենտրոնական կոմիտեի և վերստուգիչ հանձնաժողովի նոր կազմ, ինչպես և Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարի պատգամավորներ:

«ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը՝ «ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվները ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ» զեկուցումով հանդես եկավ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ ընկ. Բ. Հ. Մուրադյանը: Համագումարը միահամուռ հավանություն տվեց նոր հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագծին:

* * *

Հայաստանի կոմունիստական կուսակցության XXV համագումարը նշեց, որ հաշվետու ժամանակաշրջանը հագեցված է կարևոր իրադարձություններով: Հետևողականորեն կենսագործելով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները, մեր պանծալի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և մտավորականությունն իրենց հայրենանվեր աշխատանքով հաջողությամբ կատարեցին 8-րդ հնգամյա պլանը և նշանակալից նվաճումների հասան ժողովրդական տնտեսության զարգացման, բնակչության կենսամակարդակի բարձրացման ու երկրի պաշտպանունակության ամրապնդման բնագավառներում: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակի, մեր կուսակցության ու սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինի

ծննդյան 100-ամյակի, երկրորդ համաշխարհային պատերազմում ֆաշիստական Գերմանիայի դեմ Սովետական Միության տարած պատմական հաղթանակի 25-ամյակի տոնակատարությունները առաջացրին ստեղծագործական աշխատանքի վերելք, դարձան բոլոր աշխատավորների ինտերնացիոնալ համախմբվածության, միջազգային հեղափոխական ուժերի միասնության ու մարտունակության բարձրացման կարևոր գործոններ: Ավելի ու ավելի աճեց ՍՍՀՄ դերը համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման, հեղափոխական ուժերի համախմբման, սոցիալիզմի, դեմոկրատիայի ու խաղաղության համար մղվող պայքարում:

Հաշվետու ժամանակաշրջանն առանձնահատուկ նշանակություն ունի իր ազգային վերածննդի կեսդարը բոլորած մեր հանրապետության աշխատավորների կյանքում: Ժողովրդական տնտեսության ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում ձեռք բերած խոշոր հաջողությունների համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը Հայկական ՍՍՀ-ին երկրորդ անգամ արժանացրեց Լենինի շքանշանի, իսկ նրա փառապանծ 50-ամյակի օրերին պարգևատրեց Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանով:

Սովետական Միության շքանշաններով պարգևատրվեցին նաև հանրապետության մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ, կոլտնտեսություններ, սովխոզներ ու գիտական հիմնարկություններ, որոնք մեծ հաջողությունների են հասել հնգամյակի պլանների կատարման գործում:

Մեր հանրապետության բոլոր աշխատավորները բերկրալի ու անմոռաց օրեր ապրեցին Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակի տոնակատարության օրերին: Ազգային մեծ տոնի առթիվ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների սովետի ջերմագին ողջույնը, տոնահանդեսներին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի, Սովետական Միության եղբայրական հանրապետությունների պատվիրակությունների մասնակցությունը, կոմունիստական շինարարության բնագավառում Սովետական Հայաստանի կոմունիստների, ամբողջ հայ ժողովրդի կատարած բեղմնավոր աշխատանքի բարձր գնահատականը ոգևորեց և նոր եռանդ ներշնչեց մեր բոլոր բանվորներին, գյուղացիներին ու մտավորականներին, որոնք առավել ուժեղ թափով պայքար ծավալեցին՝ նորանոր հաջողությունների հասնելու և ՍՄԿԿ XXIV համագումարն արժանավայել դիմավորելու համար:

Հետևողականորեն կենսագործելով ՍՄԿԿ XXIII համագումարի և դրան հաջորդած կուսակցության Կենտկոմի պլենումների որոշումները, Հայաստանի կոմունիստական կուսակցությունն ու նրա Կենտկոմն անցած հինգ տարում հանրապետության աշխատավորներին տարել են հաղթանակից հաղթանակ, ապահովել կոմունիստական շինարարության խնդիրների լուծումը: Բուռն վերելք է ապրել Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսությունը, զարգացել են կուլտուրան, լուսավորությունը, գիտությունը, բարձրացել է ժողովրդի կենսամակարդակը:

Հաշվետու ժամանակաշրջանում հաջողությամբ կատարվել է ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներով նախատեսված արդյունաբերական արտադրանքի ծավալի աճի հնգամյա պլանը: Անցած հինգ տարում հանրապետությունում արդյունաբերական արտադրանքի ծավալը մեծացել է մոտավո-



րապես 1,8 անգամ: Արտադրության աճի տարեկան միջին տեմպերը 1966—1970 թվականներին կազմել են 12,5 տոկոս, 1961—1965 թվականների 9,4 տոկոսի դիմաց: 1966—1970 թթ. հիմնական արտադրաֆոնդերն աճել են ավելի քան 60 տոկոսով:

Արդյունաբերության հիմնական ու շրջանառու ֆոնդերն արդյունավետ օգտագործելու, բազմաթիվ ձեռնարկություններ նոր տեխնիկայով զինելու, տեխնոլոգիական պրոցեսները կատարելագործելու և ներքին ռեզերվները գործի դնելու շնորհիվ հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականությունը 1970 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, բարձրացավ 31 տոկոսով, նախորդ հինգ տարիների 15,5 տոկոսի դիմաց:

Հնգամյակում հիմնականում ավարտվեց արդյունաբերական ձեռնարկությունների անցումը պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմին: Այդ սիստեմով գործող ձեռնարկություններն այժմ թողարկում են արդյունաբերական արտադրանքի 90 տոկոսը: Հնգամյակում հատկապես արագորեն զարգացան էներգետիկան, մեքենաշինությունը, մետաղամշակությունը, թեթև ու սննդի արդյունաբերությունը: Առավել մեծ տեմպերով աճեցին ճշգրիտ սարքաշինությունը, էլեկտրոնային և ռադիոտեխնիկական արդյունաբերությունը, ճյուղեր, որոնք բնորոշում են ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջադիմությունը: Այդ ամենի հետ միասին հանրապետությունում ստեղծվեց ավտոմոբիլային ու բժշկական արդյունաբերություն, դրվեցին միկրոբիոլոգիական արդյունաբերության հիմքերը: Հնգամյակում շահագործման հանձնվեցին 110 արդյունաբերական ձեռնարկություններ և խոշոր արտադրամասեր:

Հաշվի առնելով էներգետիկայի վճռական դերը ժողովրդական տնտեսության վերելքի գործում, հանրապետությունում լուրջ միջոցառումներ են իրագործվել էներգետիկ բազայի բուռն զարգացման համար: Դրա շնորհիվ հնգամյակում էլեկտրակայանների ընդհանուր կարողությունն աճեց մոտավորապես 1,9 անգամ, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացավ 2,13 անգամ: Էներգետիկան հետագայում ևս պետք է աճի արագ տեմպերով: Դրա համար լայնորեն ծավալվում է նոր օբյեկտների շինարարությունը. 1971—1975 թվականներին կավարտվի Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի, Որոտանի կասկադի հիդրոէլեկտրակայանների շինարարությունը և կգործարկվի ատոմային էլեկտրակայանի առաջին հերթը:

Հաշվետու ժամանակաշրջանում մեծ չափով զարգացել է նաև արդյունաբերության «Բ» խումբը: Ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ճյուղերի արտադրությունը 1970 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, ավելացել է 1,8 անգամ: 1966—1970 թթ. թեթև արդյունաբերության արտադրանքի ծավալն աճել է 1,73 անգամ: Զգալիորեն աճել են նաև սննդի, մսի, կաթի, ինչպես նաև տեղական արդյունաբերության ճյուղերը:

Ընկ. Ա. Ե. Քոչինյանն իր զեկուցման մեջ նշեց, որ «Հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, Մինիստրների սովետը շարունակում էին արտադրողական ուժերի առավել ճիշտ և տնտեսապես հիմնավորված տեղաբաշխման կուրսը: Շատ քաղաքներում, շրջանային կենտրոններում, ավաններում և այլ բնակավայրերում ստեղծվեցին արդյունաբերական նոր օբյեկտներ կամ գործող ձեռնարկությունների մասնաճյուղեր:

Ներկայումս արդյունաբերական օբյեկտներ կան հանրապետության 130

բնակավայրերում: Նորաստեղծ ձեռնարկությունների զգալի մասը տեղադրված է հանրապետության շրջաններում»: Այդ կարևոր միջոցառման շնորհիվ ձեռնարկությունները ոչ միայն մոտեցվում են հումքային բազային, այլև ապահովվում է աշխատուժի արդյունավետ օգտագործումը, շրջանների բնակչության տեխնիկական և կուլտուրական մակարդակի բարձրացումը:

ՀԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ ասված է, որ «Արդյունաբերության հաջողությունները իրոք որ ակնառու են: Բայց այդ դեռ չի նշանակում, թե էկոնոմիկայի այդ առաջատար բնագավառում մենք չենք ունեցել, կամ չունենք լուրջ թերություններ ու բացթողումներ:

Կուսակցական ու սովետական օրգանները, մինիստրություններն ու գերատեսչությունները դեռ չեն հասել պետական պլանների կատարմանը արդյունաբերության բոլոր ճյուղերում և բոլոր ձեռնարկություններում: Անհանդուրժելի է, որ արդյունաբերության այնպիսի կարևոր ճյուղերը, ինչպիսիք են գունավոր մետալուրգիան, քիմիական և նավթաքիմիական արդյունաբերությունը, ամբողջությամբ վերցրած, չապահովեցին հնգամյա պլանով նախատեսված արտադրանքի թողարկման առաջադրանքները»:

Դեռևս մեծ է արտադրական պլանները թերակատարող ձեռնարկությունների թիվը, առանձին ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը զգալիորեն ետ են մնում միջին աշխատավարձի աճից: Լուրջ թերություններ կան նաև նոր կարողությունների յուրացման, հիմնական արտադրական ֆոնդերի օգտագործման, արտադրական պրոցեսների ավտոմատացման, արտադրամասերի կոմպլեքսային մեքենայացման, արտադրական և աշխատանքային կարգապահության ամրապնդման, արտադրանքի որակի բարելավման և այլ բնագավառներում:

Չնայած նրան, որ հաշվետու ժամանակաշրջանում հանրապետության տրանսպորտի և կապի աշխատողները հիմնականում լուծել են առաջադրված խնդիրները, բայց նրանց գործունեության մեջ ևս կան էական թերություններ: Երկաթուղային տրանսպորտի զարգացումը ետ է մնում հանրապետության էկոնոմիկայի աճի տեմպերից, նվազել է ավտոպարկի օգտագործման գործակիցը, ցածր է ուղևորների սպասարկման կուլտուրան, հեռախոսային ցանցն անկանոն է գործում և այլն:

Հայաստանի կոմկուսակցության XXV համագումարը կուսակցության քաղկոմներից, շրջկոմներից, սկզբնական կազմակերպություններից, մինիստրություններից, գերատեսչություններից ու ձեռնարկությունների տնտեսական ղեկավարներից պահանջեց. կտրուկ միջոցների դիմել եղած թերությունները վերացնելու, արտադրական պլանները տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով կատարելու և անհրաժեշտ պայմաններ ստեղծելու նոր հնգամյա պլանով նախատեսվող հանրապետության արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալը 60—63 տոկոսով մեծացնելու, գունավոր մետալուրգիայի, մեքենաշինության ոչ մետաղատար արտադրությունների, թեթև ու սննդի արդյունաբերության հետագա զարգացումն ապահովելու, ինչպես նաև կապի ու տրանսպորտի առջև դրված խնդիրները լրիվ կատարելու համար:

ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների սովետը, անշեղորեն կենսագործելով ՍՄԿԿ XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները, անցած 5 տարում նշանակալի աշխատանք են կատարել նաև գյուղատնտեսության զարգացման



բնագավառում: Նրանք մի շարք միջոցառումներ են մշակել գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման, արտադրության կենտրոնացման, մասնագիտացման ու ինտենսիվացման, կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատանքի կազմակերպման բարելավման, ներկոլտնտեսային դեմոկրատիայի հետագա զարգացման համար: Առավել լուրջ ուշադրություն է նվիրվել գյուղատնտեսական արտադրության մեքենայացմանն ու այդ միջոցով աշխատանքի արտադրողականության բարձրացմանը: 1966—1970 թթ. գյուղատնտեսությունն ստացել է 7.329 տրակտոր, 4.657 բեռնատար ավտոմեքենա, 56 միլիոն ռուբլու այլ մեքենաներ ու տեխնիկա:

Անցած ժամանակաշրջանում խոշոր գործ է կատարված ջրաշինարարության ասպարեզում. կառուցվել ու շահագործման են հանձնվել մի շարք ջրանցքներ, ջրամբարներ, ջրհան կայաններ և հիդրոտեխնիկական այլ կառուցվածքներ: Ջրաշինարարության նպատակով կապիտալ ներդրումները կազմել են 172,3 միլիոն ռուբլի, նախորդ հնգամյակի 70 միլիոն ռուբլու դիմաց: Դրա շնորհիվ ոռոգելի է դարձել ևս 34 հազար հեկտար հողատարածություն և ջրարբիացվել են 133 հազար հեկտար ամառային արոտներ:

Հնգամյակի տարիներին զգալի աշխատանք է կատարվել նաև հանքային պարարտանյութերի օգտագործման, նոր հողերի յուրացման, անտառային նոր զանգվածների ստեղծման, ցանքաշրջանառության կիրառման, հողերի էրոզիայի կանխման և ագրոտեխնիկական այլ միջոցառումների իրագործման ասպարեզում: Այդ բոլորի շնորհիվ 1966—1970 թթ. հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքը (համադրելի գներով), 1961—1965 թթ. համեմատությամբ, աճեց մոտ 20 տոկոսով: Այդ տարիներին առանձնապես մեծ չափով աճեց բանջարեղենի, խաղողի, պտղի, ձվի արտադրությունը: Ուշագրավն այն է, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումը հիմնականում տեղի է ունեցել բերքատվության և անասունների մթերատվության բարձրացման հաշվին:

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման հետ միասին ավելացել է նաև դրանց ապրանքային ելքը: Դրա շնորհիվ 1966—1970 թթ. 1961—1965 թթ. համեմատությամբ, բանջարեղենի վաճառքը և հանձնումները ավելացել են 1,9 անգամ, կարտոֆիլինը՝ 2,6 անգամ, խաղողինը՝ 60,1 տոկոսով, պտղինը՝ մոտ 2 անգամ, մսինը՝ 20,4 տոկոսով, կաթինը՝ 25, ձվինը՝ 54 տոկոսով:

Գյուղի աշխատավորները հատկապես մեծ հաջողությունների հասան 1970 թվականին՝ հոբելյանական տարում: Նրանք հացահատիկի, բանջարեղենի, կարտոֆիլի, խաղողի, պտուղների, մսի, կաթի և ձվի արտադրության ու մթերումների ծավալով գերազանցեցին մինչ այդ ձեռք բերած ամենաբարձր մակարդակը:

Գյուղատնտեսության բնագավառում հաջողություններն ավելի մեծ կլինեին, եթե մի շարք շրջանների կոլտնտեսային ու սովխոզային արտադրության մեջ տեղ չգտնեին այնպիսի լուրջ թերություններ, ինչպիսիք են հիմնական արտադրամիջոցների, հատկապես հողի, անբավարար օգտագործումը, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասունների մթերատվության ցածր մակարդակը, այգիների անբավարար մշակությունը, աշխատատար պրոցեսների դանդաղ մեքենայացումը, մեխանիզատորական կադրերի պակասը, ոռոգման ջրի մեծ չափերի հասնող կորուստը և այլն:

Չնայած նրան, որ որոշ չափով բարելավվել է սովխոզների տնտեսական գործունեությունը և նրանք 1970 թվականին գերակատարեցին օգուտների տարեկան առաջադրանքը, բայց, այնուամենայնիվ, հանրապետության սովխոզների աշխատանքում դեռևս կան էական թերություններ: Շատ սովխոզներում ցածր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը, արդյունավետ չեն օգտագործվում արտադրամիջոցները, դանդաղ է արմատավորվում տնտհաշվարկը, բարվոք վիճակում չէ փոնդահատույցը և այլն, որոնց հետևանքով դրանց զգալի մասը դեռևս աշխատում է վնասով:

Այդ թերությունները ասում են այն մասին, որ Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության առանձին շրջկոմներ և շրջսովետների գործկոմներ պահանջվածին պես չեն խորանում կոլտնտեսությունների ու սովխոզների գործունեության մեջ, անբավարար են օգնում նրանց և բոլոր միջոցները գործի չեն դնում՝ պլանային առաջադրանքների կատարումն ապահովելու համար:

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագծում նոր, ավելի մեծ խնդիրներ են դրված գյուղատնտեսության առջև:

Նոր հնգամյակում առավել զարգացում կստանա նաև Հայաստանի գյուղատնտեսությունը, որի համար 1971—1975 թվականներին կներդրվեն 844 միլիոն ռուբլու կապիտալ միջոցներ, որոնք նախորդ հինգ տարում ներդրված կապիտալ միջոցներից 50 տոկոսով ավելի են:

ՀԿԿ XXV համագումարը հանրապետության բոլոր կուսակցական, սովետական, գյուղատնտեսական օրգանների, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, բոլոր կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, գիտության գործիչների առջև խնդիր դրեց՝ նոր եռանդով ձեռնամուխ լինել գյուղատնտեսության վերելքի ապահովմանը, հաջողությամբ կատարել հնգամյա պլանով սահմանված առաջադրանքները:

Անշեղորեն կենսագործելով ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումները, հաշվետու ժամանակաշրջանում հանրապետության կուսակցական կազմակերպությունները, սովետական օրգանները լուրջ ջանքեր են գործադրել կապիտալ շինարարության բնագավառում: Դրա շնորհիվ Հայաստանի շինարարական և մոնտաժային կազմակերպությունները սահմանված ժամկետից երեք ամիս շուտ կատարեցին կապիտալ ներդրումների և շինմոնտաժային աշխատանքների հնգամյա առաջադրանքները: Առանձնապես հերոսական աշխատանք են կատարել ու կատարում մեր թունելագործները:

Կապիտալ շինարարության բնագավառում ձեռք բերված ակնառու հաջողությունների կողքին կան նաև էական թերություններ: Առանձին շինտրեստներ թերակատարում են պլանները, լուրջ ուշադրություն չեն նվիրում շինարարության որակին, թույլ են տալիս խախտումներ: Թերություններ կան և նախագծային-հաշվային փաստաթղթերի պատրաստման, քաղաքաշինության, կոմունալ, կուլտ-կենցաղային, առևտրի և այլ օբյեկտների կառուցման գործում:

Եղած թերությունների վերացման և կապիտալ շինարարության՝ նոր հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքների հաջող կատարման համար ՀԿԿ XXV համագումարը համապատասխան որոշում ընդունեց:

Համագումարում պերճախոս փաստեր բերվեցին աշխատավորների բա-



րեկեցության բարձրացման վերաբերյալ, որը եղել և մնում է կուսակցության հոգատարության գլխավոր առարկան: Հաշվետու ժամանակաշրջանում հանրապետության ազգային եկամուտը աճել է ավելի քան 1,54 անգամ, մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները՝ 37,2 տոկոսով: Հասարակական ֆոնդերից բնակչության եկամուտները աճել են 67,2 տոկոսով: ՀԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ և պատգամավորների ելույթներում հիացմունք պատճառող բավականին տվյալներ հաղորդվեցին ապրանքաշրջանառության ծավալման, բնակարանաշինարարության, կոմունալ ու կենցաղ-սպասարկման, ժողովրդական առողջապահության, սպորտի ու ֆիզկուլտուրայի բնագավառներում ձեռք բերված հաջողությունների մասին: Քննադատական լուրջ խոսք ասվեց նաև գոյություն ունեցող թերությունների և դրանց շուտափույթ վերացման վերաբերյալ:

«Ինչպես գիտեք,— իր զեկուցման մեջ ասաց ընկ. Ա. Ե. Քոչինյանը,— ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալից վերելքի ապահովումը նոր հնգամյակի գլխավոր խնդիրն է: Սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության և աշխատանքի արտադրողականության աճի արագացման հիման վրա առաջիկա տարիներին զգալիորեն կբարձրանա մեր մարդկանց նյութական բարեկեցությունը: Այդ խնդրի իրականացմանը պետք է ուղղվի հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական ու տնտեսական օրգանների քաղաքական ու կազմակերպական ամբողջ աշխատանքը»:

Հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ որոշակի տեղ են գրավել ժողովրդական կրթության և գիտության զարգացման հարցերը: Մի շարք կարևոր միջոցառումների շնորհիվ հանրակրթական դպրոցներում որոշ չափով բարելավվել է ուսումնա-դաստիարակչական աշխատանքը, սկսվել է համընդհանուր միջնակարգ կրթության իրականացումը: Ընթացիկ ուսումնական տարում Հայաստանում գործող 1.338 հանրակրթական միջնակարգ, ութամյա և տարրական դպրոցներում սովորում են 627.608 աշակերտ, կամ 103.495 աշակերտով ավելի, քան 1966—1967 ուսումնական տարում:

Հաջողությունները նշանակալի են նաև միջնակարգ մասնագիտական կրթության, բուհերի ու տեխնիկումների ցանցի ընդարձակման ասպարեզում: Բուհերի և տեխնիկումների ուսանողների կոնտինգենտը վերջին 4 տարում աճել է 28 տոկոսով: Ժողովրդական տնտեսության առավել առաջադիմական ճյուղերի համար պատրաստվել են բարձր որակավորման բավականին մասնագետներ:

Անցած հնգամյակում մեծ գործ է կատարված գիտության զարգացման բնագավառում: Հանրապետության գիտնականները ակտիվ մասնակցություն են ցուցաբերել գիտական և պրակտիկ մեծ հետաքրքրություն ներկայացնող պրոբլեմների լուծման գործում: Նրանք իրենց հետազոտություններով նպաստում են հանրապետության արտադրողական ուժերի և կուլտուրայի զարգացմանը, նշանակալից ներդրում են կատարում հայրենական գիտության մեջ: Լայն ճանաչում են գտել աստրոֆիզիկայի, մաթեմատիկայի, մեխանիկայի, քիմիայի, կենսաբանության, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների ստեղծման ասպարեզում մեր գիտնականների կատարած աշխատանքները:

Հաջողությունները նշանակալից են նաև հասարակական գիտությունների

զարգացման գործում: Մեր պատմաբանները, փիլիսոփաները, տնտեսագետները, իրավաբանները և մյուսները մշակում են արդիական մի շարք պրոբլեմներ և օգնում աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը: Հանրապետության գաղափարական կյանքում կարևոր իրադարձություն էր հայերեն լեզվով Վ. Ի. Լենինի Երկերի 4-րդ հրատարակության բոլոր 45 հատորների, ինչպես և Մարքսի ու Էնգելսի մի շարք աշխատությունների լույս ընծայումը: Հրատարակվել են նաև գիտական և քաղաքական կարևոր նշանակություն ունեցող այնպիսի գործեր, ինչպիսիք են «Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծեր», «Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների պատմության ուրվագծեր», «Անդրկովկասի կոմունիստների հիշողությունները Վ. Ի. Լենինի մասին» և այլն:

Ժողովրդական կրթության ու գիտության բնագավառներում, իհարկե, քիչ չեն նաև թերությունները, որոնց մասին համագումարում քննադատական լուրջ խոսք ասվեց և կոնկրետ միջոցառումներ նշվեց դրանց վերացման համար:

Ուղեցույց ունենալով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները, Հայաստանի կոմունիստական կուսակցությունը հաշվետու ժամանակաշրջանում ուժեղացրել է գաղափարական աշխատանքը, այն համարել իր գործունեության կարևորագույն բնագավառը: Մարքսիզմ-լենինիզմի վրա խարսխված իրենց գաղափարական աշխատանքը կուսակցական կազմակերպություններն ուղղել են կոմունիստական շինարարության խնդիրների լուծմանը, աշխատավորներին Սովետական Միության կոմունիստական կուսակցության շուրջը համախմբմանը, նրանց ինտերնացիոնալիստական ու ժողովուրդների բարեկամության ոգով դաստիարակմանը: Այդ նպատակին են ծառայել մասսաների շրջանում տարվող պրոպագանդան ու ագիտացիան, կոմունիստների քաղաքական ուսուցման ցանցը, ինչպես նաև մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, գրականությունն ու կինոն, կուլտուր-լուսավորական հիմնարկությունները, ստեղծագործական կազմակերպությունները և այլն, որոնց գործունեությունը որոշակիորեն բարելավվել է:

Աննախընթաց վերելք է ապրել ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, որը կոմունիստական շինարարության պրոցեսում դրսևորվող աշխատանքային կուլտուրա է: Վ. Ի. Լենինն ասում էր, որ «ժողովրդական մասսաները ոչ մի տեղ այնպես շահագրգռված չեն իսկական կուլտուրայով, ինչպես մեզանում, այդ կուլտուրայի խնդիրները ոչ մի տեղ այնպես խոր ու այնպես հետևողական կերպով չեն դրվում, ինչպես մեզանում»:

Հայաստանի կոմկուսը սիստեմատիկորեն ծավալվող իր գաղափարական աշխատանքը միշտ ուղղել է աշխատավորներին հայրենասիրության ոգով դաստիարակմանը, հայրենասիրություն, որը կոփվել է սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում, փայլուն քննություն բռնել Հայրենական մեծ պատերազմում:

Սովետական հայրենասիրությունը սերտորեն կապված է ինտերնացիոնալիզմի հետ. դրանք հանդես են գալիս անխախտ միասնությամբ: «Լինել հայրենասեր և միևնույն ժամանակ տոկուն, համոզված ինտերնացիոնալիստ, — ասում է ընկ. Լ. Ի. Բրեժնևը, — նշանակում է խորապես ըմբռնել սոցիալիստական աշխարհայացքը, սոցիալիստական մշակույթը, նշանակում է հավատարիմ լինել լենինյան մեծ ուսմունքին»:



Եղբայրական հանրապետությունների հետ ունեցած բարեկամական կապերի ամրապնդման, մեր և նրանց քաղաքների, շրջանների, հիմնարկությունների և ձեռնարկությունների միջև սոցիալիստական մրցության ծավալման, առաջավոր փորձի փոխանակման, գիտական կարևոր պրոբլեմների համատեղ քննարկման և այլ միջոցներով Հայաստանի կոմկուսն ուժեղացրել է աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը, մյուս ժողովուրդների նկատմամբ սերն ու համակրանքը:

Շրջապատված լինելով ջերմ հոգատարությամբ, սովետահայ գրականության և արվեստի գործիչները վերջին հինգ տարում ստեղծել են ոչ քիչ թվով բարձրարժեք գործեր, որոնք իրավացիորեն արժանացել են բարձր գնահատականի: Դրական երևույթ է այն, որ գրական կյանքում որոշակի շրջադարձ է կատարվել դեպի արդիականությունը և պատմա-հեղափոխական թեմատիկան:

Բայց, ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ, մեզ մոտ, ցավոք, գրական լավագույն ստեղծագործությունները հանդես են գալիս երկար ընդհատումներով: Բացի այդ, որոշ գրողների վարպետության ցածր մակարդակի և պատասխանատվության զգացումի պակասի հետևանքով երբեմն լույս աշխարհ են գալիս գաղափարական և գեղարվեստական տեսակետից թույլ ստեղծագործություններ, որոնցում ժամանակի բարդ պրոբլեմների խոր վերլուծությունը փոխարինվում է մակերեսային ու պարզունակ դատողություններով, ոչ տիպական դեպքերի ու իրադարձությունների էմպիրիկ շարադրանքով, կյանքի ստվերոտ կողմերի ժամանակավրեպ նկարագրություններով:



ՀԿԿ XXV համագումարը կուսակցական կազմակերպություններից պահանջեց պատշաճ բարձրության վրա դնել գաղափարական աշխատանքը, վերացնել եղած թերությունները, կատարելագործել պրոպագանդայի ու քաղաքական ագիտացիայի ձևերն ու մեթոդները, ամեն կերպ ուժեղացնել գաղափարական ներգործության օրգանների՝ մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության, կինոյի, ստեղծագործական բոլոր կազմակերպությունների գործունեությունը և այն լրիվ ի սպաս դնել աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը:

Հայաստանի կոմկուսակցության համագումարը հանգամանորեն անդրադարձավ նաև կազմակերպական-կուսակցական աշխատանքի հարցերին: ՀԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ նշվեց, որ հաշվետու ժամանակաշրջանում հանրապետության կուսակցական կազմակերպության գործունեության մեջ բնորոշ է կազմակերպական և քաղաքական աշխատանքի մակարդակի բարձրացումը: ՀԿԿ Կենտկոմը, քաղկոմները, շրջկոմները զգալի գործ են կատարել կուսակցական կազմակերպությունների մարտունակությունը բարձրացնելու, ստեղծագործական նախաձեռնությունը զարգացնելու, կուսակցական ու պետական կարգապահությունն ամրապնդելու ասպարեզում:

Հաշվետու ժամանակաշրջանում հանրապետության կուսկազմակերպությունն աճել է գրեթե 20 հազար մարդով և 1971 թ. հունվարի 1-ի տվյալներով իր շարքերում ունի 130.353 կոմունիստ: Կուսակցության շարքերը հիմնականում համալրվել են առաջավոր բանվորների ու գյուղացիների հաշվին: Կուսակցության շարքերը նոր ընդունվածների և, առհասարակ, երիտասարդ կոմունիստների դաստիարակության գործը մշտապես գտնվել է կուսկազմակերպությունների ուշադրության տեսադաշտում:

Հայաստանի կուսակցական կազմակերպությունների գերակշռող մեծա-







մասնությունը հաջողությամբ է կատարում իր ֆունկցիան, հանդես գալիս որպես աշխատավորական կոլեկտիվների կազմակերպիչ ու քաղաքական ղեկավար, ակտիվորեն պայքարում կուսակցության կողմից առաջադրված կոմունիստական շինարարության գործնական խնդիրների լուծման համար:

Բազմաթիվ կուսակցական կազմակերպություններ վերջին շրջանում արմատապես բարելավել են որոշումների կատարման ստուգումը, կադրերի ընտրությունը: Նրանք բարձրացրել են հանձնարարված գործի նկատմամբ մարդկանց պատասխանատվությունը, ուժեղացրել սոցիալիստական սեփականության պահպանման համար մղվող պայքարը:

Կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ ու ամենօրյա օգնությամբ լայն գործունեություն են ծավալել տեղական սովետները, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, ժողովրդական վերահսկողության օրգանները և մյուս կազմակերպությունները: Նրանք իրենց առջև դրված խնդիրների կատարումով կուսակցությանը մեծապես օգնում են արագացված տեմպերով առաջ մղելու մեր ընդհանուր գործը՝ կոմունիստական հասարակարգի կառուցումը:

Այս ամենի հետ միասին, ՀԿԿ XXV համագումարը նշեց, որ կուսակցության առանձին քաղկոմների, շրջկոմների ու սկզբնական կազմակերպությունների աշխատանքում դեռևս կան թերություններ ու բացթողումներ: Մի շարք շրջաններում լուրջ ուշադրություն չի նվիրվում ներկուսակցական աշխատանքին, քիչ գործ է կատարվում սկզբնական կազմակերպությունների ու բոլոր կոմունիստների ակտիվության և ստեղծագործական նախաձեռնության զարգացման, կադրերի հետ կատարվող աշխատանքի բարելավման համար և այլն: Կուսակցական որոշ աշխատողներ պրակտիկայում կուսակցական-քաղաքական աշխատանքը հմտորեն չեն զուգակցում տնտեսական գործունեության հետ, երբեմն փոխարինում են սովետական, տնտեսական օրգաններին, հրապուրվում տնտեսական մանր հարցերի լուծմամբ՝ ի վնաս կուսակցական-քաղաքական և կազմակերպական աշխատանքի:

Այդ և մյուս թերությունների վերացման համար համագումարը կոնկրետ միջոցներ նշեց և կուսակցության քաղկոմներից, շրջկոմներից ու բոլոր կազմակերպություններից պահանջեց ամեն կերպ ուժեղացնել կազմակերպական-կուսակցական աշխատանքը, բարձրացնել կոմունիստների դերը և բոլոր աշխատավորներին մոբիլիզացնել հանրապետության էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման գործում նորանոր հաջողությունների հասնելու և ՍՄԿԿ XXIV համագումարը արժանավայել գործերով դիմավորելու համար:

Բուռն խանդավառության մթնոլորտում Հայաստանի կոմկուսակցության XXV համագումարը ողջույնի հեռագիր ուղարկեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին, նրան հավաստիացնելով, որ Հայաստանի կոմկուսը այսուհետև ևս հաջողությամբ կգլխավորի հանրապետության աշխատավորների պայքարը հանուն կուսակցության մեծ կանխագծումների իրականացման:

ՀԿԿ XXV համագումարն անցավ ՍՄԿԿ լենինյան Կենտկոմի շուրջը հանրապետության կոմունիստների ու բոլոր աշխատավորների սերտ համախմբվածության նշանաբանով և մեկ անգամ ևս ցույց տվեց, որ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը եղել է, կա ու կլինի Սովետական Միության կոմունիստական կուսակցության նվիրված ու մարտական ջոկատը:

---

# Համագումարից ՀԱՄԱԳՈՒՄԱՐ

## ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Ս. Հ. ՄՈՎՍԻՍՅԱՆ

ՀՍՍՀ Մինիստրների սովետի նախագահի առաջին տեղակալ

*ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում գլխավոր տնտեսական խնդիրը հանդիսանում էր՝ գիտության և տեխնիկայի նվաճումների ըստ ամենայնի օգտագործման, ամբողջ հանրային արտադրության ինդուստրիալ զարգացման, նրա արդյունավետության ու աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա ապահովել արդյունաբերական արտադրության նշանակալի աճ, գյուղատնտեսության զարգացման արագ ու կայուն տեմպեր և դրա շնորհիվ էապես բարձրացնել ժողովրդի կենսամակարդակը, ավելի լրիվ բավարարել սովետական բոլոր մարդկանց նյութական և կուլտուրական պահանջմունքները:*

*Երկրի առջև խոշոր մասշտաբի խնդիրներ էին կանգնած ինչպես կուտակումների, այնպես և ժողովրդական սպառման միաժամանակյա աճի ուղղությամբ: Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվները կարևորագույն տնտեսական և սոցիալական ցուցանիշների գծով հաջողությամբ կատարվել են: ՍՍՀՄ ժողովրդական տնտեսությունը 1966—1970 թվականներին զարգացել է բարձր տեմպերով և ավելի արդյունավետ, քան նախորդ հնգամյակում:*

*Համագումարի կողմից առաջ քաշված գլխավոր տնտեսական խնդրի հաջող լուծումը հնարավոր դարձավ հանրային արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացման շնորհիվ, որն իր հերթին անխզելիորեն կապված է գիտատեխնիկական առաջընթացի արագացման հետ՝ արտադրության մեջ նոր տեխնոլոգիայի արագ ներդրման, հին սարքավորումը նորով փոխարինելու, աշխատանքի արտադրողականության բարձրացումն ապահովելու, արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու և որակը բարելավելու հետ:*

*Գիտատեխնիկական առաջընթացի արագացման կարևորությունը, արտադրության մեջ նրա նվաճումների լայն և ժամանակին ներդրումը մշտա-*

պես գտնվում է կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ուշադրության կենտրոնում:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը 1970 թվականի ապրիլի 13-ին, Խարկովի տրակտորի գործարանը Լենինի շքանշանով պարգևատրելու կապակցությամբ, կոլեկտիվի ժողովում ունեցած իր ելույթում նշեց, որ «Գիտատեխնիկական հեղափոխության, գիտության ու տեխնիկայի արագ զարգացման արմատական հարցերը այսուհետև ևս կլինեն կուսակցության ու կառավարության ուշադրության կենտրոնում: Դա մեր տնտեսական ստրատեգիայի կարևորագույն խնդիրն է ոչ միայն ընթացիկ տարվա, այլև երկրի զարգացման տեսանելի ողջ ժամանակաշրջանի համար» (Լ. Ի. Բրեժնև, «Լենինյան կուրսով», հ. 2, էջ 706):

Մեր կուսակցության գալիք՝ XXIV համագումարի վերջերս հրապարակված դիրեկտիվների նախագծում նորից ընդգծվում է գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացման անհրաժեշտությունը: Դրա համար էլ միասնական տեխնիկական քաղաքականության ապահովումը նախատեսվում է սկզբունքորեն աշխատանքի նոր միջոցների, նյութերի ու տեխնոլոգիական պրոցեսների ներդրումն ապահովելով, որոնք իրենց տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով գերազանցում են հայրենական և համաշխարհային լավագույն նվաճումները: Դրա հետ միաժամանակ ՍՄԿԿ Կենտկոմի կողմից հավանություն գտած դիրեկտիվների նախագծում նշվում է ֆունդամենտալ և կիրառական գիտական հետազոտությունների ըստ ամենայնի զարգացման ու ժողովրդական տնտեսության մեջ դրանց արդյունքների արագ ներդրման անհրաժեշտությունը:

Այդ կապակցությամբ մենք նպատակ ունենք ընթերցողին համառոտ կերպով ծանոթացնել այն աշխատանքի հետ, որը կատարված է մեր հանրապետության արդյունաբերության մեջ գիտատեխնիկական առաջընթացի ասպարեզում կուսակցության XXIII և XXIV համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում, այսինքն 1966—1970 թվականների ընթացքում:

Անհրաժեշտ է նշել, որ անցած հնգամյակի տարիներին հանրապետության արդյունաբերությունը բոլոր հիմնական ցուցանիշների գծով հասել է ավելի բարձր արդյունքների, քան 1961—1965 թվականների ընթացքում: Արտադրանքի ծավալն աճել է 1,8 անգամ. աճի միջին տարեկան տեմպը կազմել է 12,5 տոկոս, նախորդ հնգամյակի համապատասխանաբար 57 և 9,4 տոկոսի դիմաց: Այդ նույն ժամանակաշրջանում արդյունաբերության մեջ կրկնակի անգամ արագացել են աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը՝ 31 տոկոս, 1961—1965 թվականների 15,5 տոկոսի դիմաց: Արտադրանքի ընդհանուր աճի 43 տոկոսը ստացված է աշխատանքի արտադրողականության ավելացման հաշվին:

Ավելացել է արդյունաբերական ձեռնարկությունների շահույթը, բարձրացել արտադրության շահութաբերությունը:

Այս բոլորը այն մեծ միջոցառումների արդյունք է, որոնք իրագործվել են տեխնիկական առաջընթացի բնագավառում, ինչպես նաև պլանավորման և տնտեսական խթանման նոր մեթոդների կիրառման, ժողովրդական տնտեսության կառավարումը կատարելագործելու ասպարեզում:

Քիմիական արդյունաբերության բնագավառում արտադրության նոր, ավելի կատարելագործված տեխնոլոգիական պրոցեսների ներդրումը ուղեկ-



ցըվում էր հումքի առավել արդյունավետ տեսակներին անցնելով, ինչպիսիք էին բնական գազը, բենզինի թեթև ֆրակցիաները և այլն:

Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատում, ՍՍՀՄ-ում առաջին անգամ, հայրենական տեխնոլոգիական սխեմայով և հայրենական սարքավորումներով յուրացվել է բնական գազից ջերմաթթվային պիրոլիզի միջոցով ացետիլենի արտադրությունը: Դա հնարավորություն է ընձեռել կրկնապատկել աշխատանքի արտադրողականությունը, ավելացնել սինթետիկ կաուչուկի արտադրությունը 1,6 և վինիլացետատինը՝ 1,5 անգամ և կրճատել կալցիումի կարբիդի արտադրությունը, որը մինչ այդ աշխատանքի ծանր պայմաններով ացետիլենի ստացման միակ աղբյուրն էր և իր փոշիով կեղտոտում էր Երևանի օդային ավազանը: Դրական արդյունք հանդիսացան նաև այն, որ կալցիումի կարբիդի արտադրության պակասեցման կապակցությամբ միայն 1970 թվականի ընթացքում կրճատվել է 200 հազար տոննա կրաքարի և քարածխի ներկրումը Երևան: Այժմ արդեն նաիրիտի 70 տոկոսը արտադրվում է բնական գազից ստացվող ացետիլենից: Իններորդ հնգամյակի տարիներին կաուչուկի ամբողջ արտադրանքը կփոխադրվի պիրոլիզային ացետիլենի և Երևանում լրիվ կդադարի կալցիումի կարբիդի արտադրությունը:

Այդ նույն կոմբինատում 1970 թվականին, առաջին անգամ Սովետական Միությունում, յուրացվել է քացախաթթվի արտադրությունը՝ օդի թթվածնով բենզինի թեթև ֆրակցիաները ուղղակի թթվեցնելու եղանակով: Նոր տեխնոլոգիական սխեմայով ստացվող արտադրանքը երկրում ամենացածր ինքնարժեքն ունի:

Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատում բնական գազը սինթետիկ ամոնիակի ստացման համար որպես հումք օգտագործելը նույնպես խիստ բարելավեց արտադրության տեխնիկա-տնտեսական ցուցանիշները: Մեկ տոննա արտադրանքի վրա էլեկտրաէներգիայի ծախսը կրճատվել է 6 անգամ, իսկ ամոնիակի ինքնարժեքը նվազել է ավելի քան 70 տոկոսով: Ավելի առաջավոր տեխնոլոգիայի ներդրումը հնարավորություն տվեց կարճ ժամկետում ամոնիակի արտադրությունն ավելացնելու 4,5 և հանքային պարարտանյութերինը՝ 2,5 անգամ:

«Պոլիվինիլացետատ» գործարանը վինիլացետատի արտադրության համար տեխնոլոգիական պրոցեսների և սարքավորման մշակման գծով երկրի առաջատար ձեռնարկությունն է: Այստեղ, մեր երկրում առաջին անգամ, յուրացված է վինիլացետատի արտադրությունը կատալիզատորի «եռացող» շերտում, որը հնարավորություն է տվել առանց արտադրամասում աշխատողների թվաքանակն ավելացնելու, երկու անգամ ավելացնել արտադրանքի թողարկումը և 8 տոկոսով իջեցնել նրա ինքնարժեքը: Դրան զուգընթաց բարելավվել են աշխատանքի պայմանները՝ լրիվին մեքենայացվել են բեռնման-բեռնաթափման աշխատանքները, ավտոմատացվել են արտադրության կառավարման պրոցեսները: Այս ձեռնարկության լավագույն փորձը ներդրվել է Հյուսիսային Դոնեցկի քիմիական կոմբինատում:

Գիտատեխնիկական առաջընթացի գծով մի շարք արժեքավոր միջոցառումներ են իրագործվել նաև Սևանի էլեկտրաապակեմեկուսիչների, Կիրովականի քիմիական մանրաթելի, Երևանի լաքերի ու ներկերի գործարաններում և հանրապետության այլ քիմիական ձեռնարկություններում:

Այսօրվա պահանջներին համաքայլ են գնում լեռնաքիմիական արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունները: Մի շարք

արտադրություններում ներդրված է առաջավոր տեխնոլոգիան, մեքենայացվել և ավտոմատացվել են շատ արտադրական պրոցեսներ։ Քաջարանի կոմբինատի պղնձա-մոլիբդենային հանքերի մշակման գործում նոր, ավելի բարձրարտադրողական հորատող հաստոցների կիրառման շնորհիվ համարյա կրկնապատկվել է հորատման արագությունը և զգալիորեն իջեցվել արդյունահանվող հանքի ինքնարժեքը։ Նոր պայթուցիկ նյութերի օգտագործման շնորհիվ լեռնային զանգվածի ոչ գաբարիտային բեկորների հանույթը կրճատվել է 6—7 անգամ, որի շնորհիվ էքսկավատորների արտադրողականությունը բարձրացել է 30—40 տոկոսով։ Վերջապես, այդ կոմբինատում նոր ռեագենտների կիրառումը և հարստացման ավելի կատարյալ սխեմաների ներդրումը հնարավորություն է տվել բարձրացնելու հանքից մետաղների կորզումը և հարստացման ֆաբրիկայի արտադրողականությունը։ Այդ միջոցառումներից ստացված տարեկան տնտեսական արդյունքը գերազանցում է 400 հազար ռուբլուց։

Առանձնահատուկ ուշադրության են արժանի պղնձե կոնցենտրատների նոր տեխնոլոգիայի՝ էլեկտրաձուլման հիման վրա Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի վերակառուցման և ընդլայնման գծով իրագործվող միջոցառումները։ Գործարկված կարողությունների լրիվ յուրացման դեպքում այդ միջոցառման ներդրումից ստացված տարեկան տնտեսական օգուտը կկազմի ավելի քան մեկ միլիոն ռուբլի։

Քանաքեռի ալյումինի գործարանում տեխնիկական նորույթ հանդիսացավ ալյումինե գլոցուկի համատեղված անընդհատ լցումն ու գլոցումը և ժապավենային նախապատրաստուկի յուրացումը հեղուկ մետաղից։

Հանրապետության գիտնականները, արտադրության աշխատողների հետ համագործակցված, անխոնջ կերպով աշխատում են այս կամ այն տեսակի հանքային հումքի արդյունաբերական վերամշակման եղանակով նյութերի նոր տեսակներ ստանալու վրա։ «Շինանյութ» գործարանի և քարի ու սիլիկատի գիտահետազոտական ինստիտուտի կոլեկտիվները մշակել են տեխնոլոգիան և կազմակերպել նոր տեսակի շինանյութի՝ պերլիտաապակեպլաստի (թեթևացված ջերմամեկուսիչ նյութի) արտադրությունը, որը մի շարք շինարարական կոնստրուկցիաներում փոխարինում է փայտին։ Նոր նյութը կիրառված է «Անի» հյուրանոցի շինարարության մեջ։

Նոր տեխնիկայի գծով ամբողջ շարք միջոցառումներ՝ արտադրական պրոցեսների մեքենայացում, ավտոմատացում և ինտենսիֆիկացում են իրագործվել Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատում, Արզնու «Բյուրեղապակի» գործարանում, Երևանի կերամիկական իրերի կոմբինատում և շինանյութերի արդյունաբերության մյուս ձեռնարկություններում։

Մեքենաշինությունը, որը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում որոշում է տեխնիկական առաջընթացը, աճի տեմպերով և տեսակարար կշռով հանրապետության արդյունաբերական արտադրության մեջ, ինդուստրիայի բոլոր ճյուղերից գրավում է առաջին տեղը։ Մեքենաշինության և մեքենամշակման արտադրանքը 1966—1970 թվականներին աճել է ավելի քան 2,1 անգամ. նրան բաժին է ընկնում Հայաստանի արդյունաբերական ամբողջ արտադրանքի 23 տոկոսը։ Այդ առաջատար ճյուղի ձեռնարկություններում անցած հնգամյակում զգալի աշխատանք է կատարված նոր, առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների ներդրման, արտադրության մեքենայացման ու ավտոմատացման, արտադրանքի նոր տեսակների յուրացման ասպարեզում։



Յուրաքանչյուր ձեռնարկության գծով մեքենաշինության կատարած մեծ աշխատանքը դժվար է նկարագրել։ Բերենք միայն մի քանի օրինակ։

Երևանի «էլեկտրոն» գործարանում յուրացված է «Նաիրի—2» և «Հրազդան—3» նոր էլեկտրոնային հաշվիչ մեքենաների արտադրությունը, որոնք իրենց նախորդների համեմատությամբ 2—6 անգամ արագ են գործում։ Առանձին արտադրական տեղամասերում այդ միջոցառման կիրառումը՝ հանգույցների հավաքման, մեքենաների հանգույցների մոնտաժի կիսաավտոմատացման համար կոմպլեքսային տեղակայանքի կոնվեյերային մեթոդը և այլն, հնարավորություն են տվել աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել մի քանի անգամ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի որակի բարելավման ուղղությամբ զգալի աշխատանք է կատարված «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման ձեռնարկություններում։ Միավորման գլխային գործարանում մշակված է բարձրացված ինտենսիվությամբ և Գոստ-ով նախատեսված 7,5 հազ. ժամի փոխարեն 10 հազ. ժամ ծառայության ժամկետով լյումինեսցենտային լամպերի պատրաստման նոր կոնստրուկցիա և տեխնոլոգիա։

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ըստ ամենայնի ընդլայնման մասին կուսակցության և կառավարության առաջ քաշած հարցի լուծման գործում վճռական դերը, անշուշտ, նույնպես պատկանում է տեխնիկական առաջընթացին և դրա հիման վրա աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, ֆոնդահատուցմանը։ Այդ իմաստով հարկավոր է նշել թեթև և սննդի արդյունաբերության շատ ձեռնարկությունների և, առաջին հերթին, Լենինականի տեքստիլ կոմբինատի, Երևանի ծխախոտի փորձարարական ֆաբրիկայի, կոշիկի և տրիկոտաժի ֆաբրիկաների դրական աշխատանքը։

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում, ամբողջությամբ վերցրած, նոր տեխնիկայի գծով ներդրված է 1400 միջոցառում, որոնցից ստացված տնտեսական արդյունքը կազմում է մի քանի տասնյակ միլիոն ռուբլի։

Արդյունաբերության, ինչպես և ամեն մի այլ արտադրության զարգացման ու արդյունավետության բարձրացման գործում հսկայական դեր է խաղում գիտությունը. այն մեծ ներդրում ունի մարդկանց ամենօրյա պահանջմունքների բավարարման գործում, օգնում է բարելավելու աշխատանքի և կենցաղի պայմանները։ Դրանից ելնելով, ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներում նախատեսված էր ինչպես ֆունդամենտալ, տեսական, այնպես էլ կիրառական գիտական հետազոտությունների ավելի արագ ծավալում, գիտության և տեխնիկայի կարևորագույն, առավել հեռանկարային ուղղություններում ուժերի ու միջոցների համակենտրոնացում։

Գիտա-տեխնիկական հետազոտությունները պետք է ժամանակին որոշեն արտադրության պարզ հեռանկարը և տան առաջադիմական լուծումներ։

Անցած հնգամյակի տարիներին հանրապետությունում զգալի աշխատանք է կատարվել ինչպես գործող գիտա-հետազոտական կազմակերպությունների ամրապնդման ու նորերի ստեղծման, այնպես էլ կատարվող աշխատանքների արդյունավետության բարձրացման բնագավառում։ Ստեղծված են 18 գիտական նոր կազմակերպություններ և համամիութենական գիտա-

հետազոտական կազմակերպությունների մասնաճյուղեր։ Այժմ հանրապետության 120 գիտական կազմակերպություններում աշխատում են մոտ 12 հազար գիտական աշխատող, 1965 թվականի 7770-ի փոխարեն։

Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի կազմակերպությունների և բազմաթիվ ճյուղային ինստիտուտների գիտնականներ մշակել են գիտական և ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունեցող շատ պրոբլեմներ։ Առանձնապես զգալի են մաթեմատիկայի, ֆիզիկայի, աստղաֆիզիկայի, մեխանիկայի, քիմիայի, Երկրի մասին գիտության, գյուղատնտեսության, բժշկության և այլ բնագավառի գիտական հետազոտությունների արդյունքները։ Արժանի է հիշելու, մասնավորապես, մաթեմատիկական մեքենաների ինստիտուտի աշխատանքը, որտեղ մշակված և սերիական արտադրության է հանձնված Միության մեջ առաջին ունիվերսալ հաշվողական մեքենան՝ «Նաիրի—3»-ը, որը կառուցված է հիբրիդային միկրոսխեմաների միջոցով։

Կոմպլեքսային էլեկտրասարքավորումների գիտահետազոտական ինստիտուտի կողմից մշակված են և ներդրվում են սերիական արտադրության մեջ տարածական մագնիսահաղորդալարով տրանսֆորմատորների երեք նոր տիպաչափեր։ Լենինականի կոնդենսատորների գործարանում ներդրված է այդ նույն ինստիտուտի կողմից մշակված ЛС—400—3,8 տիպի լյումինեսցենտային ջահերի համար նոր տիպի կոնդենսատոր։

Լեռնամետալուրգիական գիտահետազոտական ինստիտուտը մշակել է Հրազդանի երկաթահանքերի հարստացման ու մետալուրգիական վերափոխման տեխնոլոգիա՝ սուպերկոնցենտրատի, սպունգաձև երկաթի, տեխնիկապես մաքուր երկաթի, ճշգրիտ պողպատների և ձուլվածքների ստացումով։ Ինստիտուտի մշակումների հիման վրա կառուցվում է փորձնական արդյունաբերական կոմպլեքս, որի մեջ մտնում են բացհանքը, հարստացման ֆաբրիկան և մետալուրգիական գործարանը։

Մետաղահատ հաստոցների էքսպերիմենտալ գիտա-հետազոտական ինստիտուտի անդրկովկասյան մասնաճյուղի կողմից մշակվել է սկավառակների և լիսեռների տիպի դետալներից ձուլածեփների հեռացման էլեկտրաքիմիական հաստոց։ Հաստոցը ներդրված է երկրի մեքենաշինական մի շարք ձեռնարկություններում։

Մշակված է նաև 25—35 մմ գայլիկոնման տրամաչափի շառավղա-գայլիկոնային հաստոցների գամմա։

Գիտական զգալի հաջողություններ են ձեռք բերել նաև էներգետիկայի հայկական գիտահետազոտական ինստիտուտի, միկրոէլեկտրոնիկայի, նուրբ օրգանական քիմիայի և այլ գիտահետազոտական ինստիտուտների կոլեկտիվները։

Անցած հնգամյակի տարիներին, ամբողջությամբ վերցրած, մեր գիտնականների, ինժեներների ու բանվորների ուժերով հանրապետությունում մշակվել և ստեղծվել է մեքենաների, սարքավորման, ապարատների և տարբեր տեսակի սարքերի 415 նմուշ։ Գիտա-տեխնիկական մշակումների հիման վրա ՍՍՀՄ և հանրապետության ժողովրդական տնտեսության պլաններով նախատեսված արտադրանքի 198 նոր տեսակներից մշակվել և սկսվել է 180-ի սերիական արտադրությունը։ Այդ հնարավորություն է տվել արտադրությունից հանելու հնացած կոնստրուկցիաների ու մոդելների զգալի թվով սարքավորանք։



Տեխնիկական առաջընթացի իրագործման և արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումները ներդնելու գործում մեծ դեր է պատկանում գյուտարարներին, ռացիոնալիզատորներին ու գիտատեխնիկական ընկերություններին։ Նրանք էական ներդրում են մտցնում արտադրության տեխնիկայի զարգացման և կատարելագործման մեջ։

Բավական է ասել, որ անցած հնգամյակի տարիներին մեր հանրապետությունում արտադրության մեջ ներդրվել է 73 հազարից ավելի ռացիոնալիզատորական առաջարկություն և գյուտ, որոնց շնորհիվ տնտեսվել է 104 մլն ռուբլի։

Տարեցտարի նորարարության մեջ աճում է աշխատավորության մասնակցությունը։ Եթե 1965 թվականին արտադրության մեջ ներդրված էր 36 գյուտ, ապա 1970 թվականին այդ թիվը հասել է 113-ի։ 1970 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, ռացիոնալիզատորների թիվը աճել է 26 տոկոսով, արտադրության մեջ ներդրված ռացիոնալիզատորական առաջարկություններինը՝ 15 տոկոսով, իսկ դրանցից ստացված տարեկան տնտեսումը 16 մլն ռուբլու դիմաց կազմել է 24,8 մլն ռուբլի։ Ընդ որում, կարևոր է նշել, որ եթե 1965 թվականին յուրաքանչյուր ներդրված առաջարկությունից ստացված տնտեսումը միջին հաշվով կազմում էր 1335 ռուբլի, ապա անցյալ տարի այն հասավ 2544 ռուբլու։

Շատ արդյունաբերական ձեռնարկությունների ռացիոնալիզատոր-գյուտարարներ հաջողությամբ են կատարել հնգամյակի համար ստանձնած պարտավորությունները։ Այսպես, օրինակ, «Հայէլեկտրալույս» միավորման ռացիոնալիզատորներն անցած հնգամյակի տարիներին արել են 2010 առաջարկություն, որոնցից արտադրության մեջ ներդրվել է 1189-ը՝ 2600 հազ. ռուբլի տարեկան պայմանական արդյունավետությամբ։ Ավտոմոբիլի լամպի կողքի վերին էլեկտրոդի մեքենայացված հատման ու զոդման վերաբերյալ գլխավոր ինժեների տեղակալ Գ. Խաչատրյանի, հավաքման արտադրամասի պետ Ֆ. Ստեփանյանի, փականագործ Ա. Միքայելյանի և ուրիշների առաջարկությունների ներդրումը հնարավորություն տվեց վերացնելու 32 բանվորի ձեռքի աշխատանքը։

1969 թվականին միավորման գլխային գործարանի ռացիոնալիզատորները մասնակցեցին ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի «Մեքենաշինություն» տաղավարի «Մեքենաշինության նորարարներ» բաժնում անցկացվող՝ Հայկական ՍՍՀ նորարարների աշխատանքների ցուցահանդես-ստուգատեսին։ Ցուցահանդեսը նվիրված էր Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին։ Արժեքավոր ռացիոնալիզատորական առաջարկությունների համար ԺՏՆՑ-ի ոսկյա մեդալով պարգևատրվեց միավորման գլխավոր ինժեներ Բ. Թումասյանը, արծաթյա մեդալով՝ խառատ Ս. Միլիտոնյանը և բրոնզյա մեդալներով՝ փականագործ Ռ. Կուրղինյանը, վարպետ Դ. Իկնոյանը և ինժեներ Կ. Միրզաբեկյանը։ Չի կարելի չնշել նաև այնպիսի հռչակավոր ռացիոնալիզատորների անունները, ինչպես Հայկական ՍՍՀ վաստակավոր ռացիոնալիզատոր ինժեներ Սիրանույշ Իսրայելյանը, ապակու արտադրամասի պետի տեղակալ Վաղարշակ Մինասյանը. խառատ Արբիկ Վարդիկյանը և ուրիշներ։

Մեքենաշինարարներից ետ չեն մնում քիմիական արդյունաբերության բանվորները։ Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատում արտադրության մեջ Ն. Կարապետյանի, Ն. Բոշնյակովայի և ուրիշների՝ «էմուլ-

միայի մեջ քլորոպրենի անընդհատ պոլիմերիզացիայի եղանակը» գյուտի ներդրմամբ տարեկան տրվել է 194 հազ. ռուբլու տնտեսական արդյունք։

«Պոլիվինիլացետատ» գործարանի ռացիոնալիզատորներ Ա. Գալստյանի, Ա. Խաչատրյանի, Մ. Լոռյանի և Հ. Գևորգյանի առաջարկությամբ 1—1 արտադրական կորպուսի թեթև թռչող ֆրակցիաները, որոնք առաջ բաց էին թողնվում որպես թափվածք, այժմ օգտագործվում են հեղուկ քացախաթթվային նատրիումի արտադրության համար, որից ստացվում է 108 հազ. ռուբլու տարեկան տնտեսում։

Մեծ օգտակար աշխատանք են կատարում թեթև արդյունաբերության ձեռնարկությունների նորարարները։ Լենինականի գուլպայի ֆաբրիկայի ռացիոնալիզատորներ Ա. Ներսիսյանի, Ե. Պետրոսյանի և Վ. Գրադիլի առաջարկությունը՝ արտադրության թափվածքներից ձեռնոցների պատրաստման վերաբերյալ, տարեկան տալիս է 116 հազ. ռուբլու տնտեսում։

Ռացիոնալիզատորության և գյուտարարության բարելավման ուղղությամբ մեծ աշխատանք են կատարում հասարակական միավորումները։ Ներկայումս հանրապետությունում գործում է ավելի քան 150 հասարակական կոնստրուկտորական բյուրո, 70 ներդրման արտադրական տեղամաս ու բրիգադ, 492 կոմպլեքսային գյուտարարական բրիգադ, տնտեսագիտական անալիզի 215 բյուրո և խումբ, 48 տեխնիկական ինֆորմացիայի և 30՝ պատենտների ու լիցենզիաների բյուրո։ Այժմ այդ հասարակական կազմակերպություններում միավորված են մոտ 7200 ինժեներ, տեխնիկ, բանվոր-նորարար և գիտական աշխատող։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում տեխնիկական առաջընթացի գործում հսկայական դեր ու նշանակություն ունեն գիտատեխնիկական ընկերությունները։ Մասսայականությունն ու ցանցի արագ զարգացումը այդ ընկերությունների բնորոշ հատկանիշն է։

Այժմ գիտա-տեխնիկական ընկերությունների հայկական հանրապետական խորհուրդը միավորում է 19 ճյուղային գիտա-տեխնիկական ընկերություններ, որտեղ ընդգրկված են 57 հազար իսկական անդամ-գիտնականներ, ինժեներներ, տեխնիկներ, բանվոր-նորարարներ՝ 1965 թվականի 38500-ի փոխարեն։ Իրավաբանական անդամների թիվը հասնում է 1133-ի, իսկ սկզբնական կազմակերպություններինը՝ 1186-ի։

1966—1970 թվականների ընթացքում գիտա-տեխնիկական ընկերությունների հանրապետական խորհրդի, տեխնիկայի տան, հանրապետական վարչությունների և սկզբնական կազմակերպությունների կողմից մշակվել և արտադրության մեջ ներդրվել է 5485 տեխնիկական նորույթ, հանձնարարական և առաջարկություն։

Գիտա-տեխնիկական ընկերությունների հանրապետական խորհրդին կից գործում են ասպիրանտուրայի, տեխնիկական էսթետիկայի, արտադրության և էկոնոմիկայի կազմակերպման, կիբեռնետիկայի, ստանդարտացման և թվով 10 հասարակական այլ կոմիտեներ։ Ասպիրանտուրայում կադրեր են պատրաստվում 32 հիմնական մասնագիտությունների գծով. այստեղ սովորում են 160 մասնագետ-արդյունաբերության աշխատողներ։

Գիտա-տեխնիկական ընկերությունների հանրապետական խորհրդին կից գործում են աշխատանքի գիտական կազմակերպման գծով երկամյա հասա-



րակական ինստիտուտ, ինչպես նաև թողարկվող արտադրանքի որակի, հուսալիության և երկարակեցության պրոբլեմների գծով երկամյա համալսարան։

Խորհրդի արտադրության էկոնոմիկայի և կազմակերպման կոմիտեն կոնսուլտացիոն աշխատանք է կատարում արդյունաբերական ձեռնարկությունները պլանավորման և նյութական խթանման նոր սիստեմի փոխադրելու ուղղությամբ. ստեղծված են տնտեսագետների շրջիկ բրիգադներ, որոնք տեղերում ակտիվ օժանդակություն են ցույց տալիս տնտեսավարության նոր պայմանների անցած արտադրության աշխատողներին։

Ժողովրդական տնտեսության հետագա զարգացումը համառորեն պահանջում է գիտա-տեխնիկական առաջընթացի ավելի մեծ արագացում։ Ընթացիկ հնգամյակում նախատեսված է գիտա-հետազոտական, փորձա-կոնստրուկտորական մշակումների ընդարձակ ծրագիր և արտադրության տարբեր ճյուղերում գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների ներդրման մեծ կոմպլեքս։ Հայաստանի գիտնականների, արդյունաբերական ձեռնարկությունների ինժեներա-տեխնիկական աշխատողների ու արտադրության նորարարների ուժերը կուղղվեն արտադրության մեջ բազմաթիվ գիտա-տեխնիկական պրոբլեմների ներդրմանը, ժողովրդական տնտեսության կառավարման մեթոդների արմատական բարելավմանը կառավարման այնպիսի ավտոմատացված սիստեմների օգտագործմամբ, որոնք նախատեսում են հաշվողական տեխնիկայի միջոցների լայն կիրառում։

Մեզ հարկավոր է հաշվի առնել, որ ժողովրդական տնտեսության մեջ տեխնիկական առաջընթացը և գիտության հաջողությունները զգալի չափով կախված են գիտական հետազոտությունների արդյունքների, արտադրության նվաճումների ու նոր մեթոդների, գյուտերի ու ռացիոնալիզատորական առաջարկությունների մասին լավ կազմակերպված ինֆորմացիայի սիստեմից, որը անցկացվում է մեր երկրում և արտասահմանում։

Մեր ժամանակներում գիտա-տեխնիկական նվաճումները արտադրության մեջ արմատավորելը հնարավորություն կընձեռի հաջողությամբ լուծելու կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման խնդիրը։ Գիտության զարգացման աստիճանից, գիտական հետազոտությունների արդյունքներն արտադրության մեջ օգտագործելու մասշտաբներից է հսկայական չափով կախված համաշխարհային երկու սիստեմների տնտեսական մրցության ընթացքը։

Կուսակցական, սովետական ու տնտեսական կազմակերպությունների, գիտնականների և արտադրության նորարարների համար գլխավոր ուղղություն կծառայեն ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվները ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության 1971—1975 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ։



# ՄԱՍՍԱՆԵՐԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՇՆՈՐՀԻՎ


Մ. Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆ

ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար


*Սովետական Միության կոմունիստական կուսակցության կազմակերպական ու քաղաքական աշխատանքի հարուստ փորձը ցույց է տալիս, որ տարբեր ժամանակաշրջաններում առաջ քաշված նոր խնդիրները միշտ էլ համապատասխանել են ժողովրդի կենսական շահերին, ջերմ պաշտպանություն գտել աշխատավորական լայն մասսաների կողմից։ Ամենաբարդ խնդիրները, որոնք առաջադրում են կուսակցությունն ու կառավարությունը, հաջողությամբ են լուծվում այն դեպքում, երբ հասկանալի են աշխատավորներին, դրանց կենսագործմանը գիտակցաբար մասնակցում են լայն մասսաները։*

*Լենինականի կուսակցական կազմակերպությունները, հենվելով մասսաների աճող քաղաքական ու ստեղծագործական ակտիվության վրա, հաջողությամբ կենսագործել են ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները և հնգամյակի անցած տարիներին աչքի ընկնող նվաճումներ ձեռք բերել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։*

*Ինչպես ամբողջ սովետական ժողովրդի, այնպես էլ Լենինականի աշխատավորների համար ութերորդ հնգամյակի տարիները նշանավոր են պատմական կարևոր նշանակություն ունեցող իրադարձություններով։ Հանճարեղ առաջնորդ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստությունն ու անցկացումը նոր ուժով դրսևորեց սովետական մարդկանց ջերմ հայրենասիրությունը, նրանց պատրաստակամությունը՝ առաջադրված խնդիրների լուծման համար։ Մեր հայրենիքի հոբելյանական տարում հայ ժողովուրդը հանդիսավորությամբ նշեց Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման կեսդարյա տարելիցը։ Այդ կարևոր իրադարձությունները մեծապես նպաստեցին աշխատավորների ակտիվության բարձրացմանը։ Կուսակցության քաղաքային կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունները, գլխավորելով և ուղղություն տալով մասսաների շարունակ աճող ակտիվությանը, նրանց ջանքերն ուղղեցին հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման, ունեցած ռեզերվների օգտագործման, ձեռնարկությունների տնտեսական գործունեության հետագա բարելավման նպատակին։ Արդյունքը եղավ այն, որ հնգամյակի տարիներին հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ավելի նկատելի դարձավ Լենինականի արդյունաբերության տեսակարար կշի-*



*ռը։ Առանձնապես բարձր է թեթև արդյունաբերության բաժինը։ Արտադրության այդ ճյուղի ձեռնարկությունները թողարկում են հանրապետության թեթև արդյունաբերության արտադրանքի 22 տոկոսը։*

*Ինչպես հանրապետության, այնպես էլ քաղաքի արդյունաբերության մեջ աննախընթաց տեմպերով աճում է մեքենաշինության, սարքաշինության և էլեկտրատեխնիկական արդյունաբերության տեսակարար կշիռը։*

*Մշակելով մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման ութերորդ հնգամյա պլանը՝ ՍՄԿԿ XXIII համագումարը արդյունաբերության աշխատողների առջև խնդիր դրեց հետևողականորեն պայքարել արտադրության արդյունավետության բարձրացման համար, հասնել բարձր արտադրողականության, արմատավորել գիտության ու տեխնիկայի նվաճումները, վճռականորեն բարելավել թողարկվող արտադրանքի որակը։ Հետագա տարիներին կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը մշակեցին և իրականացրին մի շարք միջոցառումներ, որոնք ուղղված էին ժողովրդական տնտեսության ղեկավարման մակարդակի բարձրացմանը, արտադրության ռեզերվների առավել արդյունավետ օգտագործմանը և խնայողության ռեժիմի ամրապնդմանը։ Այդ միջոցառումների մեջ կարևոր դերը պատկանում է պլանավորման և նյութական խթանման նոր սիստեմին, որը բարերար ազդեցություն ունեցավ ձեռնարկությունների տնտեսական գործունեության հետագա բարելավման համար։*

*Ջեռնամուխ լինելով իրենց առջև դրված խնդիրների լուծմանը՝ քաղաքի աշխատավորները, կուսկազմակերպությունների ղեկավարությամբ, եռանդուն պայքար ծավալեցին նախանշած բնագծերը նվաճելու համար։ Արդյունաբերական, տրանսպորտի ձեռնարկություններում, շինարարական կազմակերպություններում ջերմ պաշտպանություն գտավ Մոսկվայի և Լենինգրադի արդյունաբերության աշխատողների նախաձեռնությունը՝ հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու վերաբերյալ։*

*Այժմ, երբ հանրագումարի են բերվել հնգամյակի արդյունքները, կարելի է ասել, որ վերջին հինգ տարիները քաղաքի աշխատավորների համար եղան նոր առաջընթացի տարիներ։ Հնգամյակի առաջադրանքը քաղաքի արդյունաբերությունը կատարեց ժամկետից շուտ, մինչև նոյեմբերի 29-ը՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-ամյակի օրը։ Երկիրն ստացավ 996 միլիոն 600 հազար ռուբլու բազմատեսակ արդյունաբերական ապրանքներ։ Հնգամյակի տարիներին, 1965 թվականի համեմատությամբ, համախառն արտադրանքի թողարկման աճը կազմեց 50,6 տոկոս։ Տարեկան աճի միջին տեմպերը կազմեցին 8,1 տոկոս, արդյունաբերական ձեռնարկություններում հիմնական ֆոնդերն աճեցին 38 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 23 տոկոսով, բանվորական անձնակազմն ավելացավ 15 տոկոսով։ Աչքի ընկնող աշխատանք կատարվեց նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման ասպարեզում։ Միայն վերջին երեք տարիներին արտադրության մեջ արմատավորվել է 80 միջոցառում, մեքենայացվել և ավտոմատացվել է արտադրական 500 պրոցես, տեղադրվել և գործարկվել է 3500 միավոր բարձր արտադրողական մեքենասարքավորում։ Նույն ժամանակամիջոցում արտադրության մեջ ներդրվել է ռացիոնալիզատորական 6 հազար առաջարկ, այդ թվում 50 գյուտ, որոնց տարեկան պայմանական տնտեսական օգուտը կազմում է 7 միլիոն ռուբլի։*

ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի սեպտեմբերյան և 1969 թվականի դեկտեմբերյան պլենումներն արդյունաբերության աշխատողների ուշադրությունը հրավիրեցին կապիտալ ներդրումների և հիմնական ֆոնդերի հատույցի մակարդակի բարձրացմանը: Հաշվի առնելով այդ հարցի կարևորությունը՝ կուսակցության քաղաքային կոմիտեի VIII պլենումը հանգամանորեն քննարկեց հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման վիճակը և կուսկազմակերպությունների խնդիրները: Պլենումի որոշումը քննության առնվեց սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում: Ամեն մի ձեռնարկությունում կոնկրետ միջոցներ նշվեցին՝ սարքավորումների արտադրողականության բարձրացման, միջհերթային պարապուրդների կրճատման, կադրերի ամրապնդման համար: Որոշակի քայլեր կատարվեցին աշխատանքի գիտական կազմակերպման ասպարեզում: Լուրջ տեղաշարժեր նկատվեցին ձեռնարկությունների ղեկավարման մակարդակի բարձրացման, առաջավոր փորձի մասսայականացման գործում: Այդ ամենի շնորհիվ վերջին երկու տարում քաղաքի արդյունաբերության մեջ ֆոնդահատույցը բարձրացավ 15 տոկոսով: Աշխատանքի գիտական կազմակերպման միջոցառումներ են իրականացվել Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատում, դարբնոցա-մամլիչային սարքավորումների, հղկող հաստոցների գործարաններում, վագոնային դեպոյում և այլ ձեռնարկություններում: Դրանք մեծապես նպաստել են աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, բանվորական ժամերի ռացիոնալ օգտագործմանը, շուրջօրյա պարապուրդների կրճատմանը և բանվորների աշխատանքային ու կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմանը:

Քաղաքի աշխատավորների համար հնգամյակի տարիները նշանավոր են նաև նրանով, որ արդյունաբերական ձեռնարկություններն անցան պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին: Նոր սիստեմով այժմ աշխատում է քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների 98 տոկոսը, որոնք թողարկում են ամբողջ արդյունաբերական արտադրանքի 97 տոկոսը: Հմտորեն օգտագործելով ռեֆորմի ընձեռած հնարավորությունները՝ լոկոմոտիվային դեպոյի, վերլուծական սարքերի փորձնական, հեծանիվի գործարանների կոլեկտիվները որոշակի հաջողությունների հասան արտադրաֆոնդերը և ֆինանսական միջոցներն ավելի արդյունավետ օգտագործելու ասպարեզում:

Սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների հաջող կատարմանը մեծապես նպաստեց «Արտադրության ռեզերվների օգտագործումը բարելավելու և ժողովրդական տնտեսության մեջ խնայողության ռեժիմը ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակի քննարկումը: Կուսկազմակերպությունների նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ մասսայական արշավ սկսվեց կորուստների կրճատման և տնտեսման բարձր ցուցանիշներ նվաճելու համար: Կուսակցության քաղաքային կոմիտեն պաշտպանեց լոկոմոտիվային դեպոյի կոլեկտիվի նախաձեռնությունը, որը կոչ արեց ամեն եռամսյակ երեք օր աշխատել տնտեսումների հաշվին: Այդ շարժման մեջ ընդգրկվեցին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատողները: Խնայողության ռեժիմի կիրառման շնորհիվ 3 տարում տնտեսվեց մոտ 1000 տոննա սև, 30 տոննա գունավոր մետաղ, 12 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 116 տոննա բամբակ, 120 տոննա մանվածք և այլ նյութեր:



Քաղաքի կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում է եղել արտադրական տարածությունների ընդարձակման և նոր կարողությունների գործարկման հարցը: Հնգամյակի տարիներին գործարկվեցին Ս. Լուկաշինի անվան մանվածքային նոր ֆաբրիկան և ավտոբուսների նորոգման փորձնական գործարանը: Մանվածքային ֆաբրիկան իր տեսակի մեջ ամենախոշորն է Անդրկովկասում, որը բարձր համարի թել է մատակարարում հանրապետության տրիկոտաժի և գուլպայի արդյունաբերության ձեռնարկություններին: Հնգամյակի ավարտական տարում այստեղ մշակվեց 5.475 տոննա բամբակ, արտադրության աճը նախորդ տարիների համեմատությամբ կազմեց 31,2 տոկոս, իրացումն ավելացավ 59,7 տոկոսով, ասորտիմենտը 7-ից հասավ 13 տեսակի, թելի միջին համարը՝ 53,46-ից 55,18-ի: Չորս տարի առաջ շահագործման հանձնված նրբասանրող արտադրամասում այժմ աշխատում են 600 միավոր ժամանակակից գզող, սանրող և մանող մեքենաներ: Լավ հեռանկարներ ունի ավտոբուսների նորոգման փորձնական գործարանը: Լրիվ կարողությամբ շահագործման հանձնելուց հետո այստեղ տարեկան կնորոգվի 400 ավտոբուս: Արտադրական նոր կարողություններ են գործարկվել կոնդենսատորների, հղկող հաստոցների, սառնարանային կոմպրեսորների գործարաններում:

Նոր տեխնիկայի, որակյալ կադրերի առկայությունը պայմաններ ստեղծեց ընդարձակել քաղաքի կապերը Միության տարբեր տնտեսական շրջանների հետ, ձեռնամուխ լինել արտադրանքի ավելի բարձրորակ տեսակների թողարկմանը: Հնգամյակի տարիներին յուրացվել և մասսայական արտադրության է հանձնվել մոտ 400 նոր արտադրատեսակ, որոնց զգալի մասն իր որակով չի զիջում համաշխարհային լավագույն ստանդարտին: Լենինականյան մակնիշի հղկող հաստոցները, մամլիչները, սարքերը, գործերը, միկրոէլեկտրաշարժիչները ցուցադրվել են համաշխարհային տոնավաճառներում և ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում: Արդյունաբերական 9 ձեռնարկությունների 32 արտադրատեսակներ արտահանվում են արտասահմանյան 47 երկրներ:

Ավելի բարձր տեմպ վերցրեց կապիտալ շինարարությունը: Հնգամյակի տարիներին, յոթնամյակի ավարտական տարվա համեմատությամբ, կապիտալ շինարարությունն աճեց 80 տոկոսով: Անցած տարիներին շահագործման հանձնվեցին 220 հազար քմ բնակելի տարածություն, դպրոցական 11 և նախադպրոցական 18 շենքեր, կատարվեցին 12 միլիոն ռուբլու բարեկարգման աշխատանքներ:

Շարունակելով իրենց լավագույն ավանդույթները՝ հնգամյակի տարիները հայրենանվեր գործերով նշանավորեցին երկաթուղային հանգույցի ձեռնարկությունների կոլեկտիվները, որոնք վճռական դեր են կատարում Անդրկովկասյան երկաթուղում: Սահմանված ժամկետից 3,5 ամիս շուտ նրանք կատարեցին բեռների փոխադրման հնգամյա պլանը: Լոկոմոտիվային և վագոնային դեպոներում արմատավորվել է նորոգումների ցանցային գրաֆիկը, որը հնարավորություն տվեց կոմպլեքսային մեքենայացման ենթարկել արտադրական շատ պրոցեսներ: Հնգամյակի առաջին տարվանից վագոնային դեպոյին միացվեցին Երևանի բաժանմունքի տեխնիկական սպասման բոլոր կետերը՝ Այրումից մինչև Նորաշեն, ներառյալ Սևանի ճյուղավորումները և Երևանը: Դեպոն այժմ համարվում է նոր տեխնիկայով զինված առաջավոր ձեռնարկություններից մեկը Միությունում:

Պետական առաջադրանքների հաջող կատարման, կապիտալ շինարարու-
թյան ծավալի ավելացման հետ միասին կուսկազմակերպությունները մեծ
աշխատանք կատարեցին բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների
բարելավման, սպասարկման կուլտուրայի բարձրացման ասպարեզում։
Հնգամյակի տարիներին 60 տոկոսով ավելացավ բնակչության մեկ շնչին
ընկնող կենցաղային սպասարկման աշխատանքի ծավալը, քաղաքի տարբեր
մասերում սկսեցին գործել 59 նոր օբյեկտներ, կիրառվել ավելի առաջադիմա-
կան 20 ծառայություններ։ Ապրանքաշրջանառության աճը կազմեց 49,3 տո-
կոս։ Տարվա բոլոր ամիսներին բնակչությանը բանջարեղենով, մրգով և այլ
սննդամթերքներով ապահովելու համար կարևոր նշանակություն ունեցավ
առևտրի վարչության պահեստային տնտեսության կոմպլեքսի կառուցումը։

Ավարտվեց քաղաքի մուտքի բարեկարգումն ու ձևավորումը, Ա. Մռավ-
յանի անվան պետական դրամատիկ թատրոնի նոր շենքի շինարարությունը։
Գործարկվեցին մանկական երկաթուղու երրորդ հերթը, 6 կիլոմետր երկարու-
թյամբ տրոլեյբուսային նոր երթուղին, ավարտվեց Հեղափոխության անվան
հրապարակի ձևավորումը, երկաթուղայինների ավանի և մի շարք փողոցների
կոմպլեքսային բարեկարգումը։

Հնգամյակի տարիները նշանավորվեցին սոցիալիստական մրցության նոր
վերելքով, ավելի ամրապնդվեց բարեկամությունը Քութաիս, Կիրովաբադ և
Տարտու քաղաքների աշխատավորների հետ։ Տարիների պատմություն ունե-
ցող եղբայրական մրցությունը դարձել է հզոր ուժ, որը նպաստում է Անդրր-
կովկասյան հանրապետությունների բարեկամական կապերի ամրապնդմանը,
աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությանը։ Լենինյան հոբելյա-
նի առթիվ ծավալված մրցությունում առաջավոր կոլեկտիվների աշխատան-
քի բարձր գնահատականը եղավ այն, որ «Լենշին» տրեստն արժանացավ
ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիս-
տրների սովետի և ՀԱՄԿԽ-ի լենինյան հոբելյանական պատվոգրին, իսկ 5
կոլեկտիվներ՝ հանրապետական հոբելյանական պատվոգրին։

Քաղաքի աշխատավորական կոլեկտիվներն աչքի ընկնող նվաճումներով
դիմավորեցին Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաս-
տանի կոմկուսի կազմավորման 50-ամյակը։ Ս. Լուկաշինի անվան մանված-
քային, տրիկոտաժի ֆաբրիկաների, դարբնոցա-մամլիչային սարքավորում-
ների գործարանի, մսի-պահածոների, Մայիսյան ապստամբության անվան
տեքստիլ կոմբինատի, «Լենշին» տրեստի, լոկոմոտիվային դեպոյի, կապի
քաղաքային հանգույցի, երկաթուղային պրոֆտեխուսումնարանի և Ա. Մռավ-
յանի անվան պետական դրամատիկ թատրոնի կոլեկտիվներն արժանացան
Սովետական Հայաստանի և նրա կոմունիստական կուսակցության կազմա-
վորման 50-ամյակի պատվին սահմանված հուշամեդալին։

Քաղաքի արդյունաբերական, տրանսպորտի ձեռնարկությունների կոլեկ-
տիվների հայրենանվեր աշխատանքի մասին է խոսում նաև այն փաստը, որ
1969 թ. երրորդ և 1970 թ. չորրորդ եռամսյակներին ձեռք բերած տեխնիկա-
տնտեսական բարձր ցուցանիշների համար Լենինականը նվաճեց հանրապե-
տության քաղաքների համար սահմանված ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստր-
ների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշը։ 1970 թ. II եռամսյակում
քաղաքն արժանացավ նաև ՀԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների
սովետի և ՀԱՄԽ-ի՝ շինարարության համար սահմանված փոխանցիկ դրոշին։

Տնտեսական խնդիրների հաջող լուծման համար վճռական թթան հան-



դիսացան գաղափարական-քաղաքական աշխատանքի արդյունավետ կազմա-
կերպումը, սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության
բարձրացումը, կուսակցական և պետական կարգապահության ամրապնդումը։
ՀԿԿ Լենինականի քաղաքային կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպու-
թյունները ՍՄԿԿ XXIII համագումարից հետո ավելի մեծ ուշադրություն են
նվիրել կադրերի տնտեսագիտական ուսուցմանը, պաշտպանել ու զարգացրել
են մեր մեծ հայրենիքում ծնունդ առած հայրենասիրական այն նախաձեռնու-
թյունները, որոնք ուղղված են արտադրության արդյունավետության բարձ-
րացմանը։ Կուսակցության քաղաքային կոմիտեի պլենումներում, կուսակցա-
կան-տնտեսական ակտիվի ժողովներում պարբերաբար ու գործարար պայ-
մաններում քննարկում ենք այնպիսի հարցեր, որոնք սերտորեն առնչվում են
ռեֆորմի հաջող իրականացման, հիմնական արտադրաֆոնդերի ու ձեռնար-
կությունների ռեզերվների խելացի օգտագործման, աշխատանքի արտադրո-
ղականության և արտադրության արդյունավետության բարձրացման հետ։
Երկաթուղային հանգույցի, Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ,
մսի-պահածոների կոմբինատների, դարբնոցա-մամլիչային սարքավորումնե-
րի գործարանի, վագոնային դեպոյի կուսկազմակերպությունների ուշադրու-
թյան կենտրոնում են գտնվում տեխնիկական առաջադիմության, արտա-
դրանքի որակի բարելավման, մասսայական կադրերի ուսուցման կազմա-
կերպման և այլ կարևոր հարցեր։ Թե ինչպիսի դրական արդյունք է տալիս
կուսկազմակերպությունների կողմից հանդես բերվող գործիմացությունն ու
նախաձեռնությունը, կարելի է ցույց տալ երկաթուղային հանգույցի կուսկո-
միտեի օրինակով։ Նախ, պետք է նշել, որ նորոգման ցանցային գրաֆիկի
արմատավորումն իրականացվեց հանգույցի և լոկոմոտիվային դեպոյի կուս-
կոմիտեի նախաձեռնությամբ։ Նախքան աշխատանքի գիտական կազմակերպ-
ման այդ առաջավոր մեթոդին անցնելը, կուսկազմակերպությունները մաս-
սայական-բացատրական լայն աշխատանք ծավալեցին, հաշվի առան կոմու-
նիստների, արտադրության մարդկանց կարծիքներն ու առաջարկությունները։
Այդ կարևոր միջոցառումն իրականացվեց կարճ ժամանակամիջոցում։ Հան-
գույցային կուսկոմիտեի օգնությամբ վագոնային դեպոյում արագացվեց ան-
վազույգերի և սայլակների նորոգման մասնաշենքի կառուցումը։ Լոկոմոտի-
վային դեպոյի արտադրամասերում ներդրվեց Պերմի դեպոյի նորոգումների
կազմակերպման առաջավոր փորձը, կառուցվեց էլեկտրաքարշի արագացված
նորոգման մեքենայացված կանգառ։

Զգալիորեն ընդարձակվել է կուսկազմակերպություններին հուզող ու
հետաքրքրող հարցերի շրջանակը։ Փորձը ցույց է տալիս, որ նրանց համար
«մեծ» կամ «փոքր» հարցեր չկան, ամեն մի միջոցառում կարող է վճռական
դեր խաղալ, եթե այն մշակվել է մասսաների ակտիվ աջակցությամբ։ Այդ
տեսակետից ուսանելի շատ բան կարելի է տեսնել կոնդենսատորների, հղկող
հաստոցների գործարանների, գործվածքային ֆաբրիկայի կուսկազմակեր-
պությունների գործունեության մեջ։ Նրանք իրենց տեսադաշտում են պահում
նոր սարքավորումների տեղադրումն արագացնելու, պարապուրդները կրճա-
տելու, արտադրական կարողությունները արագորեն գործարկելու, աշխա-
տանքի անվտանգությունն ապահովելու և այլ կարևոր հարցեր։ Կուսկազմա-
կերպությունների նախաձեռնությամբ ավելի լայն տարածում են գտնում հա-
սարակական հիմունքներով կազմակերպված կոնստրուկտորական բյուրոնե-
րը, ստեղծագործական բրիգադները, էկոնոմիկայի ուսուցման դպրոցները և

այլն։ Ինչ խոսք, այս ամենը բարձրացնում է կուսակցական աշխատողի դերն ու հեղինակությունը, մասսաները հավատում են նրան։

Լենինականի աշխատավորները, ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին, մեծ ոգևորությամբ ընդունեցին ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի մասին ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագիծը։ Նոր հնգամյա պլանում տեսնելով մեր հայրենիքի վաղվա օրը, նրա զարգացման հեռանկարները՝ քաղաքի կուսկազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները միահամուռ հավանություն են տալիս կուսակցության մշակած միջոցառումներին և իրենց ջանքերն ուղղում առաջադրված խնդիրների հաջող լուծմանը։

Քաղաքի աշխատավորների առջև ծառացած խնդիրները մեծ են և պատվաբեր։ Սկսվող հնգամյակը, առաջին հերթին, կդառնա արդյունաբերության նոր վերելքի, նրա տնտեսական կապերի հետագա ընդարձակման, քաղաքաշինության մեծ պլանների իրականացման ժամանակաշրջան։ Քաղաքը կհարստանա արդյունաբերական մի շարք նոր ձեռնարկություններով։ Առաջիկայում կավարտվի սառնարանային կոմպրեսորների, կոնդենսատորների գործարանների նոր արտադրամասերի կառուցումը։ Ընթացիկ տարվա չորրորդ եռամսյակում առաջին արտադրանքը կտա գարեջրի ածիկի նոր գործարանը։ Հիմնականում կավարտվի քիմիական-դեղագործական, ապակու, լիկյորի, օղու, միկրոէլեկտրաշարժիչների, կահույքի, հեծանիվի, հացի, հրուշակեղենի նոր գործարանների, տպարանի շինարարությունը։ Մշակված միջոցառումների կենսագործումը, նոր կարողությունների գործարկումը և եղած հնարավորությունների արդյունավետ օգտագործումը պայմաններ կստեղծեն հնգամյակի տարիներին արտադրանքի թողարկումն ավելացնելու ավելի բարձր տեմպերով։ Արդյունաբերական ձեռնարկություններում մեծ աշխատանքներ կկատարվեն նոր տեխնիկայի ներդրման, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման ասպարեզում։ Դա հնարավորություն կտա ձեռնամուխ լինելու արտադրանքի ավելի բարձրորակ տեսակների, կատարելագործված մեքենաների ու սարքերի արտադրությանը։

Իններորդ հնգամյակում ավելի է մեծանալու կապիտալ շինարարության և բարեկարգման աշխատանքների ծավալը։ Հնգամյակի տարիներին քաղաքի աշխատավորները կստանան 250 հազար քմ բնակելի տարածություն։ «Լենշին» տրեստն այս տարի իրացնելու է 14 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ։ Վերանորոգման-շինարարական տրեստի աշխատանքի ծավալը կհասնի մոտ 6 միլիոն ռուբլու։ Շարունակվելու է քաղաքի բանվորական թաղամասերի և փողոցների կոմպլեքսային բարեկարգման պրակտիկան, որը հնարավորություն կընձեռի ավելի գեղեցիկ դարձնել նորակառույց ավանները։ Նոր տեսք կստանան քաղաքի մուտքերը։ Բանվորական ավաններում կստեղծվեն մանկական խաղահրապարակներ, ծաղկանոցներ։

Արդեն սկսվել են և այս տարի ավելի արագ տեմպերով կընթանան Հայաստանի 50-ամյակի անվան փողոցի վերակառուցման և բարեկարգման աշխատանքները։ Այս փողոցի վրա կառուցվելու է քաղաքի արևելյան և արևմտյան մասերը միացնող 250 մետր երկարությամբ կամուրջ, որի շինարարությունն ընթացքի մեջ է։ Բնակարանային շինարարության մեջ նորը կլինեն բազմահարկ բնակելի շենքերը։ Դրանցից առաջինն այժմ կառուցվում է Շիրակացու փողոցի վրա։ Ինը հարկանի այդ շենքն իր նոր բնակիչներին կընդունի այս տարվա երկրորդ կեսին։



Մեր հայրենի քաղաքին նոր տեսք կտան 12 հարկանի հյուրանոցի, տուրիստական բազայի, սպորտի պալատի շենքերը, որոնց շինարարությունն արդեն սկսվել է։ Մոտ ապագայում կսկսվի պիոներների պալատի, քաղաքային կենտրոնական գրադարանի, երգչախմբային ընկերության համերգասրահի, նկարչական դպրոցի նոր շենքերի շինարարությունը։ Այս տարի կըսկըսվի երկաթուղային կայարանի շենքի վերակառուցումն ու ընդարձակումը, լիովին կավարտվի Շիրակացու փողոցի բարեկարգումը։ Այն կդառնա քաղաքի գեղեցիկ պողոտաներից մեկը՝ շրջապատված բազմահարկ շենքերով։

Քաղաքի աշխատավորներին խմելու ջրով ապահովելու հարցը միշտ էլ գտնվել է կուսակցական ու սովետական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Դեռևս անցած տարի սկսվեց արդյունաբերական նպատակներով օգտագործվող երրորդ ջրագծի կառուցումը։ Այդ կարևոր աշխատանքը կավարտվի մոտ ապագայում և հնարավորություն կտա զգալիորեն բարելավելու բնակչության ջրամատակարարման գործը, արդյունաբերական ձեռնարկությունների կարիքների համար օգտագործելու Ախուրյան գետի ջրերը։ Առաջիկայում մի շարք միջոցառումներ են իրականացվելու աշխատավորների հանգստի կազմակերպման, զբոսայգիների բարեկարգման, կանաչ տարածությունների ընդարձակման, բնակչության սպասարկման գործի հետագա բարելավման, նոր հուշարձանների կառուցման ասպարեզում։ Սկսվելու է նոր հանրախանութի, կենցաղի տան շինարարությունը։ Գեղեցիկ ճարտարապետական կոթող կլինի Մայր Հայաստան հուշարձանը, որը կառուցվելու է մանկական երկաթուղու շրջանում, բարձունքի վրա։

Իհարկե, սրանցով չեն սահմանափակվում այն աշխատանքները, որոնք կատարվելու են առաջնորդի անունը կրող քաղաքում նոր հնգամյակում։

Լենինականի աշխատավորները միշտ էլ հաջողությամբ ու պատվով են լուծել իրենց առջև դրված բարդ խնդիրները։ Արտադրական բուռն վերելքը, որն սկսվել է ՍՄԿԿ XXIV համագումարի նախապատրաստման օրերին, խոսում է այն մասին, որ Լենինականի աշխատավորները, կուսկազմակերպությունների ղեկավարությամբ, նոր հնգամյակը կնշանավորեն լավ գործերով, կոմունիստական կուսակցության համագումարը կդիմավորեն արժանի կերպով, ջանքեր չեն խնայի համագումարի որոշումները հետևողականորեն կենսագործելու համար։



# ԱՐԳԱՍԱՎՈՐ ՏԱՐԻՆԵՐ

Ս. Խ. ՕՀԱՆՅԱՆ

ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար

Կիրովականը մեր հանրապետության բարգավաճող քաղաքներից է՝ արդյունաբերական իր խոշոր ձեռնարկություններով, կրթության հաստատություններով, մշակույթի ու առողջապահության բազմաթիվ օբյեկտներով: Զարգացող արդյունաբերության բազայի վրա այստեղ ամեն տարի ծավալվում են շինարարական լայն աշխատանքներ, անընդհատ վեր են հառնում բնակելի նոր տներ: Անցած հինգ տարիներին քաղաքում իրացվել է ավելի քան 145 հազար քմ բնակելի նոր տարածություն:

Մեծ է Կիրովականի արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը ոչ միայն մեր հանրապետության, այլև Միության ընդհանուր ծավալի մեջ: Բավական է ասել, որ ջերմաստիճանային տաքացուցիչների, ծավալային թելի, ցիանպլավի միակ արտադրողը Սովետական Միությունում Կիրովականն է:

Այդ արտադրանքի բազմաթիվ տեսակներ լայն ճանաչում են գտել մեր երկրում և մեծ պահանջարկ են ներկայացնում սպառողների մոտ: Միության արդյունաբերական հարյուրավոր խոշոր կենտրոններ մեր սպառողներն են: Միայն ճշգրիտ հաստոցների գործարանի արտադրանքն անցած տարի ուղարկվել է երկու հազարից ավելի տարբեր հասցեներով:

Կիրովականյան արտադրանքն իր համար ճանապարհ է հարթել նաև դեպի արտասահման, շատ տեսակներ հասել են համաշխարհային ստանդարտի մակարդակին, ներկայացվել միջազգային տոնավաճառներում ու ցուցահանդեսներում և մեծ համբավ բերել նյութական բարիքներ արտադրող մեր մարդկանց՝ բանվորներին ու ինժեներա-տեխնիկական աշխատողներին: Այժմ տաս անուն ավտոմատ սարքեր առաքվում են արտասահմանյան 23 երկիր, այդ թվում՝ Բուլղարիա, Ռումինիա, Իրան, Մոնղոլիա, ԳԴՀ, Չեխոսլովակիա և այլն: Տասնմեկ անուն ճշգրիտ սարքերի պատվիրատուներ են Կուբան, Դանիան, Հարավսլավիան, Ռումինիան, Ֆինլանդիան և էլի ուրիշ 14 երկրներ: Տասնչորս հասցեով արտասահման են ուղարկվում կարբիդ, ցիանամիդ և կորունդ, ինը հասցեով՝ ավտոգեն սարքավորումներ:

Հետագայում ևս կիրովականյան մակնիշով շատ հաստոցներ, սարքավորումներ և այլ արտադրատեսակներ կստանան նոր ուղեգրեր, կգտնեն նոր պատվիրատուներ, ինչպես մեր Միությունում, այնպես էլ արտասահմանում:

Արդյունաբերությունը Կիրովականում զարգանում է հսկայի քայլերով և



ծանրակշիռ տեղ գրվում մեր հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ: Արդյունաբերությունն այստեղ հատկապես ուժեղ թափով է զարգացել ՍՄԿԿ XXIII համագումարից հետո ընկած տարիներին, որոնք անչափ արգասավոր էին և իսկական քննաշրջան հանդիսացան մեր կուսկազմակերպությունների համար: Նրանք նշանակալից ու վճռական քայլ կատարեցին մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման վերաբերյալ համագումարի նախանշած ծրագրի իրագործման համար: Այժմ, երբ հանրագումարի են բերվել ութերորդ հնգամյակի արդյունքները, կարող ենք մեր կուսակցության համաժողովին բաց ճակատով զեկուցել մեր մեծ նվաճումների մասին:

ՍՄԿԿ XXIII համագումարից հետո Կիրովականի կուսկազմակերպությունները ավելի բորբոքեցին Բաթում, Սուխում, Սումգաիթ և Ռուսթավի քաղաքների հետ վաղուց սկսված մրցությունը: Այն ստացավ նոր որակ և բերեց ուրախացնող, գոհացուցիչ նոր արդյունքներ: Բավական է ասել, որ քաղաքի արդյունաբերությունն անցած տարվա նոյեմբերի 24-ին, մեր հանրապետության վերածննդի մեծ տոնի նախօրյակին, զեկուցեց հնգամյա պլանը կատարելու մասին և երկրին տվեց ավելի քան 21 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք:

Քիմիական մանրաթելի, «Ավտոմատիկա», հաստոցաշինական գործարանների կուսկազմակերպությունները նախընթաց տարիներին դրական և ուսանելի փորձ կուտակեցին արտադրության կուսակցական ղեկավարման, սոցիալիստական մրցության ձևերի կատարելագործման, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության զարգացման ասպարեզում: Քիմիական մանրաթելի գործարանի՝ արտադրության կուլտուրայի բարձրացման փորձը լայն տարածում գտավ քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում, դուրս եկավ հանրապետության սահմաններից: Այդ փորձի հրապարակայնության ու արմատավորման նպատակով 1969 թ. «Տրուդ» թերթի խմբագրության նախաձեռնությամբ գործարանում անցկացվեց համամիութենական սեմինար-խորհրդակցություն:

Նախորդ հնգամյակում քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները մեծ ջանքեր գործադրեցին արտադրական նորույթներն արմատավորելու, երկրի առաջավոր ձեռնարկությունների՝ ուշադրության արժանի փորձը մեր բանվորների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների սեփականությունը դարձնելու համար: Քիմիական մանրաթելի գործարանի կուսկոմիտեն 1969—70 թվականներին հանդես եկավ Շչեկինոյի քիմիական կոմբինատի փորձի տարածման ու արմատավորման նախաձեռնությամբ: Առաջավոր այդ ձեռնարկության օրինակով կիրովականցիները ևս կարողացան ավելի քիչ բանվորական ուժով թողարկել առավել շատ արտադրանք, նշանակալիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, տնտեսված աշխատավարձի հաշվին ավելացնել բանվորների վաստակը:

«Ավտոմատիկա» գործարանի տեղամասերում հաջողությամբ ներդրվեց արտադրության անընդմեջ պլանավորման նովոչերկասկցիների առաջավոր փորձը: Այստեղ արմատավորված անհատական-բրիգադային վարձատրման դիֆերենցված նոր մեթոդը տվեց հիանալի արդյունք:

ՍՄԿԿ XXIII համագումարից հետո ընկած ժամանակաշրջանը Կիրովականի համար բնորոշվում է արտադրական նոր կարողությունների, արտադրանքի ծավալի զգալի մեծացմամբ: Այդ տարիներին գործարկվեցին «Հայէլեկտրալույս» միավորման, գարեջրի-լիմոնադի, պանրի և հացի գործարան-

ները, գեղարվեստական կոմբինատը, քիմիական կոմբինատի ամյակի, միզանյութի, ցիանուրաթթվի հզոր արտադրամասերը, կորունդի նոր հզորությունները, քիմիական մանրաթելի գործարանի ծավալային մանվածքի տեղամասը, տրիկոտաժի ֆաբրիկայի գործվածքային, ներկման և կարի արտադրամասերը, «Ավտոգենմաշ», ճշգրիտ հաստոցների գործարանների, կարի ֆաբրիկայի նոր մասնաշենքերը։ Այդ ամենի շնորհիվ հնգամյակի տարիներին արդյունաբերական արտադրանքի ծավալը մեծացավ 86,6 տոկոսով կամ 93,5 միլիոն ռուբլով։ Միայն այս աճը հավասար է քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների 1965 թվականին թողարկած արտադրանքի ծավալին։

ՍՄԿԿ XXIII համագումարը կուսկազմակերպությունների առջև խնդիր դրեց ավելի լավ օգտագործել գոյություն ունեցող բոլոր հնարավորությունները՝ երկրի էկոնոմիկայի աճի ավելի արագ տեմպեր ապահովելու համար։ Ի պատիվ կիրովականցիների պետք ասել, որ այդ խնդիրը հաջողությամբ է լուծվել։ Արդյունաբերական արտադրանքի ծավալի միջին տարեկան աճի տեմպը հնգամյակում կազմել է 17,5 տոկոս, որն զգալիորեն գերազանցում է հանրապետության և Միության աճի միջին մակարդակը։ Ընդ որում, աշխատանքի արտադրողականությունը հնգամյակում բարձրացել է 35,9 տոկոսով։ Անհամեմատ մեծացել է թեթև և սննդի, էլեկտրատեխնիկական արդյունաբերության, մեքենաշինության ու գործիքաշինության արտադրանքի ծավալը։ Այսպես, թեթև և սննդի արդյունաբերության արտադրանքն աճել է 2,4 անգամ կամ քաղաքի արդյունաբերության համախառն արդյունքի մեջ դրանց տեսակարար կշիռը հասել է 38,1 տոկոսի, 1966 թ. 29,9-ի փոխարեն։

Քաղաքի կուսկազմակերպությունները մեծ ներդրում են կատարել նաև աշխատավորների կենսամակարդակը բարձրացնելու վերաբերյալ կուսակցության XXIII համագումարի պահանջները կատարելու ասպարեզում։ Այդ մասին են վկայում միջին աշխատավարձի և գնողունակության նշանակալից աճը։ Հնգամյակի տարիներին արդյունաբերության աշխատողների միջին վաստակն ավելացել է 28,5, ապրանքաշրջանառության ծավալը՝ 65,6 տոկոսով։ Ապրանքաշրջանառության միայն աճը զգալիորեն գերազանցում է 1960 թ. մակարդակը։

Հնգամյակի խնդիրների լուծման գործում որոշակի հաջողություններ են ձեռք բերել նաև քաղաքի տրանսպորտի ու կապի, առողջապահության, լուսավորության, մշակույթի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատողները։

Կուսակցությունը և կառավարությունն ըստ արժանվույն են գնահատել մեր առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվների հայրենանվեր գործունեությունը։ Կահույքի ֆաբրիկան, «Հայէլեկտրալույս» գործարանը, «Կիրնեբուդ» տրեստը, բեռնատար ավտոպարկը, երկաթուղային հանգույցն արժանացել են համամիութենական լենինյան հոբելյանական պատվոգրի, քիմկոմբինատը, տրիկոտաժի ֆաբրիկան, քիմիական մանրաթելի և ճշգրիտ հաստոցների գործարանները՝ Հայաստանի վերածննդի 50-ամյակի հուշամեդալի։ Արտադրության բարձր կուլտուրայի համար քիմիական մանրաթելի, հաստոցաշինական և «Ավտոգենմաշ» գործարանների, կահույքի, կարի ֆաբրիկաների կոլեկտիվներին շնորհվել է համամիութենական դիպլոմ։ Հնգամյա պլանները հաջողությամբ կատարելու համար քաղաքի առաջավոր բանվորների ու ծառայողների մի մեծ խումբ ներկայացվել է կառավարական պարգևի։



Մեծ են Կիրովական քաղաքի աշխատավորների՝ հնգամյակի տարիներին ձեռք բերած նվաճումները, նրանց ներդրումը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման գործում։ Դրանք արդյունք են կուսկազմակերպությունների արգասավոր գործունեության, ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների հետևողական կենսագործման։

Վերջերս Կիրովականի կուսկազմակերպությունը գործարար մթնոլորտում քննարկեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյակի՝ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագիծը և հավանություն տվեց դրան։

Իններորդ հնգամյակում մեր քաղաքի արդյունաբերությունը կկատարի առաջընթաց նոր քայլ։ Արդյունաբերական արտադրանքի արտադրության տեմպերը կգերազանցեն նախորդ հնգամյակի մակարդակը։ Առաջիկա 2—3 տարիներին կկառուցվի և շահագործման կհանձնվի կահույքի նոր, խոշոր ֆաբրիկան, որով նրա արտադրանքի ծավալը կմեծանա հինգ անգամ։

Նոր հնգամյակում ևս Կիրովականում զարկ կտրվի քիմիական արդյունաբերությանը։ Քիմիական մանրաթելի գործարանի երկրորդ հերթի շահագործմամբ արտադրանքի ծավալը գրեթե կկրկնապատկվի։ Քիմկոմբինատում կգործարկվեն կարբոմիդից մելամին ստանալու, կապրոլակտամի և այլ արտադրամասերը, որոնց շնորհիվ արդյունքի իրացումը կաճի 1,5 անգամ։ Արտադրական նոր մասնաշենքեր ծնունդ կառնեն «Ավտոգենմաշ», վերակառուցման աշխատանքներ կկատարվեն ճշգրիտ հաստոցների գործարաններում։ Արտադրությունը մեծ չափով կընդլանվի «Հայէլեկտրալույս» միավորման գործարանում։ Առաջատար այս ձեռնարկությունները, ինչպես նաև տրիկոտաժի ֆաբրիկան հնգամյակի վերջում 1,6—2,3 անգամ ավելի շատ արտադրանք կտան երկրին, քան անցած տարի։ Միայն ավտոգեն սարքավորումների արտադրանքն այժմյան 5 միլիոնից կհասնի 14, էլեկտրալուսավորության հարմարանքներինը՝ 10-ից 25 միլիոն ռուբլու։

Ջերմային էներգիայի նկատմամբ մեծ է մեր արդյունաբերական ձեռնարկությունների և բնակչության պահանջարկը։ Այդ կապակցությամբ նախատեսվում է նշանակալիորեն ընդլայնել Կիրովականի ջերմաէլեկտրակայանը, մեծացնել նրա կարողությունը։

Նոր հնգամյակում հսկայական չափերի հասնող աշխատանքներ կծավալվեն բնակելի տների, կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության և քաղաքի բարեկարգման ու նրա ջրամատակարարման ասպարեզներում։

Մեր քաղաքի աշխատավորները բարձր պարտավորություններ են ստանձնել նոր հնգամյակի առաջին տարում, պայքարում են արժանավայել ձևով դիմավորելու ՍՄԿԿ XXIV համագումարը։ Առաջին հաջողություններն արդեն առկա են. ձեռնարկությունների ճնշող մեծամասնությունը տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներով են կատարել անցած երկու ամսվա պետական առաջադրանքները։



# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԳՈՐԻՍԸ ՀԻՆԳ ՏԱՐՈՒՄ

Ք. Բ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

ՀԿԿ Գորիսի շրջկոմի առաջին քարտուղար

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանի՝ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում ասված է. «Աշխատանքային ռեսուրսների օգտագործումը բարելավելու և արդյունաբերության ավելի համաչափ տեղաբաշխման նպատակով նոր ձեռնարկությունները կառուցել գլխավորապես միջակ և փոքր քաղաքներում՝ հաշվի առնելով տղամարդկանց և կանանց աշխատանքի օգտագործման անհրաժեշտությունը»:

Իրագործելով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները, Գորիսի կուսկազմակերպությունները, սովետական օրգանները և տնտեսական մարմինները անցած հնգամյակում նկատելի գործ են կատարել և լուրջ հաջողությունների հասել արդյունաբերության զարգացման բնագավառում: Դրան մեծապես նպաստել է շրջանի էներգետիկայի հարուստ տնտեսությունը:

Գորիսի ամենահին և ամենամեծ ձեռնարկությունը տրիկոտաժի ֆաբրիկան է: Այն հիմնադրվել է 1948 թվականին, ուր առաջին տարում աշխատում էր 17 բանվոր, իսկ համախառն արտադրանքը 42 հազար ռուբլի էր: Նրա կոլեկտիվը տարեցտարի ավելացնում է արտադրանքը, բարձրացնում որակը: 1969 թվականին ֆաբրիկան տեղափոխվեց իր նորակառույց տիպային շենքը: Մոտ երկու միլիոն ռուբլով մեծացավ արտադրության ծավալը, իսկ բանվորների թիվը հասավ 470 հոգու: Ֆաբրիկան իր արտադրանքն իրացնում է հարյուրավոր քաղաքներում, այդ թվում՝ Վլադիվոստոկում, Խաբարովսկում, Չիտայում, Կրասնոյարսկում, Սվերդլովսկում, Իրկուտսկում, Տամբովում, Կույբիշևում, Ուլյանովսկում, Վոլգոգրադում և այլն:

Տարեցտարի այստեղ աճում են արտադրական հիմնական և շրջանառու ֆոնդերն ու դրանց օգտագործման մասշտաբները, բարձրանում է շահութաբերությունը:

Ֆաբրիկան այժմ աշխատում է տնտեսական նոր ռեֆորմի պահանջներով: Համախառն արտադրանքի աճի հետ միասին աճում է նաև իրացման պլանը: Մեծ գործ է կատարվում արտադրանքի ինքնարժեքի իջեցման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար: Առանց նոր տեխնիկայի ներդրման և բանվորական ուժի ավելացման, նախորդ տարվա համեմատությամբ, 1969 թվականին ֆաբրիկան հայրենիքին տվեց 42 տոկոսով ավելի արտադրանք: Ինչ խոսք, որ այդ խնդրի իրականացումը դժվարությունների հետ էր կապված, պահանջում էր ուժերի մեծ լարում: Եվ մարդիկ աշխատում էին խղճի թելադրանքով, անընդհատ կատարելագործում արտադրական պրոցեսները: Անցյալ տարի ձեռնարկության կոլեկտիվը 20 օր շուտ կատարեց տարվա պարտավորությունները, պլանից դուրս հայրենիքին տալով 128 հազար կտոր տրիկոտաժեղեն: 4 տոկոսով բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, 2,1 տոկոսով իջավ թողարկվող արտադրանքի ինքնարժեքը: Իսկ պլանով նախատեսված 82-ի փոխարեն, առաջին տեսակի արտադրանքը կազմեց 86 տոկոս: Տարեկան սահմանված 95 հազարի դիմաց, ֆաբրիկան ունեցավ 134 հազար ռուբլու օգուտ:



Ֆաբրիկայում լայն ծավալ է ստացել կոմունիստական աշխատանքի շարժումը: Գործվածքային տեղամասի՝ Ամալյա Բարխուդարյանի և Աիդա Բարսեղյանի ղեկավարած երիտասարդական բրիգադներն արժանացան կոմունիստական աշխատանքի բարձր կոչման. Նրանք արտադրական պլանները կատարում են 150—160 տոկոսով: Տրիկոտաժի ֆաբրիկան 1965 թվականին տվել է 1,116 հազար, 1970-ին՝ 2,652 հազար ռուբլու արտադրանք:

1960 թվականին գործարկվեց և իր առաջին արտադրանքը տվեց փոքր էլեկտրաշարժիչների գործարանը: Սկզբնական շրջանում այն դեռևս ապահովված չէր անհրաժեշտ արտադրամասերով, պատրաստականություն, գիտելիքներ ունեցող մարդկանցով: Էլեկտրաշարժիչները հավաքելու համար համարյա բոլոր մասերը ձեռք էին բերվում Սովետական Միության տարբեր քաղաքներից: Ձեռնարկության կոլեկտիվի գործադրած ջանքերի շնորհիվ վերջին տարիներս զգալի փոփոխություններ կատարվեցին գործարանում: Այժմ ձեռնարկությունն ապահովված է անհրաժեշտ արտադրամասերով, որը հնարավորություն է ընձեռում բոլոր մասերն ու դետալներն արտադրել տեղում: Իսկ բանվորները կատարելագործել են իրենց մասնագիտությունը: Այդ ամենը մեծապես նպաստում է ո՛չ միայն արտադրական առաջադրանքների անթերի կատարմանը, այլև արտադրանքի որակի բարելավմանն ու ինքնարժեքի իջեցմանը:

1969 թ. գործարանի կոլեկտիվը յուրացրեց արտադրանքի 2 նոր տեսակներ և անմիջապես ձեռնամուխ եղավ դրանց մասսայական թողարկմանը: Նոր էլեկտրաշարժիչները, որոնք ծավալով զգալիորեն փոքր են առաջին արտադրանքի համեմատությամբ, օգտագործվում են առևտրական ու կուլտուր-կենցաղային սպասարկման օբյեկտներում և լավ քննություն են բռնել:

Գործարանը վերջերս անցավ նոր տիպի ԱՕԼ—2—7 էլեկտրաշարժիչի սերիական արտադրությանը, որը տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով գտնվում է համաշխարհային ստանդարտի մակարդակին և դուրս է գալիս միջազգային շուկա: Այստեղ հաջողությամբ իրացվել է նաև առաստաղային փոքր տիպի հովհարի արտադրությունը, որը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ցուցահանդեսի կողմից արժանացել է III կարգի դիպլոմի և բրոնզե մեդալի: Պետք է նշել, որ այդ տիպը միակն է ՍՍՀՄ-ում և արտադրվում է Գորիսում: Այժմ գործարանը թողարկում է փոքր հզորության էլեկտրաշարժիչների մոտ 40 տարատեսակներ և առաստաղային հովհարներ: Այս ձեռնարկությունը օրեցօր ավելացնում է պատվիրատուների թիվը: Գործարանի արտադրանքն ուղարկվում է Մոսկվա, Լենինգրադ, Կիև, Խարկով, Վոլգոգրադ, Կույբիշև, Նովոսիբիրսկ, Վլադիվոստոկ և այլ քաղաքներ:

Մեր երկրում անընդհատ զարգացող ավտոմատիկան և կիբեռնետիկան փոքր շարժիչների մեծ պահանջ ունի: Դրա շնորհիվ հետզհետե աճում է գործարանի այդ տիպի արտադրանքը: 1965 թվականի համեմատությամբ, 1970 թվականին, ձեռնարկության ապրանքային արտադրության ծավալը մեծացել է 2,4, իրացմանը՝ 1,9 անգամ, 17,7 տոկոսով իջել է արտադրանքի ինքնարժեքը: Մեկ ռուբլու հաշվով, ապրանքային արտադրանքի վրա կատարված ծախսը պակասել է 17,9 կոպեկով, մեկ բանվորի աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 2,8 անգամ, նկատելիորեն աճել է շահութաբերությունը: Զգալի չափով աճել են հիմնական և շրջանառու միջոցները: Գործարանի համախառն արտադրանքի ծավալն այժմ անցնում է երկու միլիոն ռուբլուց: Արդեն երկրորդ տարին է, որ գործարանն իր ֆիլիալն ունի Տեղ գյուղում, որը հաջողությամբ կատարում է պլանները: Շուտով նման ֆիլիալներ կբացվեն նաև Կոռնիձոր, Խնածախ, Քարահունջ, Հարժիս գյուղերում և Որոտան ավանում: Գործարանի առաջընթացի վառ վկայությունն այն է, որ 1965 թվականի 683 հազար ռուբլու դիմաց, 1970 թ. թողարկվել է 1,531 հազար ռուբլու արտադրանք:

Մեծ ու շնորհակալ աշխատանք է կատարում քաղաքի ավտոնորոգման ձեռնարկությունը: Այն սպասարկում է Գորիսի, Ղափանի, Սիսիանի, Ազիզբեկովի, Եղեգնաձորի, ինչպես նաև հարևան Ադրբեջանական հանրապետու-

թյան մի շարք շրջանների տնտեսություններին։ Այստեղ կատարվում են ավտոմեքենաների նոր թափքերի պատրաստման, չուգունի ձուլման և այլ աշխատանքներ։ Գործարանի մարդիկ անթերի են կատարում առաջադրանքները, աշխատատար պրոցեսների կատարելագործմամբ և առաջավոր փորձի ներդրմամբ անընդհատ բարելավում արտադրանքի որակը։ Եթե մի ժամանակ հիմնական նորոգումից դուրս եկած ավտոմեքենաներն ու շարժիչները չէին ապահովում նախատեսված վազքը, ապա այժմ պատվիրատուները գոհ են նորոգողների աշխատանքից. նախատեսված 35—40 հազար կիլոմետրի դիմաց, նորոգված մեքենաներն ու շարժիչները կատարում են մինչև 70 հազար կիլոմետր վազք։

Տեղական հարուստ հումքի բազայի վրա կառուցված կրի գործարանը Գորիսի, Ղափանի, Սիսիանի, եղբայրական Ադրբեջանի Լաչինի և Կուբաթլիի շրջանների շինարարական կազմակերպություններին տարեկան տալիս է 4500 տոննա բարձրորակ կիր։ Այս գործարանից քիչ հեռու փռված է երկաթբետոնե կառուցվածքների հրապարակը։ Այն շահագործման է հանձնվել 1965 թվականին և շենքերի ծածկերի, միջնորմների համար արտադրում է պանելներ ու սալիկներ։ Հրապարակը 1969 թ. միայն Գորիսի շինարարական տեղամասին տվեց ավելի քան 4900 խորանարդ մետր երկաթբետոնե կառուցվածքներ։ 1970 թվականին նրա արտադրական կարողությունն ավելացավ 1,5 անգամ։

Լավ համբավ է վաստակել գարեջրի գործարանը։ Այն տարեկան արտադրում է մոտ 200 հազար դեկալիտր գարեջուր և լիմոնադ։ Ձեռնարկության մարդիկ պարտավորվել են այս տարի միայն աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին հայրենիքին տալ ավելի քան 30 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։

ՍՄԿԿ XXIII համագումարի նախօրեին կառուցվեց և շահագործման հանձնվեց Գորիսի ծխախոտի ֆերմենտացիոն ֆաբրիկան։ Սկզբնական շրջանում ձեռնարկության համախառն արտադրանքը մեկ ու կես միլիոն ռուբլի էր, իսկ 1969 թվականին այն հասավ մոտ երեք միլիոնի։ Գրեթե երկու անգամ մեծացել է նաև հումքի իրացման ծավալը, իսկ օգուտները 1969 թվականին, 1966 թվականի համեմատությամբ, աճել են 6 անգամ։ Ֆաբրիկայի արտադրանքն առաքվում է 20-ից ավելի ծխախոտի կոմբինատներ։

Շնորհակալ աշխատանք է կատարում Հայգորգի Գորիսի ֆիլիալը։ Վերջին երկու տարվա ընթացքում այն արտադրել է 17,5 հազար քառակուսի մետր գորգ։ «Ղազախ», «Զանգեզուր», «Լոռի», «Անահիտ» և մյուս գեղեցիկ գորգերն արտահանվում են Անգլիա, Ֆրանսիա, ԱՄՆ, Արաբական Միացյալ Հանրապետություն և այլ երկրներ։

Արտադրական ձեռնարկությունների շարքում աչքի է ընկնում նաև կենցաղային սպասարկման կոմբինատը, որը քաղաքում և շրջանի գյուղերում ունի բազմաթիվ արտադրամասեր, կարի, կոշիկի պատվերի և նորոգման, կահույքի, բնակարանների նորոգման, մետաղյա իրերի արտադրության և այլ ծառայությունների բազմաթիվ օբյեկտներ։ Տարեցտարի կոմբինատն ընդարձակում է աշխատավորների սպասարկման ոլորտը, բարձրացնում արտադրանքի որակը։ Անցած հնգամյակում, նախորդի համեմատությամբ, կենցաղային սպասարկման կոմբինատի համախառն արտադրանքն աճել է ավելի քան երեք անգամ։

Բնակչության աճող պահանջները բավարարելու գործում քիչ ծառայություններ չի մատուցում տեղական հումքի վրա վերջերս կազմակերպված տեղական արդյունաբերության կոմբինատը, որն ունի կարի, քարի, ավազի, փայտամշակման, թիթեղագործական, կոճակի պատրաստման և այլ արտադրամասեր։ Այն անխափան մատակարարում է շինանյութեր, արտադրում տղամարդկանց անձրևաթիկնոցներ, կարում հագուստներ, պատրաստում թիթեղյա և փայտյա տնային գործածության իրեր, մետաղյա ցանց և այլն։ Վերջին երկու տարվա ընթացքում կոմբինատի համախառն արտադրանքն աճել է երկու անգամ։

Գորիսում հաջողությամբ զարգանում է նաև անտառային արդյունաբերությունը։ Շրջանային անտառարդտնտեսությունը զբաղվում է անտառների



պաշտպանության, տնկման և փայտամշակման արդյունաբերության հարցերով, շինարարությանը տալով պարկետ, իսկ տեքստիլ արդյունաբերությանը՝ ճիկների կիսաֆաբրիկատներ։ Անտառարդտնտեսությունը շարունակ ընդարձակում է իր արտադրությունը, ավելացնում համախառն արտադրանքը, գերակատարում ֆինանսաարտադրական առաջադրանքները։

Քաղաքի ամենաերիտասարդ արդյունաբերական ձեռնարկությունը ռետինե կոշիկի գործարանն է, որն ամբողջ հզորությամբ աշխատելու դեպքում՝ տարեկան կթողարկի հինգ միլիոն զույգ կոշիկ։

Գորիսի շրջանում ծնունդ է առել և զարգանում է նաև սննդարդյունաբերությունը։ Վերջին տարիներին այն ավելի արագ զարգացավ։ Անցած հնգամյակի չորս տարում, նախորդի համեմատությամբ, սննդարդյունաբերությունը շրջանում աճել է ավելի քան երեք անգամ։

Արդյունաբերական բազմազան ճյուղերի ստեղծման ու զարգացման շնորհիվ անընդհատ աճել է շրջանի արդյունաբերության համախառն արտադրանքն ու աշխատանքի արտադրողականությունը։

1970 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, միայն Գորիս քաղաքի արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացել է մոտ 6 միլիոն ռուբլով, իսկ բանվորների թիվը՝ 678-ով։

Արդյունաբերական ձեռնարկությունների տեխնիկական մակարդակը բարձրացնելու, արտադրությունն ավելի լավ կազմակերպելու, աշխատաժամանակն արդյունավետ օգտագործելու միջոցով աշխատանքի արտադրողականության բարձրացման հնգամյա պլանային առաջադրանքը գերազանցվել է 3,5 տոկոսով։ Իսկ ռեզերվների խելացի օգտագործմամբ և խնայողության ռեժիմի կիրառմամբ հնգամյակի համար նախատեսված շահութաբերության մակարդակը բարձրացել է 2,2 տոկոսով։

Արդյունաբերության արագ զարգացման շնորհիվ դրա տեսակարար կշիռը շարունակ փոփոխվում է ժողովրդական տնտեսության ընդհանուր կառուցվածքում։ 1960 թվականին շրջանի էկոնոմիկայում արդյունաբերությունը կազմել է 23, 1965-ին՝ 30,3, իսկ 1969-ին՝ 40,5 տոկոս։

Պետք է նշել, որ արդյունաբերության ընդհանուր հաշվեկշռում հետզհետե փոփոխվում է նաև դրա ճյուղային կառուցվածքը։ Այժմ ամբողջ արդյունաբերության մեջ մեքենաշինության և մետաղամշակման բաժինը կազմում է 18 տոկոս, շինանյութերի արդյունաբերությանը՝ 10, թեթև արդյունաբերությանը՝ 38, սննդինը՝ 32, այլ ճյուղերինը՝ 2 տոկոս։

Գորիսում մեծ են արդյունաբերության զարգացման հեռանկարները։ Մոտակա 2—3 տարում զգալիորեն կընդլայնվեն եղած ձեռնարկությունները, որի շնորհիվ կբարձրանա դրանց արտադրական կարողությունը։ Արտադրամասերի ընդլայնման, նոր մեքենաների և սարքավորումների ներդրման ճանապարհով մոտ 3 անգամ կավելանա «Հայգորգի» Գորիսի ֆիլիալի արտադրանքը, ինչպես նաև կյուրացվեն արտադրանքի նոր տեսակներ։ Տրիկոտաժի ֆաբրիկան կաշխատի լրիվ կարողությամբ և տարեկան կտա 6 միլիոն ռուբլուց ավելի արտադրանք, այժմյան 2 միլիոն 350 հազարի դիմաց։

Նախատեսված է 1971—1975 թվականներին կառուցել ավտովերանորոգման նոր գործարանի շենք, որի շնորհիվ այդ ձեռնարկության արտադրանքը ներկայիս մակարդակը կգերազանցի 6 անգամ։ Շինուհայրի նորաստեղծ բանավանում շուտով շահագործման կհանձնվի ռետինե սպորտային կոշիկների արտադրության նոր գործարանը, որը տարեկան կարտադրի մինչև հինգ միլիոն զույգ կոշիկ։ Նոր հնգամյակի նորակառույցներից կլինեն նաև Գորիսի հզոր պանրագործարանը՝ իր բազմաթիվ արտադրամասերով, մսի և երշիկեղենի, խոզերի բտման կոմբինատները, թռչնաբուծական ֆաբրիկան։ Կգործարկվի կահույքի նոր ֆաբրիկան։ Ընթացիկ տարում շահագործման կհանձնվի փոքրէլեկտրաշարժիչների գործարանի տիպային նոր շենքը, որը հնարավորություն կընձեռի ներկայիս 80 հազարի փոխարեն արտադրել 500 հազար շարժիչ։

Լեռնահետախուզական լայն աշխատանք է կատարվում շրջանի Սևա-

րանց, Բարձրավան և Հալիձոր գյուղերի շրջակայքում, ուր հայտնաբերվել են երկաթի, ոսկու և այլ արժեքավոր հանքանյութերի հարուստ պաշարներ։ Դրա շնորհիվ այստեղ ծնունդ կառնի լեռնա-հանքային և մետալուրգիական արդյունաբերությունը։

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության հետագա զարգացման նպատակով նախատեսված է շրջանում բացել նաև Երևանի կաբելի գործարանի ֆիլիալը, որի հումքի բազան կհանդիսանա Գորիսի հարևան՝ Ղափանի պղնձի հանույթը։

Շրջանի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման հիմքը էլեկտրաէներգիան է։ Էլեկտրաէներգիայի պահանջն առաջիկա տարիներին շրջանում կավելանա գրեթե երեք անգամ։ Որոտանի կասկադի երեք հիդրոէլեկտրակայանների կառուցումով, որի առաջնեկը Տաթևի հիդրոէլեկտրակայանն է, հարուստ էներգիա կմատակարարվի շրջանի զարգացող արդյունաբերությանը։

Այսպիսով, Սևարանցի երկաթը, կաբելը և Որոտանի հարուստ էլեկտրաէներգիան հնարավորություն կընձեռեն Գորիսի փոքրէլեկտրաշարժիչների գործարանի շարժիչների արտադրությունը հասցնել մեկ միլիոն հատի և նույնիսկ նման արտադրությունը զարգացնել Զանգեզուրի մյուս շրջաններում։ Շրջանի մյուս վայրերում առկա են շինարարական հումքի մեծ բազաներ։ Շինարարության մեծ ծավալն ու թափը Գորիսի և հարևան մյուս շրջանների տնտեսություններին հարկադրում է մեծ քանակությամբ ցեմենտ տեղափոխել շինարարական օբյեկտները, որը կապված է մեծ դժվարությունների և ծախսերի հետ։ Մինչդեռ Գորիսը հարուստ է կրաքարերի անսպառ պաշարով, որի բազայի վրա հնարավոր է գործարան կառուցել և բարձրորակ ցեմենտ արտադրել։

Գորիսի շրջանը հարուստ է բնական բազմազան քարերով, իսկ դրանց որոշ տեսակներ օգտագործվում են քիմիական արդյունաբերության մեջ։ Ելնելով հումքի բազայի, աշխատավոր ձեռքի և էլեկտրաէներգիայի առկայությունից, գտնում ենք, որ պետք է ուսումնասիրել և Գորիսում զարգացնել քիմիական արդյունաբերության առանձին ճյուղեր, մասնավորապես սիլիկատների արտադրությունը։

Շրջանը հարուստ է բազալտի տարբեր երանգների, ամուր քարերի, պեմզայի, ավազի, շինափայտի և այլ շինանյութերի պաշարներով։ Սակայն դրանց արտադրությունը պլանավորված չի կազմակերպվում։ Մեր կարծիքով, այդ բազայի վրա պետք է կառուցել շինանյութերի արտադրության գործարան, որը բարձրորակ շինանյութեր կմատակարարի ո՛չ միայն Գորիսի, այլև հարևան շրջանների շինարարական կազմակերպություններին և աշխատավորներին։ Ելնելով տնտեսական շրջաններում արտադրաուժերի ճիշտ տեղաբաշխման և բնական ռեսուրսների արդյունավետ օգտագործման անհրաժեշտությունից, գտնում ենք, որ արդեն հասունացել է Մոսկվայի էլեկտրատեխնիկայի ինստիտուտի ֆիլիալի ստեղծումը Գորիսի փոքր էլեկտրաշարժիչների գործարանում, որն արմատապես կլուծի մեր բնաշխարհի հարուստ ընդերքի ծավալուն ուսումնասիրման, շահագործման համար կադրերի պատրաստման հարցը։





# ԳՈՀԱՑՈՒՑԻՉ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ

**Ռ. Դ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**

ՀԿԿ Վարդենիսի շրջկոմի առաջին քարտուղար

ՍՄԿԿ XXIII համագումարը կուսկազմակերպություններին, սովետական ժողովրդին զինեց մեր երկրի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման կոնկրետ ծրագրով։ Այդ ծրագրի իրականացման համար վճռական պայքար ծավալեց նաև Վարդենիսի շրջանի կուսկազմակերպությունը։

Մեր շրջանի էկոնոմիկայի հիմնական ուղղությունը գյուղատնտեսությունն է։ Բնական է, որ մենք պետք է մեծ ջանքեր գործադրենք՝ այդ ասպարեզում կուսակցության պահանջները կատարելու համար։ Այդ նպատակով էլ մեր կուսկազմակերպություններն սկսեցին կատարելագործել մասսաների շրջանում տարվող կուսակցական-կազմակերպական, կուսակցական-քաղաքական աշխատանքի ձևերն ու մեթոդները, մոտիկից գլխավորել նրանց աշխատանքային խանդավառությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը։ Այդ ամենի շնորհիվ ՍՄԿԿ XXIII համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում շրջանը շոշափելի հաջողությունների հասավ գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1965 թվականի համեմատությամբ զգալիորեն աճեց։ Կոլտնտեսություններն ու սովխոզները ժամկետից 2 ամիս շուտ կատարեցին ու գերակատարեցին երկրագործական և անասնապահական մթերքների արտադրության և վաճառքի հնգամյա առաջադրանքները։ Հնգամյակի տարիներին պետությանը հանձնեցինք ու վաճառեցինք 6.700 տոննա միս, 22.300 տոննա կաթ, 1.400 տոննա բուրդ, 134.000 տոննա հացահատիկ, 8.000 տոննա ծխախոտ և գյուղատնտեսական այլ մթերքներ։

Գյուղի աշխատավորները, հաղթահարելով կլիմայական անբարենպաստ պայմանները, միայն անցյալ տարի, 1968 թվականի համեմատությամբ, հացահատիկի համախառն արտադրությունն ավելացրին 52 հազար ցենտներով։ Եթե հնգամյակի առաջին տարում շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները արտադրել էին 1240 տոննա ծխախոտ, ապա 1970 թվականին այն կազմեց 1.900 տոննա կամ ծխախոտի յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը 12 ցենտներից հասավ 23,1 ցենտների։ Զգալի տեղաշարժեր կատարվեցին հացահատիկի արտադրության բնագավառում։ Հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից անցյալ տարի հավաքվեց 17,4 ցենտներ բերք, 1966 թ. 13 ցենտների փոխարեն։

Առանձին կոլտնտեսություններ և սովխոզներ հասան ավելի բարձր արդյունքների։ Սովակ, Շաֆակ, Վարդենիս, Ջախըլու, Կայաբաշ, Մեծ Մազրա, Տաշքենդ գյուղերի կոլտնտեսություններն անջրդի պայմաններում հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստացան 22—30 ցենտներ բերք։

Բերքատվության բարձրացման ասպարեզում առավել բնորոշ է Տաշքենդ գյուղի կոլտնտեսությունում կատարվող աշխատանքը։ Տ. Բայրամովի և Ա. Ռուստամովի ղեկավարած դաշտավարական բրիգադները միայն անցյալ տարի քարերից ու թփուտներից մաքրեցին մոտ 70 հեկտար խոպան հողեր, 120 հեկտարի վրա անցկացրին ջրատար առուներ, կազմակերպեցին ցանքատարածությունների ոռոգումը, յուրաքանչյուր հեկտարին տվին մեկ տոննա հանքային և 4 տոննա օրգանական պարարտանյութեր։ Այդ ամենի շնորհիվ նրանք հեկտարից ստացան 32 ցենտներ հացահատիկ։

Կուսկազմակերպությունները, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներն առանձնահատուկ ուշադրություն են նվիրում գյուղատնտեսության քիմիացման ու մելիորացման, տեխնիկական վերազինման և աշխատատար պրոցեսների մեքենայացման հարցերին։ Համագումարին նախորդած տարիներին մեքենայացվել են գյուղատնտեսական հիմնական աշխատանքները։ Այժմ հանրային դաշտերում աշխատում են 300 տրակտոր, 100 կոմբայն, ավելի քան 450 բեռնատար ավտոմեքենա։ Կառուցվել է ոռոգման 20 կիլոմետր նոր ցանց, զգալիորեն ընդարձակվել են ոռոգելի հողատարածությունները։

Հնգամյակի վերջին տարիներին շրջանում լայն տարածում գտավ այգեգործությունը։ Շրջանի բոլոր կատեգորիայի տնտեսություններում պտղատու այգիները հասան մոտ 500 հեկտարի։

Ագրոկոմպլեքս միջոցառումներն անշեղորեն կիրառելու, աշխատավորների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու, աշխատանքի կազմակերպումը բարելավելու միջոցով անցած հնգամյակի տարիներին լուրջ հաջողությունների հասան Ջաղքենդ, Շիշկայա, Փոքր Մազրա, Ազիզլու, Ակունք, Մեծ Մազրա, Սովակ գյուղերի կոլտնտեսությունների ծխախոտագործները։ Տարիներ շարունակ նրանք ստանում են ծխախոտի կայուն բերք՝ հեկտարից 22—25 ցենտներ։ Գովեստի է արժանի Մեծ Մազրա գյուղի կոլտնտեսության ծխախոտագործների լավագույն աշխատանքը։ 66 հեկտար ծխախոտի պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարից արդեն երրորդ տարին է, ինչ նրանք ստանում են 42—46 ցենտներ հումք։ Միայն ծխախոտագործությունից կոլտնտեսությունն անցյալ տարի ստացավ 615 հազար ռուբլի դրամական եկամուտ։

Կուսկազմակերպությունները, կոլտնտեսային ու սովխոզային մարդկանց ուշադրությունը բևեռեցին նաև անասունների գլխաքանակի ավելացման և ցեղի բարելավման վրա։ Այդ ասպարեզում տնտեսությունները շոշափելի արդյունքի հասան։ Ներկայումս պահվում է ավելի քան 100 հազար մանր և մոտ 20 հազար խոշոր եղջերավոր անասուն։ Անասնապահությունը կերի կայուն բազայով ապահովելու համար 3.000 հեկտարով ընդարձակվել է բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունը, 1.200 հեկտար խոտհարքների վրա կատարվել է մակերեսային բարելավում, ջրարբիացվել է 25 հազար հեկտար արոտավայր և զարկ է տրվել միամյա խոտացանությանը և հատիկաֆուրաժային կերի կուտակմանը։ Այդ բոլորի շնորհիվ միայն մեկ տարում՝ 1970 թվականին,



պլանով նախատեսված 27 հազարի դիմաց, կուտակվեց 35 հազար տոննա խոտ, 16 հազար տոննա ծղոտ, առանձնացվեց 1.200 տոննա հատիկաֆուրաժ։

Հնգամյակի վերջին տարիների առաջադրանքները պատվով կատարելու, հացահատիկի, ծխախոտի արտադրության նկատելի աճ ապահովելու, անասնապահության զարգացման և մթերատվության ավելացման գործում որոշակի հաջողություններ ձեռք բերելու համար շրջանը մի քանի անգամ արժանացել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և ՀՍՍՀ Գերագույն սովետի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշներին, նվաճել մրցանակային տեղեր։

Այսօրվա Վարդենիսին բնորոշ չէ միայն գյուղատնտեսությունը։ Այստեղ բուռն վերելք է ապրում նաև արդյունաբերությունը, կատարվում են շինարարական լայն աշխատանքներ։ Եթե նախկին Բասարգեչարում կար միայն մեկ ձիթհան, ապա՝ ներկայիս Վարդենիսում գործում են տորֆի, գարեջրի, ձկնաբուծական, հացի ու պանրի գործարաններ, կենցաղսպասարկման և տեղական արդյունաբերության կոմբինատներ։ Շրջանն իր բնական հարստություններով ուրույն տեղ է գրավում հանրապետության մեջ։ Վարդենիսի լեռնաշխարհը հարուստ է գունավոր մետաղներով (ոսկի, պղինձ և այլն)։ Հիմնադրվել է լեռնագործների ապագա քաղաքը։ Արդյունաբերական առաջատար ճյուղերի զարգացումը հիմնականում պայմանավորված է Զոդի ոսկու կոմբինատի կոմպլեքսի գործարկումով։ Գործում է Զոդի ոսկու հարստացուցիչ ֆաբրիկան։ Շինարարական լայն աշխատանքներ են ծավալվում Արարատում հիմնական ֆաբրիկայի կառուցման համար, բարեկարգվում և մեքենայացվում են հանքախորշերը, սկսվել է Սևան—Զոդ երկաթգծի կառուցումը, Զոդի ոսկու հանքերը միութենական ճանաչման են արժանացել։

Շրջանի շինարարներն իրենց լավագույն աշխատանքի համար արժանացան ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի լենինյան հոբելյանական պատվոգրին։ Հնգամյակի տարիներին նրանք կառուցեցին ավելի քան 10 հազար քմ բնակելի տարածություն, շահագործման հանձնեցին հիվանդանոցի, կապի բաժանմունքի, պրոֆտեխնիկական ուսումնարանի, կենցաղսպասարկման կոմբինատի, դպրոցական, ակումբ-գրադարանների, առևտրի և կենցաղային օբյեկտների բազմաթիվ շենքեր։ Տեղական վարդագույն տուֆ քարով կառուցվող արդյունաբերական ձեռնարկությունների մասնաշենքերը, բնակելի տները, դպրոցները, ակումբները նոր շուք են տալիս շրջկենտրոնին ու գյուղերին։ Զգալիորեն ավելացել են շինարարության բնագավառի կապիտալ ներդրումները։ 1968 թվականի 1,5 միլիոնի փոխարեն, այդ նպատակով միայն 1970 թվականին ծախսվեց 7 միլիոն ռուբլի։

Լայն թափ է ստացել կոլտնտեսությունների և սովխոզների միջոցներով գյուղերում կուլտուրական օբյեկտների շինարարությունը, Ջաղքենդ, Սովակ, Շաֆագ, Նարիմանլու, Զոդ գյուղերի կոլտնտեսությունները կառուցում են դպրոցական նոր շենքեր։ Տաշքենդ և Վարդենիս գյուղերում դպրոցական շենքերի շինարարությունը կսկսվի այս տարի։ Շրջանի բոլոր հանրակրթական դպրոցներն առաջիկա երկու տարում կանցնեն մեկհերթյա պարապմունքի։ Կուսակցության XXIII համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում կառուցվել և շահագործման են հանձնվել 10 դպրոցական շենք, 7 ակումբ, 12 կենցաղային սպասարկման տաղավար, 5 մսուր-մանկապարտեզ և 17 բաղնիք։

Վարդենիսի շինարարներն անում են ամեն ինչ, որպեսզի նախատեսված

Ժամկետներում շահագործման հանձնվեն շրջկենտրոնի կուլտուրայի պալատը, պանրի գործարանը, ավտոգրասենյակը և հանքագործների քաղաքի 10 հազարանոց սպորտային համալիրը՝ իր սպորտային բոլոր կառույցներով։

Վարդենիս քաղաքատիպ ավանը վերածվել է շինարարական լայն հրապարակի։ Կանցնեն տարիներ, և Սովետական Հայաստանի քարտեզի վրա տեղ կգտնի Վարդենիս նոր քաղաքը՝ 40 հազար բնակչով։

Հնգամյակի տարիներին կուսակցական, սովետական կազմակերպությունները լուրջ բարեփոխումներ են կատարել գյուղի աշխատավորության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման ասպարեզում։ Էլեկտրիֆիկացվել և ռադիոֆիկացվել են բոլոր գյուղերն ու ավանները, կենցաղի մեջ է մտել բնական գազն ու հեռուստացույցը, շրջանի գյուղերում գործում է 16 կինոստացիոնար կետ, բոլոր գյուղերն ունեն ակումբներ, գրադարաններ և խանութներ։

Միայն վերջին 4 տարիների ընթացքում կոլտնտեսականները և բանվոր ծառայողներն իրենց խնայած միջոցներով և պետական վարկով կառուցել ու շահագործման են հանձնել 1.200-ից ավելի հարմարավետ նոր առանձնատուն։ Հնգամյակի ընթացքում կոլտնտեսականների ռեալ եկամուտներն ավելացել են 1,5 անգամ։

Կուսակցության նախորդ համագումարից հետո ձեռք բերած մեր նվաճումներն արդյունք են արտադրության մարդկանց աշխատանքային սխրանքների։ Գյուղի աշխատավորները հիացմունքով են խոսում սոցիալիստական աշխատանքի հերոսներ Ապրես Գասպարյանի, Նաբի Մամեդովի, Գարեգին Մովսիսյանի, արտադրության առաջավորներ Մուսլամ Ջաբարովի, Արմեն Եղիազարյանի, Լենա Սաքոյանի, Անախանում Հախվերդիևայի, Մալեք Հեյդարովի և ուրիշների մասին։ Շրջանի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացմանը պատշաճ ծառայություններ մատուցելու և երկարատև անբասիր աշխատանքի համար 72 մարդ պարգևատրվել է Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով, 119-ը արժանացել են հանրապետության գերագույն սովետի պատվոգրի։

Կուսակցության XXIII համագումարի որոշումները կենսագործելու, ութերորդ հնգամյա պլանի խնդիրները լուծելու գործում Վարդենիսի շրջանի կուսկազմակերպություններն իրենց արժանի բաժինն ունեն։ Սակայն ձեռք բերածը դեռևս քիչ է։ Մենք լայն հնարավորություններ ունենք գյուղատնտեսության, արդյունաբերության, շինարարության հետագա զարգացման համար։ ՍՄԿԿ հերթական XXIV համագումարն այդ ասպարեզում կառաջադրի նոր, վիթխարի խնդիրներ։

Համագումարի պատվին շրջանում լայն ծավալ է ստացել մրցությունը, որի ընթացքում աշխատավորները հանդես են բերում հայրենասիրական հիանալի նախաձեռնություններ։ «ՍՄԿԿ համագումարին մեր հարվածային աշխատանքը» լոզունգը, որը հռչակեցին Մոսկվայի աշխատավորական կոլեկտիվների ներկայացուցիչները, դարձել է միլիոնավոր մարդկանց մարտական նշանաբանը։ Արձագանքելով մոսկվացիների կոչին՝ հայրենասիրական նոր նախաձեռնություններով հանդես եկան նաև Վարդենիսի շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները, շինարարական և տրանսպորտի կազմակերպությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները։

Մտնելով նախահամագումարյան սոցիալիստական մրցության մեջ՝ Զոդի ոսկու կոմբինատի կոլեկտիվն ստանձնեց նոր պարտավորություններ։ Դրանց իրականացման համար կուսկազմակերպության մշակած միջոցառումների ար-



դյունքը եղավ այն, որ ժամկետից երկու ամիս շուտ, նոյեմբերի 1-ին, կոմբինատի կոլեկտիվը կատարեց հանքախորշերի բարեկարգման և էլեկտրիֆիկացման տարեկան առաջադրանքները, զգալիորեն ավելացավ ոսկու փորձնական-հարստացուցիչ ֆաբրիկայի կարողությունը։

Համագումարը լավագույն գործերով են դիմավորում ընդերքի մեր հետախույզները՝ Զոդի հետախուզական արշավախմբի երկրաբանները։ Նրանք պարտավորվել են իրենց օգուտների ու տնտեսումների հաշվին հետախուզել շրջանի պղնձի հանքավայրերը։ Նրանց խոսքը գործի է վերածվել. Կարախման գյուղի շրջակայքում մեր երկրաբանները հայտնաբերել են պղնձի հարուստ պաշարներ։

Նախահամագումարյան սոցիալիստական մրցության մեջ յուրահատուկն այն է, որ կուսկազմակերպությունները և սովետական մարմինները կուսակցական-քաղաքական և կազմակերպական ամենօրյա աշխատանքով նպաստում են յուրաքանչյուր կոլտնտեսականի, սովխոզի և արտադրական ձեռնարկության բանվորի պարտավորությունների կատարմանը, օգնում ետ մնացողներին՝ առաջավորներին հասնելու համար։ Արտադրության մեր առաջավորների դևիզն է՝ «Թող կոմունիստական յուրաքանչյուր հարվածային աշխատողի կողքին կանգնի նրա աշխատանքային ընկերը, թող յուրաքանչյուր կոմունիստական աշխատանքի բրիգադայի կողքին կանգնի մեկ այդպիսին ևս»։

Յուրաքանչյուր նախաձեռնության իրականացում պայմանավորված է այդ նպատակի համար որոշակի միջոցառումների պատշաճ իրագործմամբ։ Բերքատվության բարձրացման ասպարեզում այսպիսի միջոցառումներից մեկը մեզ մոտ եղած օրգանական պարարտանյութի՝ տորֆի մանրուքի անսպառ պաշարների արդյունավետ օգտագործումն է։ Նախատեսվում է 5.000 հեկտար հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարին տալ 25—30 տոննա տորֆի մանրուք։ Արդեն դաշտ է փոխադրվել 60 հազար տոննա օրգանական պարարտանյութ։ Այդ աշխատանքին մեծ թափ հաղորդելու համար մոբիլիզացվել են կոլտնտեսությունների, սովխոզների, «Հայգյուղտեխնիկայի» շրջանային միավորման, հիմնարկ-ձեռնարկությունների տրանսպորտի ողջ միջոցները։

Գալիք տարվա բարձր բերքն ապահովելու նպատակով լուրջ քայլեր է կատարվում։ Նորակերտի կոլտնտեսության բազայի վրա կազմակերպված էլիտային սերմնաբուծական պետական տնտեսությունը միայն 1970 թվականին արտադրեց մոտ 10 հազար ցենտներ հացահատիկի որակյալ սերմացու, որի մի մասը օգտագործվեց աշնանացան կուլտուրաների ցանքի համար։ Հացահատիկի արտադրության ավելացման, ստանձնած պարտավորությունները կատարելու նպատակով շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները ձեռք բերեցին ավելի քան 700 տոննա աշնանացան ցորենի բարձրորակ սերմացու։ Պլանով նախատեսված 8 հազարի դիմաց, ցանվեց 9.300 հեկտար հացահատիկ, կուտակվեց ավելի քան 20 հազար ցենտներ գարնանացան հացահատիկի սերմացու, կատարվեց 11 հազար հեկտար ցրտահերկ։

Հայաստանի կոմկուսի XXIV համագումարում Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Քոչինյանն իր զեկուցման մեջ Հայաստանի կուսկազմակերպությունների առջև խնդիր դրեց. մեր սակավահող հանրապետությունում, գյուղատնտեսական հողատարածությունների և, առանձնապես, վարելահողերի յուրաքանչյուր հեկտարն օգտագործել առավել տնտեսական արդյունավետու-

թյամբ։ Ելնելով դրանից՝ միայն անցյալ տարի շրջանում քարերից, թփուտներից մաքրվեց և վարելահողի վերածվեց 650 հեկտար տարածություն։ Ներկայումս միջոցներ են ձեռնարկվում Գյումրիի ենթաշրջանի 5 հազար հեկտար ավազահողերի ստրուկտուրան փոխելու և դրանց բերրիությունը բարձրացնելու համար։ Լուրջ աշխատանք է կատարվում էրոզիայի ենթարկված վարելահողերը վերականգնելու ասպարեզում։

Գնալով դեպի կուսակցության XXIV համագումարը՝ շրջանի կուսկազմակերպությունները ընդհանրացնում են աշխատավորության շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի կուտակված հարուստ փորձը։ Նրանք ձեռնարկություններում, հիմնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում կազմակերպում են զեկուցումներ, դասախոսություններ և զրույցներ՝ նվիրված ժողովրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի բնագավառներում ձեռք բերած նվաճումներին, նոր, իններորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագծի մասսայականացմանը։

Այդ և իրագործվող մյուս միջոցառումների շնորհիվ շրջանի աշխատավորները բազմապատկել են իրենց եռանդը և զգալիորեն ավելացրել արտադրանքի թողարկումը։ Նրանք ամեն ինչ անում են հարազատ կուսակցության XXIV համագումարը նորանոր հաջողություններով դիմավորելու համար։

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԸ ԹՎԵՐՈՎ


Ա. Գ. ՋԱԼԻՆՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի կուսակցական միասնական տոմսի և վիճակագրության սեկտորի վարիչ


Հայաստանի կոմկուսակցությունը, որը ՍՄԿԿ մարտական ջոկատներից է, իր XXIV համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում աճել է և՛ քանակապես, և՛ որակապես։ Այդ տարիներին հանրապետությունում զգալիորեն բարձրացել է մասսաների քաղաքական ակտիվությունը, առաջավոր բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի ձգտումը կոմունիստական կուսակցության շարքերն ընդունվելու համար։ Դրա վկայությունն այն է, որ անցած հինգ տարում հանրապետության կուսկազմակերպությունները 23.314 մարդու ընդունել են ՍՄԿԿ շարքերը որպես անդամ, իսկ 20.021-ին՝ անդամության թեկնածու։ ՍՄԿԿ շարքերն ընդունված անդամության թեկնածուների 57,4 տոկոսը բանվորներ ու գյուղացիներ են, իսկ ծառայողների 74,7 տոկոսը՝ անմիջականորեն արտադրության հետ կապված ինժեներա-տեխնիկական աշխատողներ, գյուղատնտեսության մասնագետներ և առաջատար այլ պրոֆեսիայի մարդիկ։

Կուսակցության մեջ ընդունվողների սոցիալական կազմի բարելավման գործը լավ է ընթացել Երևանի Լենինյան շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում, որտեղ ՍՄԿԿ անդամության թեկնածուների 69 տոկոսը բանվորներ են, ծառայողների 91,9 տոկոսը՝ ինժեներա-տեխնիկական աշխատողներ։ Կիրովականի քաղաքային կուսկազմակերպություններում կուս. թեկնածուների 61,7 տոկոսը, Լենինականում՝ 58,7 ,Թումանյանում՝ 62,2, Ղափանում՝ 50,4 տոկոսը բանվորներ են։

Առավել հատկանշական է սոցիալական կազմի փոփոխությունները Ապարանի շրջանային կուսկազմակերպությունում։ Այստեղ ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների 81,9 տոկոսը բանվորներ ու կոլտնտեսականներ են։ Վարդենիսի շրջանում 67,4 տոկոսը, Կալինինոյի ու Սիսիանի շրջաններում՝ ավելի քան 70, իսկ Նոյեմբերյանի շրջանում՝ 57,1 տոկոսը միայն բանվորներ են, որոնց մեծամասնությունն աշխատում է սովխոզների դաշտավարական, այգեգործական բրիգադաններում



ու անասնապահական ֆերմաներում։ Հարկ է ընդգծել, որ ՀԿԿ XXIV համագումարից հետո հանրապետության բանվոր և կոլտնտեսական կոմունիստների թիվն ավելացել է 11.694 մարդով։ Այժմ ՍՄԿԿ անդամ-թեկնածուների ընդհանուր թվի 55,5 տոկոսը բանվորներ ու կոլտնտեսականներ են։

Այս փաստերը վկայությունն են այն բանի, որ հանրապետության կուսկազմակերպությունները հետևողականորեն են կատարում կուսակցության այն պահանջը, որ՝ այսուհետև ևս կուսակցության սոցիալական կազմում բանվորները պետք է գրավեն առաջատար դիրք։

Կուսակցության շարքերի համալրումը բնորոշ է նրանով, որ վերջին տարիների ընթացքում այն կատարվել է հիմնականում ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերում ու տեղամասերում աշխատող անվանի մարդկանց, արտադրության նորարարների ու տեխնիկական ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչների հաշվին, որոնք անմիջականորեն զբաղված են նյութական բարիքների արտադրությամբ, ակտիվորեն մասնակցում են կուսակցության առաջադրած խնդիրների իրականացմանը։ Այսպես, ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունված բանվորներից 5.522-ը աշխատում են արդյունաբերական ձեռնարկություններում, որից 571-ը՝ սարքաշինության և գործիքաշինության մինիստրության գործարաններում, 257-ը՝ գունավոր մետալուրգիայի, 1.092-ը՝ էլեկտրատեխնիկական, 299-ը՝ ռադիոտեխնիկական արդյունաբերության մեջ, 1.517-ը՝ տրանսպորտում ու շինարարությունում, 1.366-ը՝ սովխոզներում և այլն։

Կոմունիստների կազմի փոփոխությունը ՀԿԿ XXIV և XXV համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում ըստ սոցիալական դրության ունի հետևյալ պատկերը (տոկոսներով).

| | Առ 1-ը հունվարի 1966 թ. | Առ 1-ը հունվարի 1971 թ. |
|---|---|---|
| Ընդամենը կոմունիստներ | 100 | 100 |
| որից՝ բանվորներ | 29,6 | 32,7 |
| գյուղացիներ | 25,3 | 32,7 |
| ծառայողներ և մնացած բոլորը | 45,1 | 44,5 |

Կուսկազմակերպությունները, բարձր գնահատելով կանանց դերը կոմունիստական շինարարության գործում, լուրջ ուշադրություն են նվիրում նրանցից առաջավորներին կուսակցության շարքերը ներգրավելուն։ Հայաստանի կոմկուսի վերջին համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում որպես անդամության թեկնածու ՍՄԿԿ շարքերն է ընդունվել 4335 կին կամ բոլոր ընդունվածների 21,6 տոկոսը։ Եթե XXIV համագումարի նախօրյակին Հայաստանի կոմկուսակցության կազմում կար 20.027 կին կոմունիստ, ապա՝ 1971 թ. հունվարի 1-ի դրությամբ նրանց թիվը հասավ 24.173-ի։

Կոմերիտմիությունը կուսակցության հուսալի ռեզերվն է։ Մեր խնդիրն է՝ երիտասարդությանը ներգրավել ՍՄԿԿ շարքերը, գլխավորապես կոմերիտմիության միջոցով։ Հանրապետության շատ կուսկազմակերպություններ կարևոր ուշադրություն են նվիրում իրենց գործունեության այս կողմին ևս։

Նախորդ՝ XXIV համագումարից հետո Հայաստանի կոմկուսակցությունը զգալիորեն համալրվեց առաջավոր կոմերիտականների հաշվին։ 1966—1970 թթ. ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու ընդունվել են 7.392 կոմերիտականներ, որոնք կազմում են բոլոր ընդունվածների 36,9 տոկոսը։

Հայաստանի կոմկուսակցությունը, լավագույն մարդկանցով համալրվելու հետ մեկտեղ, իր շարքերը մաքրել և մաքրում է կուսակցության անդամի բարձր կոչումն արատավորողներից։ ՀԿԿ նախորդ՝ XXIV համագումարից հետո տարբեր պատճառներով ՍՄԿԿ անդամությունից և անդամության թեկնածությունից վտարվել կամ դուրս է մնացել 1.928 մարդ, իսկ 226 թեկնածուներ մերժվել են և չեն ընդունվել որպես ՍՄԿԿ անդամ։

ՍՄԿԿ XXIII համագումարը պահանջեց մշտապես հոգ տանել կուսակցության շարքերի մաքրության մասին այն հաշվով, որ յուրաքանչյուր կոմունիստ արժանապատվությամբ կրի և արդարացնի լենինյան կուսակցության անդամի կոչումը։ «Կուսակցությունը,— ասված է համագումարի որոշման մեջ, — այսուհետև էլ կազատվի անարժաններից, նրանցից, ովքեր խախտում են ՍՄԿԿ ծրագիրն ու կանոնադրությունը, իրենց վարքագծով արատավորում են

կոմունիստի կոչումը։ Յուրաքանչյուր կոմունիստին, ՍՄԿԿ շարքերը յուրաքանչյուր ընդունվողին ներկայացվող բարձր պահանջները բխում են այն հսկայական պատասխանատվությունից, որ կուսակցությունն ունի սովետական ժողովրդի հանդեպ»։ Դեռևս ՌԿ(բ)Կ IX համագումարում Վ. Ի. Լենինն ասում էր, որ կուսակցության շարքերում չպետք է հանդուրժել և ոչ մեկին, որն իր խնդիրը չի կատարում։

Նախընթաց տարիներին զգալիորեն բարձրացել է նաև կոմունիստների մասնագիտական և հանրակրթական պատրաստականությունը։ ՍՄԿԿ շարքերը համալրվել են բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցող մարդկանցով։ Ըստ կրթության ՀԿԿ-ի կազմն ունի հետևյալ պատկերը.

| | Առ 1/1—66 թ. | | Առ 1/1—71 թ. | |
|---|---|---|---|---|
| | Բացարձակ թվերով | տոկոսներով | Բացարձակ թվերով | տոկոսներով |
| Ընդամենը ՍՄԿԿ անդամներ և թեկնածուներ | 110.357 | 100 | 130.353 | 100 |
| որից՝ | | | | |
| բարձրագույն կրթությամբ | 24.804 | 22,5 | 33.515 | 25,7 |
| թերի բարձրագույն կրթությամբ | 3.636 | 3,5 | 4.262 | 3,3 |
| միջնակարգ կրթությամբ | 34.475 | 31,2 | 44.169 | 33,9 |
| այդ թվում՝ | | | | |
| մասնագիտական կրթություն ունեցողներ | 14.282 | 41,4 | 18.268 | 41,4 |
| Ոչ լրիվ միջնակարգ կրթությամբ | 26.190 | 23,7 | 28.351 | 21,8 |
| Տարրական կրթությամբ | 21.046 | 19,1 | 20.056 | 15,3 |

Հանրապետությունում կոմունիստների ընդհանուր կազմում սիստեմատիկորեն ավելանում է նաև գիտական աշխատողների թիվը։ Առ 1-ը հունվարի 1971 թ. 279 կոմունիստներ ունեն գիտության դոկտորի և 1879-ը՝ գիտության թեկնածուի կոչում։

Հայաստանի կոմկուսակցության XXIV համագումարից հետո նրա շարքերում մեծ փոփոխություններ են կատարվել նաև ըստ կուսակցական ստաժի։ 1971 թ. հունվարի 1-ի դրությամբ կոմունիստների 35,9 տոկոսն ունի մինչև 10 տարվա, 20,8 տոկոսը՝ 10—20, 27,4 տոկոսը՝ 20—30, 11,9 տոկոսը՝ 30 տարուց ավելի ստաժ։ Հետաքրքրական է նաև ՀԿԿ կազմն ըստ տարիքի, որը երևում է հետևյալ տվյալներից.

| Կոմունիստների տարիքը | Առ 1-ը հունվարի 1971 թ. | Տոկոսներով |
|---|---|---|
| Մինչև 25 տարեկան | 4399 | 3,4 |
| 25—30 տարեկան | 9406 | 7,2 |
| 31—40 » | 36905 | 28;3 |
| 41—50 » | 41314 | 31,7 |
| 51—60 » | 21.801 | 16,7 |
| 60-ից բարձր տարեկան | 16528 | 12,7 |

Այս ամենը կուսկազմակերպություններին հնարավորություն է ընձեռում զուգակցել ստաժավոր, հին, հարուստ կենսափորձ ունեցող և կյանքի ու գործնական աշխատանքի փորձ չունեցող երիտասարդ կադրերի ուժերը և նրանց ճիշտ տեղաբաշխել ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում։

Հայաստանի ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում հայերի հետ ձեռք-ձեռքի տված աշխատում են նաև այլ ազգերի ներկայացուցիչներ, որոնցից ամենաառաջավորները ևս զինվորագրվում են Հայաստանի կոմունիստական կուսակցությանը, նրա կազմում մասնակցում մեր երկրի վերելքի համար մղվող հերոսական պայքարին։

Հայաստանի կոմկուսակցությունը 1971 թ. հունվարի 1-ի դրությամբ իր կազմում ընդգրկում էր 40 ազգության ներկայացուցիչներ, որից հայեր՝ 120.593 մարդ, ադրբեջանցիներ՝ 5449, ռուսներ՝ 2460, քրդեր՝ 580, ուկրաինացիներ՝ 363, հույներ՝ 324, ասորիներ՝ 192, հրեաներ՝ 143, բելոռուսներ՝ 62, վրացիներ՝ 55 և այլ ազգությունների 132 մարդ։

Կոմունիզմի շինարարության նախատեսված ծրագրի իրականացումը, նրա նյութատեխնիկական բազայի ստեղծու-



մը կուսկազմակերպություններից պահանջում են կոմունիստների հիմնական ուժերը ճիշտ և հմտորեն տեղաբաշխել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, մասնավորապես նյութական արտադրության ոլորտում։ Թե ինչպես է իրականացվում կուսակցության այդ ցուցումը մեր հանրապետությունում, ցույց են տալիս հետևյալ տվյալները.

| | Առ 1/1—66 թ. | առ 1/1—71 թ. |
|---|---|---|
| Ժողովրդական տնտեսության մեջ զբաղված կոմունիստների ընդհանուր թիվը | 110.357 | 118.653 |
| որից՝ | | |
| աշխատում են նյութական արտադրության ոլորտում | 67.125 | 79.223 |
| այդ թվում՝ | | |
| արդյունաբերության և շինարարության մեջ | 29.133 | 38.482 |
| տրանսպորտում և կապում | 6.306 | 6.846 |
| գյուղատնտեսության մեջ | 25.203 | 26.796 |
| մթերումների, նյութատեխնիկական մատակարարման, առևտրի և հասարակական սննդի օբյեկտներում | 5.094 | 5.767 |
| արտադրության մյուս ճյուղերում | 1.389 | 1.332 |
| Ոչ արտադրական ճյուղերում աշխատում են | 33.233 | 39.430 |
| որից՝ | | |
| կուլտուրայի, առողջապահության, գիտության բնագավառներում | 20.630 | 24.649 |
| պետական օրգաններում, վարչատնտեսական ապարատում, կուսակցական և հասարակական կազմակերպություններում | 10.315 | 11.559 |
| Այլ ճյուղերում աշխատողներ | 2.288 | 3.222 |

Ինչպես տեսնում ենք, կոմունիստների ճնշող մեծամասնությունը՝ 67 տոկոսը, զբաղված է նյութական արտադրության ոլորտում։ Արդյունաբերության, տրանսպորտի, կապի և շինարարության բուռն զարգացման շնորհիվ զգալի չափով աճել է այդ բնագավառների կոմունիստների թիվը, իսկ մեքենաշինության մեջ ընդգրկվածներինը՝ կրկնապատկվել։

Քանակական և որակական զգալի փոփոխություններ են տեղի ունեցել նաև գյուղատնտեսության մեջ աշխատող կոմունիստների կազմում։ Առ 1 հունվարի 1971 թ. այդ բնագավառում զբաղված կոմունիստների թիվը հասավ 26.796 մարդու, որից 10.708-ն աշխատում են սովխոզներում, իսկ 14.147-ը՝ կոլտնտեսություններում։

Սկզբնական կուսկազմակերպությունները կուսակցության հիմքն են։ Չկա տնտեսական, քաղաքական ոչ մի խնդիր, չկա մի միջոցառում, որի լուծման ու անցկացման ժամանակ ՍՄԿԿ Կենտկոմը չհենվի իր սկզբնական կազմակերպությունների վրա։ Նրանց լայն հնարավորություններ է ընձեռվում խորամուխ լինելու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի գործերում, ղեկավարելու և ուղղություն տալու դրանց։ ՀԿԿ XXIV համագումարից հետո կուսկազմակերպությունների քանակն ավելացել է 650-ով, ընդ որում, արդյունաբերության, կապի, տրանսպորտի և շինարարության բնագավառում՝ 230-ով։ Սովխոզների ստեղծմամբ դրանց կուսկազմակերպություններն ավելացել են 84-ով։ Այժմ հանրապետությունում գործում են 4613 սկզբնական և 1824 արտադրամասային կուսկազմակերպություններ, 3.089 կուսակցական խմբեր, որոնք միավորված են 4 քաղկոմներում, 6 քաղաքային և 34 գյուղական շրջկոմներում։ Սկզբնական կազմակերպություններից 1366-ը գործում են Երևան քաղաքում, 2807-ը՝

գյուղական շրջաններում: Աճել է նաև այն կուսկազմակերպությունների թիվը, որոնք ունեն կուսկոմիտեներ: Այսպես, եթե առ 1 հունվարի 1966 թ. ընդամենը կար 69 կուսկոմիտե, ապա՝ ներկայումս դրանց քանակը հասել է 106-ի, որոնցից երկուսին (Երևանի քիմկոմբինատ և Հայէլեկտրամեքենաշինական գործարան) տրված է շրջկոմի իրավասություն:

Նկատելիորեն բարելավվել է նաև կուսկազմակերպությունների քարտուղարների որակական կազմը: Վերջերս տեղի ունեցած հաշվետու-ընտրական ժողովներում ընտրված 4613 սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներից 2191-ը, կամ 47,5 տոկոսն ունեն բարձրագույն, 2142-ը կամ 46,5 տոկոսը՝ թերի բարձրագույն և միջնակարգ կրթություն: Ըստ զբաղմունքի 665 քարտուղարներ ինժեներատեխնիկական աշխատողներ են, 331-ը՝ բանվորներ, 220-ը՝ կոլտնտեսականներ, 363-ը՝ գյուղատնտեսներ, անասնաբույժներ և գյուղատնտեսության այլ մասնագետներ: Քարտուղարներից 1205-ը կամ 26,1 տոկոսը կանայք են:

16.890 կոմունիստներ ընդգրկված են կուսկազմակերպությունների ղեկավար կազմում որպես քարտուղարներ, կուսկոմիտեի և բյուրոյի անդամներ:

Այս ամենը վկայում է, որ հանրապետության կուսկազմակերպությունները հիմնականում ճիշտ են հասկացել ու հետևողականորեն կենսագործել ՍՄԿԿ XXIII և ՀԿԿ XXIV համագումարների որոշումները: Նրանք ներկուսակցական աշխատանքի հարցերը սերտորեն զուգակցել են գործարանների ու ֆաբրիկաների, կոլտնտեսությունների ու սովխոզների, հիմնարկությունների ներքին կյանքին, իրենց բազմաբովանդակ գործունեությամբ նպաստել տնտեսական ու քաղաքական խնդիրների հաջող լուծմանը:

Տարակույս չկա, որ Հայաստանի կուսկազմակերպությունները, զինված ՀԿԿ XXV և ՍՄԿԿ XXIV համագումարների որոշումներով, է՛լ ավելի կբարելավեն կուսակցության շարքերի համալրման գործը, կապահովեն նրա քանակական ու որակական աճը ի հաշիվ կոմունիզմի կառուցմանն ակտիվորեն մասնակցող ազնիվ մարդկանց:



## ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԴԻՐԵԿՏԻՎՆԵՐԻ ՆԱԽԱԳԻԾԸ

# ԷՆԵՐԳԵՏԻԿԱՆ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի դիրեկտիվների նախագծում խնդիր է դրվում էլեկտրաէներգիայի արտադրությունը 1975 թ. ՍՍՀՄ-ում հասցնել մինչև 1030—1070 մլրդ կիլովատ-ժամի (դա 40—45 տոկոսով բարձր է անցյալ հնգամյակի վերջին տարվա մակարդակից), կգործարկվեն 65—67 մլն. կիլովատ կարողություններ: Զգալիորեն կզարգանա ատոմային էներգետիկան, կկառուցվեն ինչպես փոփոխական, այնպես էլ հաստատուն հոսանքի ավելի բարձր լարվածության էլեկտրահաղորդման գերերկար գծեր:

Դիրեկտիվների նախագծով նախատեսված է հնգամյակի ընթացքում ՀՍՍՀ էլեկտրաէներգիայի արտադրության աճ 1,7 անգամ, որը կապահովի էներգետիկայի առաջ անցնող զարգացումը:

Փորձը ցույց տվեց, որ կողմնորոշումը դեպի էլեկտրափոխանցման գծերի կառուցումը և էլեկտրաէներգիայի պահանջի ծածկումն ի հաշիվ ուրիշ էներգասիստեմների՝ խորապես սխալ է. դա շեշտակիորեն իջեցնում է սպառողներին էլեկտրամատակարարման հուսալիությունը և վատթարացնում արդյունաբերության զարգացման պայմանները: Եթե էլեկտրամիավորման մեջ ծագում են այս կամ այն դժվարությունները, ապա դրանք հավասարապես կամ համամասնորեն չեն բաժանվում միավորման մեջ մտնող էներգասիստեմների միջև, այլ մեծ մասը տեղափոխվում է «սպառող» էներգասիստեմին, այսինքն՝ նրան, որը պետք է էլեկտրաէներգիա ստանա հարևաններից:

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն և Մինիստրների սովետը չէին կարող ստեղծված վիճակի կողքով անցնել. Նրանք անհրաժեշտ գտան ամեն կերպ ավելացնել էներգետիկայի հատկացումները և ըստ ամենայնի մեծացնել հանրապետության էլեկտրակայանների կարողությունները: Բավական է ասել, որ յոթնամյակի վերջին երկու տարվա համար կապիտալ ներդրումների ծավալը գերազանցեց նախորդ հինգ տարիների ծավալը: Դա թույլ տվեց Երևանի, Կիրովականի և Հրազդանի ջերմային էլեկտրակայաններում ստեղծել հնարավորություն՝ ութերորդ հնգամյակում հզորությունների գործադրման համար:

Ամբողջ ութերորդ հնգամյակն անցավ նոր կարողությունների շահագործման հանձնումն արագացնելու նշանաբանով: Այդ ժամանակաշրջանում էներգետիկայի տնտեսության մեջ կապիտալ ներդրումները 2,14 անգամ գերազանցեցին նախորդ հինգ տարվա մակարդակը, իսկ շինմոնտաժային աշխատանքներինը՝ ավելի քան 2,4 անգամ: Երևանի ջերմաէլեկտրակայանում գործադրվեց 200 հազար կիլովատ, Հրազդանի ՋԷԿ-ում՝ 300 հազար կիլովատ և Կիրովականի ՋԷԿ-ում՝ 25 հազար կիլովատ: Ութերորդ հնգամյակի վերջում շարք մտավ 157,2 հազար կիլովատ կարողությամբ Որոտան գետի Տաթևի հիդրոկայանը: Այսպիսով, հնգամյակի ընթացքում գործադրվեց 682,2 հազար

կիլովատ կարողություն, նախորդ հինգ տարիների 372 հազար կիլովատի և ամբողջ յոթնամյակի 499 հազար կիլովատի դիմաց։

Հանրապետության էլեկտրակայաններում նոր կարողությունների արագ շահագործման հանձնելը բարելավեց և կարգավորեց էներգետիկ հաշվեկշիռը, կտրուկ կերպով իջեցրեց միավորումից էլեկտրաէներգիայի հոսքը։ Հնգամյակի վերջին տարում էլեկտրաէներգիայի արտադրանքը 2,14 անգամ գերազանցեց յոթնամյակի վերջին տարվա մակարդակը, այն դեպքում, երբ ամբողջ երկրում այն աճել էր 1,46 անգամ։

Այնպիսի կարևոր ցուցանիշի աճը, ինչպիսին բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությունն է, կազմեց 84 տոկոս։ Բնորոշ է, որ հանրապետության հիդրոկայանները (Սևան—Հրազդան կասկադի սիստեմում) ութերորդ հնգամյակի ընթացքում, նախորդ հինգ տարիների համեմատ, էլեկտրաէներգիայի արտադրանքը կրկնակի իջեցրին։ Հանրապետության էներգամատակարարման հիմնական ծանրությունն իրենց վրա վերցրին ջերմային էլեկտրակայանները, որոնց էլեկտրաէներգիայի արտադրանքը 82 անգամ գերազանցեց նախորդ հինգ տարիների մակարդակը։ Դրանք ժողովրդական տնտեսությանը տվին 18,8 մլրդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և բաց թողին 14,7 մլն գեկոկալորիա ջերմություն։

Հրազդանի ջերմաէլեկտրակայանի լրացուցիչ կարողությունների գործադրումը թույլ տվեց նոր հնգամյակի առաջին տարվա պլանի մեջ մտցնել յուրաքանչյուրը 200 հազար կիլովատ կարողությամբ երկու բլոկ։ Առաջինը գործադրվեց այս տարվա հունվարին, երկրորդը կգործադրվի նոյեմբերին, իսկ երրորդը՝ 1972 թվականին։ Հրազդանի ջերմաէլեկտրակայանի գլխավոր պլանով (օժանդակ շինությունները) նախատեսվում է ևս երեք բլոկի տեղակայելու հնարավորություն՝ ջերմաէլեկտրակայանի հզորությունը հասցնելով մինչև 1200 հազար կիլովատի։

Պետք է նշել, որ, հաշվի առնելով հանրապետության ջրային պաշարների ծայրահեղ սղությունը, Հրազդանի ջերմաէլեկտրակայանում տեղադրվում են Հունգարական Ժողովրդական Հանրապետության՝ «Տրանսէլեկտրո» ֆիրմայի մատակարարած, այսպես կոչված, ջրազուրկ հովարաններ։

Որոտան գետի վրա կշարունակվի հիդրոկայանների կասկադի շինարարությունը։ 1973—1974 թվականներին շահագործման կհանձնվի Շամբի հիդրոկայանը երկու ագրեգատով՝ 170 հազար կիլովատ հզորությամբ։ Սպանդարյանի հիդրոէլեկտրակայանը գործի կդրվի իններորդ հնգամյակից հետո։

Հնգամյակի ընթացքում կավարտվի Արփա գետի ջրհոսքի տեղափոխումը Սևանա լիճ։ Արփա գետի ջրերը կհոսեն դեպի Սևանա լիճը և լճի մակարդակի իջեցումը լրիվ կդադարի։ Դա թույլ կտա էներգասիստեմների կարգավորման մեջ բարձրացնել Սևան—Հրազդան կասկադի հիդրոկայանների դերը։

Վառելանյութի տեղափոխման դժվարությունները և հիդրոէներգետիկ պաշարների սահմանափակ լինելը նպատակահարմար դարձրին նոր հնգամյակում Հայաստանում ատոմային էլեկտրակայանի կառուցումը։ Կայանի առաջին ռեակտորը կգործարկվի ընթացիկ հնգամյակում։ Ատոմային էլեկտրակայանում կտեղադրվեն երկու ռեակտոր և էլեկտրաէներգիայի տարեկան արտադրանքը կկազմի ավելի քան վեց միլիարդ կիլովատ-ժամ։ Էլեկտրաէներգիայի այդպիսի քանակի արտադրանքի համար ջերմային էլեկտրակայաններն ամեն օր պետք է ստանային 240 ցիստերն վառելու մազութ։ Եթե մինչև վերջերս ատոմային էլեկտրակայանների էլեկտրաէներգիան մի քանի անգամ թանկ էր ջերմային էլեկտրակայանների էլեկտրաէներգիայից, ապա այժմ վիճակը էապես փոխվել է։ Հայկական ատոմային էլեկտրակայանի էլեկտրաէներգիայի ինքնարժեքը կիջնի և նույնիսկ ավելի ցածր կլինի, քան գործող այն ջերմային էլեկտրակայաններինը, որոնք մազութով են աշխատում։

Կիրովական քաղաքի քիմիական արդյունաբերության աճող պահանջների ապահովման համար կազմվել է Կիրովականի ջերմաէլեկտրակայանի ընդարձակման նախագիծ, ըստ որի տեղադրվելու է 50 հազար կիլովատ հզորությամբ տուրբոագրեգատ։



Ավարտվում է Դեբետ գետի վրայի հիդրոկայանների կասկադի տեխնիկական նախագիծը։ Այդ կասկադի շինարարությունն սկսելու մեծ անհրաժեշտություն կա ինչպես հիդրոէներգիայի բաժնի մեծացման, այնպես էլ կարգավորող հնարավորություններով հիդրոկայանի գործադրման համար։ Մեր կարծիքով առաջին հիդրոէլեկտրակայանը նպատակահարմար է կառուցել Լոռի Բերդում (որը ոչ թունելային դերիվացիա և ուղիղ ու հակադարձ կարգավորման հնարավորություններ ունի)։ Նրա երկաստիճանի գումարային կարողությունը կհասնի 140 հազար կիլովատի։ Լոռի Բերդի հիդրոէլեկտրակայանի գործողության մեջ մտնելը էապես կմեղմացնի նաև էներգասպառման լարվածությունը Կիրովական—Ալավերդի հզոր հանգույցում։

Վերջին տարիներին երեկոյան զգալիորեն աճում է էլեկտրաէներգիայի պահանջը, բարձրանում նրա լարվածակետը։ Այժմ աշխարհում լայն տարածում են սկսում ստանալ հիդրոակումուլյացիոն հիդրոկայանները, գազատուրբինային սարքավորումները, ավիացիոն շարժիչներ օգտագործող սարքերը (որոնց շահագործման ժամկետները արդեն լրացել է)։ Նախնական ուսումնասիրությունը ցույց տվեց, որ Սևանա լճի ափին կարող են տեղադրվել մի շարք հիդրոկայաններ՝ ամեն մեկը 400 հազար կիլովատ հզորությամբ։ Գիշերը նրանք կաշխատեն նասոսային ռեժիմով՝ լճի ջուրը բարձրացնելով կառուցված ջրամբարները, իսկ ամենաշատ սպառման գիշերային ժամերին կաշխատեն հիդրոէլեկտրակայանների ռեժիմով և կօգնեն ապահովելու գիշերային մեծ ծանրաբեռնվածությունը։ Մեր կարծիքով 400 հազար կիլովատ կարողության թեկուզև մեկ հիդրոակումուլյացիոն հիդրոկայանի գործադրումը նկատելիորեն կթեթևացնի ինչպես հանրապետության էներգասիստեմի երեկոյան բեռի գագաթնակետը ծածկելու պայմանները, այնպես էլ կարող է օգնության հասնել Անդրկովկասյան միավորմանը։

Մենք նպատակահարմար ենք համարում դիրեկտիվների նախագծում մատնանշել նաև Դեբետ գետի վրա հիդրոէլեկտրակայանների կասկադի և հիդրոակումուլյացիոն հիդրոկայանների շինարարությունը։

Ընթացիկ հնգամյա պլանում ուշադրավ է էլեկտրաէներգիայի խնայման հարցը։ Հանրապետությունում մեծ աշխատանք է կատարվել էլեկտրաէներգիայի և ջերմաէներգիայի տնտեսման ասպարեզում։ Դիրեկտիվները նախատեսում են էլեկտրաէներգիայի ծախսի նորմաների իջեցում 7—10 տոկոսով։ Բավական է ասել, որ անցած հնգամյակի ընթացքում հանրապետության ձեռնարկություններում հաստատված տեսակարար նորմաների դիմաց տնտեսվել է 504 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և 330 գեկալորիա ջերմաէներգիա։ Այդ խնայողության մեջ հանրապետության շատ ձեռնարկություններ իրենց զգալի լուման են մտցրել։ Կիրովականի քիմիական կոմբինատում էներգիայի խնայողությունը հնգամյակի ընթացքում կազմել է մոտ 78 միլիոն կվտժ, Երևանի Կիրովի անվան քիմիական կոմբինատում՝ մոտ 30 միլիոն, պոլիվինիլացետատ գործարանում՝ 16 միլիոն, Ագարակի պղնձա-մոլիբդենային կոմբինատում՝ 15,6 միլիոն, Անդրկովկասյան երկաթգծի Երևանի բաժանմունքում՝ 27 միլիոն, Հայէլեկտրագործարանում 8 միլիոն կվտժ։

Ցավոք, անցած հնգամյակի ընթացքում մեր հանրապետության ոչ բոլոր արդյունաբերական ձեռնարկություններն են հավասարաչափ պայքարել էլեկտրական և ջերմային էներգիայի խնայողության համար։ Օրինակ. Քանաքեռի ալյումինի գործարանը 1969 թ. տվել է մոտավորապես 1,8 միլիոն, իսկ 1970 թ.՝ 12,5 միլիոն կվտժ էլեկտրաէներգիայի գերածախս։

Անցած հնգամյակի վերջին տարին էլեկտրաէներգիայի գերածախսով են փակել նաև Լենինականի «Ստրոմմաշինա», Հոկտեմբերյանի դազգահաշինական, Երևանի էլեկտրաշարժիչների գործարանները և այլն։

Դեռ գոյություն ունեն շատ և շատ ձեռնարկություններ, որոնց միավոր արտադրանքի վրա ծախսվող էլեկտրական էներգիայի տեսակարար նորմաները շատ բարձր են և հեռու են ռեալ լինելուց։ Դրանցից են Ղափանի պղնձա-հանքային կոմբինատը, Երևանի քիմիական ապրանքների, Երևանի ոսկերչական, Լենինականի հեծանիվի, Երևանի ֆրեզերային հաստոցների գոր-

ծարանները, Կիրովականի շինարարական իրերի կոմբինատը, Երևանի կերամիկական իրերի կոմբինատը, Հայկական ՍՍՀ անտառային և փայտամշակման մինիստրության մեծ թվով ձեռնարկություններ և այլն։

Մեր կարծիքով պետք է ձեռնարկություններում մշակել էլեկտրաէներգիայի ծախսման տեխնիկապես հիմնավորված նորմաներ, հաճախակի վերանայել միավոր արտադրանքի վրա ծախսված էլեկտրական էներգիայի տեսակարար նորմաները՝ այն իջեցնելու նպատակով։ Ժողովրդական տնտեսության մեջ պետք է կիրառել էլեկտրաէներգիայի խնայողության ռացիոնալ մեթոդները։

Իսկ ինչպե՞ս է սկսվում իններորդ հնգամյակը Հայաստանի էներգետիկայի համար։ Հնգամյակի առաջին տարում էլեկտրաէներգիայի արտադրության պլանը սահմանված է 7,41 միլիարդ կիլովատ-ժամ, դա 21,8 տոկոսով ավելի է անցյալ հնգամյակի վերջին տարում արտադրածից։ Հանրապետության էլեկտրակայանները կսկսեն սեփական էներգիայով բավարարել ժողովրդական տնտեսության պահանջը։

Էներգետիկայի մեջ կապիտալ ներդրումները սահմանված են, ութերորդ հնգամյակի վերջին տարվա համեմատությամբ, ըստ ծավալի, 12,1 տոկոս աճով և ըստ շինմոնտաժային աշխատանքների՝ 21,1 տոկոս աճով։

Նոր հնգամյակի առաջին տարում ատոմային էլեկտրակայանի շինարարությունը լայն թափ կստանա։

Կառուցվելու են 220 կիլովոլտ էլեկտրահաղորդման գծեր՝ Հրազդանից Կիրովական և Կիրովականից Ալավերդի. ընդամենը կկառուցվեն 294 կիլոմետր երկարությամբ էլեկտրահաղորդման գծեր՝ 35 կիլովատ և ավելի լարվածությամբ։ Նոր և ընդլայնվող ենթակայաններում գործադրվելու են 155 հազար կիլովոլտ-ամպեր տրանսֆորմատորային կարողություններ։ Շատ բան է արվելու գյուղական էլեկտրիֆիկացումը և կոմունալ էներգետիկան բարելավելու համար։

Իններորդ հնգամյակի արդեն իսկ առաջին տարում մեր հանրապետության էներգասիստեմն ըստ իր կարողության կանցնի երկումիլիոնանոց բնագիծը, իսկ այնուհետև, մինչև հնգամյակի վերջը՝ երեքմիլիոնանոց բնագիծը։ Հնգամյակի վերջին տարում էլեկտրաէներգիայի արտադրությունը կկազմի 10,3 միլիարդ կիլովատ-ժամ, 1970 թվականի մակարդակը գերազանցելով 4,22 միլիարդ կիլովատ-ժամով։ Բնորոշ է, որ նոր հնգամյակի վերջում է՛լ ավելի կմեծանա ջերմաէլեկտրակայանների տեսակարար կշիռը և կկազմի գրեթե 85 տոկոս։ Դա անհրաժեշտություն կառաջացնի փոխադրել համարյա 4,5 մլն տոննա վառելանյութ։

Նոր հնգամյակի առաջին տարվա ծրագիրը էներգետիկների կողմից հաջողությամբ կատարելու գրավականը ՍՄԿԿ XXIV համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության լայն թափն է, մրցություն, որ ընդգրկել է նաև Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի էներգետիկայի և էլեկտրիֆիկացման գլխավոր վարչության ձեռնարկությունների կոլեկտիվներին։

Ս. Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ
Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի գլխավոր վարչության պետ, տեխնիկական գիտությունների թեկնածու

# ԶԱՐԳԱՑՄԱՆ ԼԱՅՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանի դիրեկտիվների նախագծում հատուկ ուշադրություն է նվիրված գյուղատնտեսության վերելքին։ Եվ դա հասկանալի է։ Թե՛ ազգային եկամտի և թե՛ ժողովրդի կենսամակարդակի հետագա աճը շատ բանով կախված է ժողովրդական տնտեսության այդ կարևոր ճյուղի արդյունավետությունից։

Իններորդ հնգամյա պլանի նախագծով սահմանված է մեր հանրապետությունում պտղի և պահածոների արտադրանքն ավելացնել 1,6 անգամ։ Այդ միանգամայն ռեալ է, որը հիմնավորված է գիտականորեն։

Այդ խնդրի իրականացման գործում մեծ դեր պետք է խաղան գիտահետազոտական ինստիտուտները։ Մեր ինստիտուտը ձեռք է առնում բոլոր միջոցները, որպեսզի գիտությունը սերտորեն համագործակցի արտադրության հետ։ Այդ առումով, համագումարի դիրեկտիվների նախագծի լույսի տակ, որոշ հարցերի մասին ցանկանում ենք խոսել ավելի մանրամասնորեն։

Ներկայումս մի շարք երկրների պտղատու տնկարկներում լայն արտադրական նշանակություն է ձեռք բերել ցածրաճ ծառերով պտղաբուծությունը։ Ինչպես ցույց է տալիս մեր ինստիտուտի փորձը, նրա առավելությունը, սովորական տնկարկների համեմատությամբ, հանդիսանում է վաղ պտղաբերությունը՝ տնկման երրորդ-չորրորդ տարում։ Դրա շնորհիվ հնարավորություն է ստեղծվում մեկ հեկտար տարածության վրա տեղադրելու մեծ քանակությամբ՝ 600, 1200, 2400 ծառ։ Տնկման ութերորդ-իններորդ տարում մեկ հեկտարից ստացվում է 30—35 տոննա բարձրորակ պտուղ, իսկ որոշ գոտիներում՝ մինչև 70 տոննա և ավելի։

Կարևոր է նաև այն, որ ցածրաճ այգիներում բարձր է աշխատանքի արտադրողականությունը և պտղի որակը, իսկ բերքահավաքը արագ է կատարվում, քան սովորական տնկարկներում։

Ընթացիկ հնգամյակում այս ասպարեզում հետազոտական աշխատանքները կշարունակվեն, որպեսզի հանրապետության բնատնտեսական գոտիների պայմաններին համապատասխան պարզվեն այգիների ճիշտ տեղադրման հարցերը։ Սակայն արտադրության աշխատողների հետ մեկտեղ, մեր գլխավոր խնդիրը կլինի ցածրաճ պտղաբուծության լայն ճակատով ներդրումը կոլտնտեսային և սովխոզային արտադրության մեջ։

Հաշվի առնելով հարցի կարևորությունը, մեր ինստիտուտը, Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության այգեգործության գլխավոր վարչության օգնությամբ, ձեռնարկել է կոմպակտ, փոքր չափերի սաղարթ ունեցող ծառերի խիտ տնկարկների ստեղծման ուսումնասիրությունը, որոնք սննման փոքր մակերես են պահանջում և հարմար են մշակության համար։

Անցյալ տարի, չնայած միջակ մշակությանը և չորային պայմաններին, ինստիտուտի փորձարարական տնտեսության փորձադաշտում հեկտարից ծիրանի 150 ցենտներ բերք ստացվեց։ Այդ նույն հողամասի յուրաքանչյուր հեկտարից տնտեսությունն ամեն տարի ստանում է նաև դեղձի 60—65 ցենտներ լրացուցիչ բերք։ Փորձերը ցույց են տալիս, որ տնկման օպտիմալ խտության դեպքում, որն ապահովում է տարածության միավորի արդյունավետ օգտագործումը, կարելի է դեղձի տնկարկներից բարձր եկամուտ ստանալ, նույնիսկ նոր իրացվող քարքարոտ «զլռ» հողերում։ Սակայն, չնայած այս առավելու-

թյուններին, խտացված տնկարկները դեռևս դանդաղ են ներդրվում կոլտնտեսային և սովխոզային արտադրության մեջ։

Որպես պտղաբուծության ինտենսիվացմանը համապատասխանող միջոցառում, որը նշված է ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագծում, անհրաժեշտ է պտղաբուծական տնտեսություններում հնարավորին չափ արագորեն ներդնել խտացված տնկարկները։ Դա կնպաստի պտուղների և, հատկապես, ծիրանի ու դեղձի համախառն արտադրանքի ավելացմանը։

Կարևոր նշանակություն ունի պտղաբուծության ու խաղողագործության կոմպլեքսային մեքենայացման հարցը և, մասնավորապես, այգեթաղի ու այգեբացի մեքենայացումը։ Եթե խաղողի այգիների մեկ հեկտարի մշակության ընդհանուր ծախսերը միջին հաշվով տատանվում են 600—650 ռուբլու սահմաններում, ապա դրանից այգեթաղին և այգեբացին բաժին է ընկնում 232 ռուբլին կամ բոլոր ծախսերի 37 տոկոսը։ Բանն այն է, որ այդ աշխատանքները տնտեսություններում դեռևս մեքենայացված չեն և ամեն տարի մեր հանրապետությունում մոտավորապես 30 հազար հեկտար խաղողի այգիներ թաղվում և բացվում են ձեռքով։

Հաշվի առնելով այն, որ այդ աշխատանքները կատարվում են աշնանային-գարնանային ամենալարված ժամանակաշրջաններում, պարզ է դառնում դրանց անհետաձգելի մեքենայացման անհրաժեշտությունը։

ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի 1968 թ. մայիսի 17-ի որոշման համաձայն, հանձնարարվել է մեքենայացնել խաղողի այգիների թաղման և բացման աշխատատար պրոցեսները։ Այդ որոշման կատարումն ապահովելու համար ստեղծվել են խաղողի վազերի նոր՝ միակողմանի ձևավորումը և «МЛУ—2,5» այգեթաղի մեքենան։

Անցյալ տարի այս և այգեթաղի մի քանի այլ մեքենաներ փորձարկվեցին, որոնք դրական արդյունքներ տվեցին։ Ցավոք, այդ դեռևս չի կարելի ասել այգեբացի մեքենաների մասին, որոնք կատարելագործման կարիք են զգում։ Մեր կարծիքով ընթացիկ հնգամյակում այգեթաղի և այգեբացի մեքենայացման կատարելագործումը առավել կարևոր է։ Չէ՞ որ այն կնպաստի խաղողի արտադրության ավելացմանը, աշխատանքային ռեսուրսների արդյունավետ օգտագործմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը, որի մասին նշված է ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագծում։

Բազմամյա սելեկցիոն-գենետիկական հետազոտությունների շնորհիվ մեր ինստիտուտի սելեկցիոներների կողմից բացահայտվել են խաղողի ցրտադիմացկուն սորտեր ստանալու տեսական հիմունքները։ Դա հնարավորություն է տվել ստեղծելու ցրտադիմացկուն այնպիսի սորտ, որը դիմանում է մինչև —29° կրիտիկական ջերմաստիճաններին։ Վերամշակման և համի հատկություններով այդ սորտը չի զիջում, իսկ որոշ ցուցանիշներով գերազանցում է գոյություն ունեցող համանման ստանդարտ սորտերին։

Ինստիտուտը և հանրապետական շահագրգռված կազմակերպությունները, հաշվի առնելով տվյալ հարցի անչափ կարևորությունը, պետք է ձեռք առնեն բոլոր միջոցները, որպեսզի հնարավորին չափ կարճ ժամկետում բազմացվի այդ ցրտադիմացկուն սորտը և մեծ քանակությամբ տնկանյութ տրվի կոլտնտեսություններին ու սովխոզներին։

Ոչ հեռավոր անցյալում սննդամթերքների սննդարար արժեքը գնահատվում էր հիմնականում նրանց մեջ ածխաջրատների, սպիտակուցների և ճար-



պերի պարունակությամբ։ Սննդի վերաբերյալ ժամանակակից գիտության տեսանկյունով, նշված բաղադրիչ մասերին զուգընթաց առաջնակարգ նշանակություն ունի նաև բիոակտիվ նյութերի՝ անփոխարինելի ամինոթթուների, վիտամինների և միկրոտարրերի պարունակությունը, որոնց հիմնական աղբյուրն են խաղողը, պտուղները և բանջարեղենը։

Չնայած այն բանին, որ Հայաստանը հանդիսանում է համեմատաբար զարգացած պտղաբուծություն և խաղողագործություն ունեցող հանրապետություն, պտուղների և խաղողի տարեկան միջին օգտագործումը (մեկ մարդու հաշվով) մեզ մոտ դեռևս ետ է մնում առաջարկված ֆիզիոլոգիական նորմայից։ Դա բացատրվում է նրանով, որ բնակչությունը պտուղներով և խաղողով առատորեն ապահովվում է միայն չորսից-հինգ ամսվա ընթացքում։

Մեր ինստիտուտում տարված հետազոտությունների հիման վրա ընտրված են ավելի պահունակ սորտեր, պտուղների ու խաղողի սառնարանային պահպանման լավագույն ռեժիմներ։ Անհրաժեշտ է նշել, որ դրանք հաջողությամբ ներդրվել են հանրապետության 10 սովխոզներում։ Սակայն պտուղների և խաղողի հաջող պահպանման գծով կատարված աշխատանքը դեռևս ավարտված չէ։ Առայժմ դանդաղ է ընթանում պտղա-խաղողապահեստների շինարարությունը, իսկ օգտագործման հանձնված օբյեկտները չեն բավարարում տեխնիկական և տեխնոլոգիական պահանջներին, որի հետևանքով մթերքները վաղաժամ փչանում են։ Այժմ, երբ հարց է դրվում բնակչության աճող պահանջմունքները սննդամթերքներով լրիվ բավարարելու, ինչպես այդ ծրագրված է կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվների նախագծով, խաղողի և պտուղների արդյունաբերական պահպանումը կարևոր նշանակություն է ստանում և ավելի կոորդինացված մոտեցում է պահանջում ինչպես գիտա-հետազոտական աշխատանքների, այնպես էլ կոլտնտեսություններում ու սովխոզներում լայն ճակատով գործնականում կիրառելու համար։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագծում ասված է, որ անհրաժեշտ է մեծացնել գյուղատնտեսական մթերքներ վերամշակող բաժանմունքների կարողությունները կոլտնտեսություններում և սովխոզներում։ Ինչպես ցույց են տվել ուսումնասիրությունները, սովորաբար հավաքվող բերքի 30—40 տոկոսը ոչ տեսակային լինելու հետևանքով երկար չի պահպանվում։ Հարց է ծագում՝ ինչպե՞ս օգտագործել պահպանման ոչ պիտանի, իսկ վերամշակման համար պիտանի պտուղները։ 10—12 հազար տոննա պտուղներ և խաղող պահպանման դնելիս՝ ոչ տեսակային հումքը կկազմի 4—5 հազար տոննա։ Հույս ունենալ, թե տնտեսություններից այդ հումքը վերամշակման կընդունեն պետական և կոոպերատիվ ձեռնարկությունները, չի կարելի, որովհետև պլանի համաձայն ստացված ընտրովի հումքը տվյալ պահին հազիվ են մշակում։ Ստեղծված դրությունից դուրս գալու ամենաճիշտ պայմանը, մեր կարծիքով, կարող է լինել ուղղակի կոլտնտեսություններում և սովխոզներում պտուղների և խաղողի արդյունաբերական վերամշակման, այդ թվում շարժական վերամշակման կետ ունենալը, որը կարելի է հավաքել և գործարկել այգում կամ դաշտում։ Դրանց համար որպես հումք կլինեն նաև թափված պտուղները, որոնք ներկայումս տնտեսություններում փաստորեն չեն օգտագործվում։ Իբրև հումք կարելի է օգտագործել նաև բուսաբուծության այլ մթերքներ։ Նման բաժանմունքներում նպատակահարմար է կազմակերպել չորացում, սուլֆիտացում (հետագայում ջեմ և պավիդլո պատ-

րաստելու համար), արտադրել մրգային պյուրե, հյութեր, կոմպոտներ և այլ պահածոյացված մթերքներ։ Այդպիսի փոքր հզորությամբ բաժանմունք-գործարանների կազմակերպումը կնպաստի կորուստների կրճատմանը, եկամտաբերության և այգեգործության արդյունավետության բարձրացմանը։

Հայտնի է, որ ծիրանը և որոշ այլ պտուղներ ունեն միաժամանակյա հասունացում և բերքահավաքի շրջանում հարկ է լինում իրացնել մեծ քանակությամբ ծիրան։ Միջոցառումներ մշակելով պտուղների հասունացման, ինչպես նաև սորտերի ընտրության միջոցով բերքահավաքի ժամկետների երկարացման համար, մենք, այնուամենայնիվ, որոշակի անհամաչափության ենք հանդիպում ծիրանի ու դեղձի արտադրության և նրանց արդյունավետ օգտագործման միջև։ Այժմ ինստիտուտն իր առջև խնդիր է դրել, ծիրանի և այլ կուլտուրաների բերքահավաքի սեզոնայնությունը պահպանելով հանդերձ, լիկվիդացնել նրանց արդյունաբերական վերամշակման սեզոնայնությունը։ Եվ անցած հնգամյակի ավարտման սահմանագծում հաջողվեց դրական արդյունքով ավարտել պտուղների տևական սառեցման համար տարվող բազմամյա աշխատանքը։ Պարզվեց, որ սառեցված պտուղներից, նույնիսկ 8-ամսյա պահպանումից հետո, պատրաստված կոմպոտները, մուրաբաները և հյութերն իրենց որակով չեն զիջում թարմ պտուղներից պատրաստված համանման մթերքներին։ Ինստիտուտի այս առաջարկությունը ներդրված է Այրումի պահածոների գործարանում։ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագծի լույսի տակ մեր ինստիտուտի կողմից ավելի ծավալուն ծրագիր է մշակվում ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունեցող այդ խնդիրը ավելի բազմակողմանի ուսումնասիրելու և նոր հնգամյակում հանրապետության պահածոների գործարանների մեծ մասում անպայման լուծելու համար։

Մեր ինստիտուտի աշխատողները, որոնք անցած հնգամյակում որոշակի գործ են կատարել խաղողի և պտուղների տեսակա-սորտային շրջանացման, գինեգործական և պահածոների արդյունաբերության մասնագիտացման, հումքի վերամշակման եղանակների կատարելագործման ասպարեզում, բոլոր ջանքերը կգործադրեն, որպեսզի ընթացիկ հնգամյակում գիտահետազոտական աշխատանքների նոր արդյունքներով ավելի նպաստեն պտուղների, խաղողի և նրանցից վերամշակվող մթերքների զգալի չափով ավելացմանը։

Պ. Ռ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

Հայաստանի խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության գիտա-հետազոտական ինստիտուտի դիրեկտոր

## ՀԱՆՈՒՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ

Հնգամյակի գլխավոր խնդիրն է՝ ապահովել ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալի վերելքը սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության և աշխատանքի արտադրողականության աճի արագացման հիման վրա,— կարդում ենք ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագծում։

Այսպիսով, նոր հնգամյակում առաջնահերթ ուշադրություն կնվիրվի աշխատավորների բարեկեցության հետագա բարձրացմանը։ Այս կարևոր



հարցը միշտ մտահոգել է մեր կուսակցությանն ու կառավարությանը։ Այդ են վկայում ՍՄԿԿ համագումարների ու Կենտկոմի պլենումների որոշումները, որոնք խթանեցին լայն սպառման ապրանքների արտադրության արագ զարգացումը, ապահովեցին նրա աճման բարձր տեմպերը։ Այսպես, եթե հինգ տարում՝ 1961—1965 թթ. մեր արդյունաբերության «Ա» խմբի աճման տեմպերը մեկ ու կես անգամ գերազանցել են «Բ» խմբի աճման տեմպերին, իսկ ութերորդ հնգամյակում՝ ընդամենը 8 տոկոսով, ապա ընթացիկ՝ IX հնգամյակում արդեն, առաջին անգամ մեր սովետական էկոնոմիկայի պատմության մեջ, «Բ» խումբն իր տեմպերով 6,4 տոկոսով կգերազանցի «Ա» խմբին։

Այդ հնարավոր դարձավ արտադրամիջոցների արդյունաբերության բուռն զարգացման շնորհիվ և հավաստում է այն մեծ հոգատարությունը, որ ցուցաբերում են կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը ժողովրդի բարեկեցության նկատմամբ։

Դիրեկտիվների նախագծով կանխատեսվում են իրականացնել առողջապահության հետագա բարելավման, ժողովրդական կրթության ու սոցիալիստական մշակույթի բազմակողմանի զարգացումն ապահովող միջոցառումներ։

Անցած, հատկապես 8-րդ հնգամյակի տարիներին, երկրում զգալիորեն բարձրացել է ժողովրդի ընդհանուր կրթական ու կուլտուրական մակարդակը։ Երկրում կառուցվել են բազմամիլիոն տեղերով դպրոցներ ու մանկապարտեզներ, մեծ հաջողություններ են ձեռք բերվել բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության զարգացման բնագավառում։ Զգալիորեն բարելավվել է բնակչության բժշկական սպասարկումը, ընդարձակվել կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցը։ Հայկական ՍՍՀ-ում 1966—1970 թթ., ի հաշիվ կապիտալ ներդրումների, կառուցվել են հանրակրթական դպրոցներ՝ 143,1 հազար, նախադպրոցական հիմնարկություններ՝ 21,6 հազար տեղով։

Մեր հանրապետությունը Միության մեջ առաջիններից է, որ հաջողությամբ իրագործում է անցումը երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթության։ 1970 թ. ԲՈՒՀ-երն ու տեխնիկումներն են ընդունվել ավելի քան 23 հազար մարդ, իսկ մասնագետ շրջանավարտների թիվը հասել է 16 հազարի։ Գալիք հնգամյակում նախատեսվում է, միայն ի հաշիվ պետական կապիտալ ներդրումների, կառուցել ավելի քան 160 հազար տեղանոց դպրոցներ, իսկ մանկապարտեզներում տեղերի թիվն ավելացնել 1,5 անգամ։

Զգալիորեն կմեծանա բուհերում ու տեխնիկումներում սովորողների թիվը։ Նախատեսվում է բուհերի ու տեխնիկումների, այդ թվում՝ Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի, պետական համալսարանի և ուսումնական այլ հաստատությունների կորպուսների կառուցման մեծ ծրագիր։

Ակնբախ են բարեփոխություններն առողջապահության բնագավառում. ավելացել է մահճակալների թիվը։ Հիվանդանոցներում այն անցել է 22 հազարից, ընդ որում, 1970 թ. Երևանում շահագործման է հանձնվել հանրապետական խոշոր նոր հիվանդանոցը՝ 900 մահճակալով։ Այս հնգամյակում նախատեսվում է նոր հիվանդանոցների շինարարություն. Երևանում կկառուցվեն ուռուցքաբանական դիսպանսերի խոշոր՝ 1000 մահճակալանոց կլինիկական, 520 մահճակալանոց վերականգնիչ-բուժիչ հիվանդանոցները, 200—300 տեղանոց հիվանդանոցներ, պոլիկլինիկաներ՝ շրջկենտրոններում և հանրապետական ենթակայության քաղաքներում, կհիմնվեն նորանոր առողջարաններ և այլն։

Հնգամյա պլանով նախատեսվում է տասնյակ ակումբների, կուլտուրայի տների, սպորտկառույցների շինարարություն։ Շահագործման կհանձնվեն մի շարք կինոթատրոններ, ինչպես և լայն, երկդահլիճ, 2.600 տեղանոց կինոթատրոնը Երևանում։

Հնգամյակում մեծ զարկ կտրվի գիտատեխնիկական առաջընթացին, ֆունդամենտալ և կիրառական գիտական հետազոտությունների համակողմանի զարգացմանը, դրանց արդյունքների արագ ներդրմանը ժողովրդական տնտեսության մեջ։ Ընդ որում, նախատեսվում է գիտական հիմնարկությունների աշխատանքի արդյունավետության որոշակի բարձրացում, գիտության էական ճյուղերի և գիտատեխնիկական ուշագրավ պրոբլեմների լուծման համար ուժերի ու միջոցների առավել կենտրոնացում, գիտական հետազոտությունների և փորձնական-կոնստրուկտորական աշխատանքների պլանավորման հետագա բարելավում։

Դիրեկտիվներում կանխատեսվում է նաև կառավարման ու պլանավորման հետագա կատարելագործում՝ մաթեմատիկական մեթոդների և էլեկտրոնային հաշվիչ մեքենաների լայն կիրառմամբ։ Այդ կապակցությամբ պետք է նշել, որ մեծ ու պատասխանատու խնդիրներ են դրված Հայկական ՍՍՀ գիտնականների, ինժեներների ու տեխնիկների առաջ։ Դրանց լուծման համար անհրաժեշտ է արմատապես բարելավել ավարտված գիտահետազոտական աշխատանքների, նոր տեխնիկայի ներդրումը հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ։

Հայաստանում անցած հնգամյակի տարիներին որոշակի հաջողություններ են ձեռք բերվել այդ բնագավառում. զգալի չափով բարձրացել է արտադրության տեխնիկական մակարդակը, նաև տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման ու մեքենայացման աստիճանը։ Ակներև են մի շարք գիտական հիմնարկությունների հասումները էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, դեղամիջոցների, հաստոցների, էլեկտրասարքավորումների, քիմիական արտադրության տեխնոլոգիայի մշակման ասպարեզում։

Այս հնգամյակում նորանոր խնդիրներ են դրված հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ հաշվիչ տեխնիկայի ներդրման, հաշվիչ կենտրոնների և կառավարման ավտոմատ համակարգերի ստեղծման բնագավառում։ Այսպես, նման համակարգեր կստեղծվեն գյուղատնտեսության, առողջապահության ու կապի մարզերում։ Պլանավորումը և հանրապետության էկոնոմիկայի կառավարումը կատարելագործելու նպատակով այս տարի արդեն ստեղծվել է պետպլանի հաշվիչ կենտրոնը և մինչև 1975 թ. կմշակվի ու կներդրվի դրա պլանային հաշվումների ավտոմատ համակարգը։

Զգալիորեն ամրապնդվել է գիտական ձեռնարկությունների փորձարարական բազան։

Հետազոտությունների արդյունավետության բարձրացմանը, անշուշտ, կնպաստի գիտական հիմնարկությունների և դրանց փորձարարական բազաների ընդլայնումը։ Այսպես, միայն հանրապետության գիտությունների ակադեմիայի 1971—1975 թթ. կապիտալ ներդրումները կազմում են 23,5 մլն ռուբլի, որը մոտ մեկ ու կես անգամ ավելի է անցած հնգամյակից։

Կուսակցությունն ու կառավարությունն ստեղծում են բոլոր պայմանները գիտական հետազոտությունների հաջող զարգացման համար՝ որոնումներից մինչև արտադրության մեջ ներդնելը։ Հանրապետության գիտնականների և ինժեներա-տեխնիկական աշխատողների պատվի գործն է՝ հաջողությամբ



կատարել ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագծով կանխատեսված առաջադրանքները, ապահովել հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական առաջընթացի բարձր տեմպերը։

ՅՈՒ. Ե. ԽՈՋԱՄԻՐՅԱՆ
Հայկ. ՍՍՀ պետպլանի նախագահի տեղակալ

## ԵՐԿՈՒ ՑԱՆԿՈՒԹՅՈՒՆ

Ուշադրությամբ ուսումնասիրելով ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագիծը, մեր՝ սովետական մարդկանց սրտերը լցվում են օրինական հպարտությամբ, բոլորս համակվում ենք բերկրանքով, վաղվա առավել լավ օրը տեսնելու բուռն ցանկությամբ։ Եվ այդ բնական է, որովհետև կուսակցության՝ գիտականորեն հիմնավորված նախագծումների համաձայն ՍՍՀՄ ժողովրդական տնտեսությունն ընթացիկ հնգամյակում ևս կզարգանա բուռն թափով, դրա հիման վրա զգալի չափով կբարձրանա բնակչության կենսամակարդակը և մեր երկիրը խոշոր առաջընթաց կկատարի կոմունիզմի կառուցման ճանապարհին։

Լիովին հավանություն տալով ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագծին, ժողովրդական կրթությանը վերաբերող խնդրի առթիվ հայտնում եմ իմ ցանկությունները։

Դիրեկտիվների նախագծի՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հիմնական խնդիրները բաժնում ասված է. «Հետևողականորեն բարձրացնել աշխատողների կրթական ու որակավորման մակարդակը, ավարտել անցումը երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթության»։

Հնգամյակում ընդհանուր միջնակարգ կրթության իրագործումը միանգամայն ռեալ խնդիր է, որի լուծման համար առկա են բոլոր հնարավորությունները։ Բայց, մեր կարծիքով, դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է լուծել նաև մի այլ, թերևս ոչ պակաս կարևոր խնդիր։ Դա հանրակրթական դպրոցների՝ մեկհերթ պարապմունքների անցնելն է։ Բոլորին հայտնի է, թե ինչպիսի էական նշանակություն ունի այն ուսման որակի բարձրացման, դպրոցականների դաստիարակության համար։ Ուստի, այս առիթով առաջարկում ենք՝ ընդհանուր միջնակարգ կրթության իրականացման, ուսումնա-դաստիարակչական պրոցեսի կատարելագործման ու զարգացման, ուսման որակի բարձրացման նպատակով գործադրվող այլ միջոցառումների հետ մեկտեղ, ընդհանուր հանրակրթական դպրոցներում ամենուր դասերն անցկացնել մեկհերթի։

Դրա համար, իհարկե, ամենից առաջ անհրաժեշտ են դպրոցական շենքեր։ Դիրեկտիվների նախագծում դպրոցական նոր շենքերի կառուցման մասին ասված է. «Պետական կապիտալ ներդրումների հաշվին կառուցել հանրակրթական դպրոցներ առնվազն 6 միլիոն տեղով...»։ Սա մեծ կանխագծում է։ Բայց, որպեսզի մեր ցանկությունն իրագործվի, առաջարկում ենք դիրեկտիվների նախագծում ավելացնել հետևյալը.

Հնգամյակի ընթացքում հանրակրթական դպրոցները փոխադրել մեկհերթյա պարապմունքների։ Դրա համար, մյուս միջոցառումների իրագործման հետ միասին, պետական կապիտալ ներդրումների հաշվին, ինչպես նաև կոլտն-

տեսությունների և մյուս կազմակերպությունների միջոցներով, լրացնել դըպրոցական շենքերի պակասը։

Եթե նախորդ հնգամյակներում, հասկանալի պատճառներով (գլխավորապես անհրաժեշտ միջոցներ ու կադրեր չունենալու) մենք այդ հարցը դնել չէինք կարող, ապա այժմ՝ 9-րդ հնգամյակում, կարող ենք՝ ելնելով երկրի հնարավորություններից, ժամանակակից էտապում տվյալ հարցի հրատապությունից։ Պետք է նկատի ունենալ, որ լայնորեն ծավալվող գիտատեխնիկական հեղափոխությունը, սոցիալիստական հասարակության բուռն զարգացումը, արտադրության ու դրա վարման բարդացումը դպրոցի առջև նույնպես դրել են պատասխանատու նոր խնդիրներ, որոնց լուծման համար հարկավոր է դիմել առավել արդյունավետ ձևերի ու մեթոդների, ավելի ամրապնդել դպրոցների նյութա-տեխնիկական բազան, կատարելագործել ուսումնա-դաստիարակչական պրոցեսը։

Դիրեկտիվների նախագծում այնուհետև ասված է. «...զգալիորեն ընդարձակել գյուղի աշակերտների համար դպրոցամերձ գիշերօթիկ դպրոցների ցանցը»։ Լավ է ասված. ներկա ժամանակաշրջանում այդ շատ կարևոր է գյուղի համար։ Քաղաքում ևս գիշերօթիկ դպրոցների ցանցն ընդարձակվում է ու այդ մասին ևս դիրեկտիվների նախագծում պետք է ասվի։

Հայտնի է, որ մեզ մոտ բոլոր բնագավառներում կանայք տղամարդկանց համահավասար աշխատանք են կատարում։ Սակայն նրանց որոշ մասը լուրջ դժվարություններ է կրում։ Ո՞ւմ խնամքին թողնել դասերից տուն դարձած երեխաներին։ Ո՞վ պետք է հսկի, խնամի ու կերակրի, ասենք, I—IV, թեկուզ և դրանից բարձր դասարանների աշակերտներին։ Սա անչափ մտահոգող հարց է, որը ներկայումս տարբեր ընտանիքներում տարբեր ձևով է լուծվում, ձևեր, որոնք մեծ մասամբ չեն համապատասխանում մանկավարժության պահանջներին։

Շոշափվող հարցի լուծման համար մեծ է երկարօրյա դպրոցների դերը, որոնց, հատկապես վերջին տարիներս, առանձնակի ուշադրություն է նվիրվում։ Երկարօրյա դպրոցներ հաճախող երեխաների ծնողներն աշխատում են հանգիստ, առավել արտադրողաբար, քաջ իմանալով, որ երեխաները դասերից հետո նորմալ սնվում են, հանգստանում, խաղում, մանկավարժների օգնությամբ դասերը սովորում։

Պատանեկության ուսման ու դաստիարակության գործում երկարօրյա դպրոցները կարևոր միջոց են և ունեն զարգացման լայն հեռանկար։ Չնայած այդպիսի դպրոցների ստեղծման բնագավառում մեզ մոտ որոշակի գործ է կատարված, բայց այն դեռևս անբավարար է։ Ահա թե ինչու, մեր կարծիքով, հարկավոր է նոր հնգամյակում առավել մեծ չափով ընդլայնել նաև երկարօրյա դպրոցների ցանցը. այդ մասին նույնպես հարկ է նշել ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում։

Նոր հնգամյակում հանրակրթական դպրոցների պարապմունքները մեկհերթ դարձնելու, գիշերօթիկ և երկարօրյա դպրոցների ցանցն առավել ընդարձակելու և դրանց վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագծում նշելու մասին մեր ցանկությունները, կարծում ենք, հաշվի կառնըվեն։

Հ. Ա. ՆԱԶԱՐՅԱՆ
Հայկական ՍՍՀ վաստակավոր ուսուցչուհի



# ԿՈՄՈՒՆԱՐՆԵՐՆ ԱՆՄԱՀ ԵՆ

*(Փարիզի կոմունայի 100-ամյակի առթիվ)*

Լ. Ա. ԲԱՅՐԱՄՅԱՆ

«Կոմունայի գործը, այդ սոցիալական հեղափոխության գործն է, աշխատավորների լիակատար քաղաքական ու տնտեսական ազատագրման գործն է, այդ համաշխարհային պրոլետարիատի գործն է: Եվ այս իմաստով այն անմահ է»:

Վ. Ի. ԼԵՆԻՆ

Փարիզի կոմունան աշխատավոր մարդկության սոցիալական մաքառումների տարեգրության ամենապանծալի էջերից է, Հոկտեմբերյան հեղափոխության նախատիպարը: Մարքսիզմի կլասիկները, կոմունիստական ու բանվորական կուսակցությունները բարձր են գնահատել Փարիզի կոմունայի պատմական փորձը, հեղափոխական ավանդույթները: Կոմունան հին աշխարհին ուղղված առաջին համազարկն էր, որի որոտները արձագանք գտան մոլորակի բոլոր աշխարհամասերում:

Կոմունան պրոլետարիատի դիկտատուրայի ստեղծման առաջին փորձն էր, պրոլետարիատի ազատագրական պայքարի նոր փուլը: Մարտնչելով ներքին և արտաքին թշնամիների դեմ, կոմունարները սրբազան պատերազմ հայտարարեցին կապիտալի տիրապետությանը և անմիջապես ձեռնամուխ եղան նոր ապրելակերպի հաստատման դժվարին գործին:

Գազազած բուրժուազիան ճգնում էր վարկաբեկել կոմունարներին, հայտարարում էր, թե, իբր, նրանք ի վիճակի չեն կառավարել:

Կոմունայի կազմում, իհարկե, դիպլոմավոր քաղաքագետներ չկային. նրանք բանվորներ էին, մանր ծառայողներ, մտավորականության ներկայացուցիչներ, որոնք անսահման նվիրված էին աշխատավորությանը, ճանաչված ու սիրված էին ժողովրդի կողմից, հեռու էին բուրժուական պաշտոնյաների անմարդկային բարքերից, կեղծ ու շինծու հարաբերություններից:

Չտիրապետելով հասարակության զարգացման գիտական ուսմունքին, կոմունարները գործում էին տարերայնորեն, համարձակ, ունկնդրում մաս-

սաներին, հնարամտորեն և հեղափոխական բնազդով կառավարում ալեկոծվող տարերքը:

Կոմունան ֆրանսիական ժողովրդի ազատասիրական նկրտումների մարմնացումն էր, իսկ նրա սոցիալ-տնտեսական միջոցառումները՝ աշխատավորական մասսաների երազանքների արտահայտությունը: Ժողովուրդը Կոմունայի հզորության աղբյուրն էր, գործունեության ոգեշնչողը: «Նրա իսկական գաղտնիքն այն էր, որ նա ըստ էության *բանվոր դասակարգի կառավարությունն էր*... այն վերջապես հայտնագործված քաղաքական ձևը, որի ժամանակ կարող էր իրականանալ աշխատավորների տնտեսական ազատագրությունը» (Կ. Մարքս, *Քաղաքացիական պատերազմը Ֆրանսիայում*, *Երևան*, 1940, էջ 91):

Կոմունան իր էությամբ ու նպատակներով և՛ ազգային էր, և՛ միջազգային: Նրա դրոշը համաշխարհային սոցիալիստական հանրապետության դրոշն էր:

Սոցիալական հեղափոխության առաջամարտիկ-կոմունարները ջախջախեցին բուրժուական ռազմա-բյուրոկրատական պետական մեքենան և այն փոխարինեցին իշխանության դեմոկրատական օրգաններով: Բուրժուազիայի տիրապետության հենարանը՝ մշտական բանակը, ոստիկանությունը և չինովնիկությունը փոխարինվեցին զինված ժողովրդով, աշխատավորների ներկայացուցիչներով: Կոմունան նման չէր պառլամենտական հիմնարկության, այն «միաժամանակ թե՛ գործադիր և թե՛ օրենսդիր իշխանություն» էր (նույն տեղը, էջ 84): Կոմունայի գոյությունը ժխտում էր ինչպես Լուի Նապոլեոնի կայսրության գոյությունը, որի «ծննդյան վկայականը պետական հեղաշրջումն էր, սանկցիան՝ ընդհանուր ընտրական իրավունքը և գավազանը՝ սուրը» (նույն տեղը՝ էջ 8), այնպես էլ բուրժուական հանրապետության անհրաժեշտությունը, որի քաղաքականության անկյունաքարը աշխատանքի ստրկացումն էր:

Կոմունան, ելնելով աշխատավորության շահերից, խախտեց բուրժուական հասարակարգի կողմից սրբազան ու անձեռնմխելի հայտարարված մասնավոր սեփականության պահպանման սկզբունքը և դեկրետով բնակչությանն ազատեց բնակարանավարձի պարտքից, բուրժուազիայի լքյալ տները հատկացրեց դպրոցներին, մանկապարտեզներին, հոսպիտալներին և պատերազմից տուժած աշխատավորներին: Լոմբարդներում գրավ դրված գույքը վերադարձվեց աղքատներին, նորաստեղծ պետական ապարատում բարձրաստիճան ծառայողների աշխատավարձը սահմանվեց որակյալ բանվորի միջին աշխատավարձի չափով:

Կոմունայի համար կարևոր նշանակություն ուներ բուրժուազիայի լքյալ ձեռնարկությունների գրավման և այնտեղ բանվորական կոոպերատիվ միությունների միջոցով աշխատանքի կազմակերպման դեկրետի ընդունումը, որն արտադրամիջոցների հանրայնացման առաջին քայլն էր: Բանվորական անդրանիկ կառավարությունը ջախջախիչ հարված հասցրեց ռեակցիոն կղերականությանը, եկեղեցին անջատեց պետությունից, դպրոցը՝ եկեղեցուց և վերացրեց պաշտամունքի բյուջեն: Կոմունան մտցրեց ձրի, պարտադիր մասնագիտական կրթության սիստեմ, հաստատեց դաստիարակության նոր սկզբունքներ՝ տոգորված վեհ գաղափարներով:

Արժանահիշատակ էին նաև 8-ժամյա աշխատանքային օրվա սահմանման, բանվորներին կամայականորեն տուգանելու ձեռնարկատերերի իրա-



վունքի վերացման, հացթուխների գիշերային աշխատանքի արգելման դեկրետները: Կոմունայի անդամ Լեո Ֆրանկելը, պատասխանելով դեկրետների դեմ առարկողներին, ասում էր. չպետք է մոռանալ, որ մարտի 18-ի հեղափոխությունը կատարել է պրոլետարիատը, և եթե իրենք ոչ մի բան չանեն բանվորների շահերը պաշտպանելու համար, ապա Կոմունայի գոյությունը աննպատակ է: Իրենց մանդատներ են տվել, որպեսզի հօգուտ աշխատավորության անցկացնեն սոցիալական միջոցառումներ և ուշադրություն չդարձնեն բուրժուազիայի բողոքի վրա: Մի՞թե բուրժուազիան ժամանակին հարցնում էր ազնվականների կարծիքը:

Կանանց հարցում Կոմունան առաջադիմական ձեռնարկումներ իրականացրեց: Նա առաջ քաշեց մոր և մանկան պաշտպանության հարցը, բարելավեց նրանց նյութական դրությունը և իրավական վիճակը: Աշխատավորուհիները հասկացան, որ իրենց իսկական շահերի պաշտպանությունը կապված է հեղափոխության հաղթանակի հետ և բացառիկ ակտիվությամբ մասնակցեցին Կոմունայի դեկրետների իրագործմանն ու պաշտպանությանը:

«Կոմունայի ժամանակ,— 1916 թ. գրել է Վ. Ի. Լենինը,— կանայք և 13 տարեկանից բարձր երեխաները կռվում էին տղամարդկանց կողքին: Այլ կերպ չի կարող լինել նաև բուրժուազիայի տապալման համար մղվելիք առաջիկա կռիվների ժամանակ: Պրոլետարական կանայք պասիվ չեն նայելու, թե ինչպես լավ զինված բուրժուազիան պետք է գնդակահարի վատ զինված կամ անզեն բանվորներին: Նրանք զենքի կդիմեն ինչպես 1871 թվականին» (Երկեր, հ. 23, էջ 99):

Բանվորական կոմունային խորթ էին միլիտարիզմն ու բռնակալությունը: Կոմունան ոչնչացրեց նրանց խորհրդանիշ հանդիսացող հուշարձանները, ինչպես և Նապոլեոն 1-ի արձանը, որը ֆրանսիական խոշոր բուրժուազիայի բարբարոսության, միլիտարիզմի ու դեսպոտիզմի ջատագովման սիմվոլն էր: Կոմունան որոշեց քանդած հուշասյան փոխարեն կառուցել կոմունար-ազգային գվարդիականներին փառաբանող հուշարձան, իսկ ապագայում՝ գիտության, աշխատանքին և ազատությանը նվիրված կոթողներ: Կոմունայի թերթերը գրում էին, որ Նապոլեոնի հուշարձանի քանդելը ճիշտ է, քանի որ նապոլեոնյան պատերազմներում զոհվեց 4 մլն մարդ և ծախսվեց 17 մլրդ ֆրանկ: Մի՞թե փառքը նվաճողական պատերազմների մեջ է և ոչ խաղաղության ու համերաշխության, անկախ նրանից, թե մարդիկ ապրում են Աֆրիկայի աստղազարդ կապույտ երկնքի տակ, թե ձյունապատ Ռուսաստանում: Ապա նրանք նշում էին, որ հուշարձանի քանդելը ճիշտ է նաև ազգային ու միջազգային առումով: Ժողովուրդները եղբայրներ են, պետք է նրանց մեջ ստեղծել սուրբ դաշինք: Կոմունայի այդ դեկրետը մարմնավորում էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության վեհ գաղափարները: Այն բխում էր աշխատավորների սրտից ու հոգուց և արտահայտում էր ժողովուրդների ազատության ու խաղաղության ձգտման դարավոր երազանքը:

Կոմունայի սոցիալ-տնտեսական միջոցառումները նպատակ ունեին աշխատանքն ազատագրել կապիտալի տնտեսական ու քաղաքական ստրկացումից և ստեղծել մարդկանց համար արդար վաստակով ապրելու պայմաններ: Փարիզցիներն ամբողջ հոգով նվիրված էին Կոմունային: «Աշխատավորական Փարիզը,— գրել է Կ. Մարքսը,— գտնվում էր իր պատմական նախաձեռնության գիտակցության շողշողուն ոգևորության մեջ» (*Քաղաքացիական պատերազմը Ֆրանսիայում*, էջ 101):

Փարիզի պրոլետարիատի հաղթանակի ամրապնդման համար չափազանց կարևոր նշանակություն ուներ գյուղացիության դիրքը: Չի կարելի ասել, որ կոմունարները բոլորովին չէին հասկանում գյուղացիության հետ դաշինքի նշանակությունը: Այդ երևում է Անդրե Լեոյի գրած երկու թռուցիկներից, որոնք Կոմունան օդապարիկով տարածեց գյուղական շրջաններում: Գյուղացիությանն ուղղված կոչերում մասնավորապես ասվում էր. եղբայրներ ձեզ խաբում են, բանվորի ու գյուղացու շահերը մեկ են: Պրոլետարիատի ազատությունը կլինի նաև գյուղացիության ազատությունը. տարբերություն չկա՝ շահագործողը գործարանատեր է, թե կալվածատեր: Կոմունան ցանկանում է գյուղացուն ազատել հիպոտեկային պարտքից, «արյան հարկից» (մշտական զորահավաքներից), ստեղծել էժան կառավարություն, փոխել աշխատավորների արյունը ծծող պաշտոնյա-վամպիրներին, «Փարիզը ցանկանում է հողը հանձնել գյուղացուն, աշխատանքի գործիքները՝ բանվորին», որպեսզի բոլորն աշխատանք ունենան և իրենց արդար վաստակը վայելեն: «Կոմունան,— նկատել է Մարքսը,— լիակատար իրավունք ուներ, երբ նա հայտարարում էր գյուղացիներին. «Մեր հաղթությունը ձեր միակ հույսն է» (նույն տեղը, էջ 94):

Սակայն Փարիզի պաշարման, Կոմունայի հասցեին բուրժուազիայի ու կղերականության տարածած զրպարտանքի պատճառով գյուղացիությունը հնարավորություն չունեցավ իմանալ Կոմունայի իսկական բնույթն ու նպատակները, որի պատճառով վերջինս ապակողմնորոշվեց և չօգնեց կոմունարներին: Փարիզի մեկուսացումը ողջ Ֆրանսիայից ու գյուղացիությունից Կոմունայի ողբերգությունն էր ու նրա անկման պատճառներից մեկը:

Հայտնի է, որ առաջին ինտերնացիոնալի Գլխավոր խորհուրդը, ելնելով պատմական իրադրությունից, ֆրանսիական պրոլետարիատին խորհուրդ չտրվեց ապստամբել. բայց երբ մարտի 18-ին բռնկեց հեղափոխությունը, Կ. Մարքսը ողջունեց Փարիզի բանվորների պատմական այդ մեծ նախաձեռնությունը, անձնվիրությունը, ձեռներեցությունը, աննախադեպ հերոսությունը: «Խելահեղ քաջ» փարիզեցիները, ասում էր նա, պատրաստ են երկինքը գրոհի ենթարկելու» (նույն տեղը, էջ 138): Կ. Մարքսը, հնարավորության սահմաններում, կոմունարներին բազմակողմանի օգնություն կազմակերպեց և միաժամանակ մերկացրեց քաղաքացիական պատերազմ հրահրած գանան հրեշ Թիերի և «Ստոր վարձկան մարդասպան» Բիսմարկի նենգ գործարքը Կոմունայի դեմ (նույն տեղը, էջ 124): Կ. Մարքսը,— գրել է Վ. Ի. Լենինը,— իրեն հատուկ ամբողջ խանդով ու կրքով ապրեց «երկինք գրոհող» Փարիզի հեղափոխական պրոլետարիատի գործով, նրան «...վերաբերվում էր որպես գործնական խորհրդատու, որպես մասնակից մասսաների *պայքարի*, որոնք *ամբողջ* շարժումը հասցնում էին *ամենաբարձր աստիճանի*» (Երկեր, հ. 12, էջ 122): Կոմունայի պարտությունից հետո ինտերնացիոնալի Գլխավոր խորհուրդը հպարտությամբ իր վրա վերցրեց Կոմունայի անմահ գործի և խիզախ կոմունարների պաշտպանությունը, թեև Կոմունան ստեղծվել էր տարերայնորեն և ինտերնացիոնալը մատը մատի չէր խփել նրան կյանքի կոչելու համար (տե՛ս Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, էջ 615):

Կոմունայի պարտության պատճառներից էին նաև այն սխալները, որոնք թույլ տվեց ազգային գվարդիայի Կենտկոմի կառավարությունը. Կենտկոմը մարտի 18-ին չհետապնդեց Վերսալ փախած, պարտված Թիերի բուրժուական կառավարությանը և չջախջախեց նրան իր որջում: Հանդես բերեց ավելորդ «բարեհոգություն», չցանկանալով քաղաքացիական կռիվներ սկսել: Սխալն



այն սկսեց բուրժուազիան, երբ փորձեց զինաթափել Փարիզի ազգային գվարդիան՝ հեղափոխական պրոլետարիատին: Կենտկոմը սխալվեց նաև, երբ շուտ վայր դրեց իր լիազորությունները և թանկարժեք ժամանակը վատնեց Կոմունայի ընտրությունների վրա:

Կենտկոմի և Կոմունայի անդամները կառչեցին նախապաշարմունքներին և չգրավեցին ֆրանսիական բանկը, որի գրավումն ինչպես տնտեսական, այնպես էլ քաղաքական մեծ նշանակություն ուներ: «Բանկը,— գրել է Ֆ. Էնգելսը,— Կոմունայի ձեռքերում ավելի մեծ նշանակություն կունենար, քան տասը հազար պատանդ» (Կ. Մարքսի *Քաղաքացիական պատերազմը Ֆրանսիայում* աշխատության ներածականը, էջ 22): Կոմունայի պարտությունն ուներ և այլ պատճառներ: Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար Ֆրանսիայում դեռևս չէին հասունացել պայմանները: Ինչպես նշել է Վ. Ի. Լենինը «Հարկավոր է, գոնե երկու պայմանների առկայություն— արտադրողական ուժերի բարձր զարգացում և պրոլետարիատի նախապատրաստվածություն», մինչդեռ Ֆրանսիան առավելապես մանրբուրժուական երկիր էր, և ֆրանսիական պրոլետարիատը չուներ մարքսիստական թեորիայով զինված իր կուսակցությունը: Նրա առաջնորդներն էին մանրբուրժուական սոցիալիստներ պրուդոնիստներն ու բլանկիստները: Այնտեղ մարքսիստների թիվը շատ քիչ էր:

Կոմունան, չնայած չհասավ նպատակին, բայց պրոլետարիատի հեղափոխական պայքարը մի քայլ առաջ մղեց, «...գործնական մի քայլ,— գրել է Վ. Ի. Լենինը,— որն ավելի կարևոր էր, քան հարյուրավոր ծրագրեր ու դատողություններ» (Երկեր, հ. 25, էջ 534): Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները վերլուծեցին Կոմունայի փորձը, նշեցին նրա սխալներն ու դասերը: Կոմունան խոշոր դեր խաղաց սոցիալիզմն ուտոպիայից գիտության վերածելու և այն իրականացնելու գործում:

Կոմունան իրագործեց պրոլետարական դեմոկրատիան, բուրժուական պետական մեքենայի ջախջախման ասպարեզում նա կատարեց «առաջին համաշխարհային-պատմական քայլը: Սովետական իշխանությունը— երկրորդը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 607):

Կոմունան ցույց տվեց, թե ինչպես պրոլետարիատը անարդարացի պատերազմը կարող է վերածել քաղաքացիական պատերազմի և գրավել իշխանությունը, և թե ինչպես պետք է կոնկրետ դնել սոցիալիստական հեղափոխության հարցերը: Կոմունայի փորձն ապացուցեց, որ առանց գյուղացիության հետ դաշինքի, առանց միջին խավերի համակրանքի ու օգնության անհաստատ է դեմոկրատիան և անհնար են սոցիալական վերափոխությունները:

Կոմունայի կողմից նվաճողական պատերազմների դատապարտումը, հավատարմությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, դարձան ողջ աշխատավորության հեղափոխական ավանդույթը: «Կոմունային,— գրում է Ֆ. Էնգելսը,— պատմական վեհություն տվեց նրա վերին աստիճանի ինտերնացիոնալ բնույթը»:

Կոմունայի փորձով պրոլետարիատը համոզվեց, որ առանց մարքսիստական տեսությամբ զինված կարգապահ կուսակցության անհնար է ստեղծել ուժեղ դիկտատուրա և իրագործել աշխատավորության ազատագրումը: Կոմունան ցույց տվեց Պրուդոնի, Բլանկիի և Բակունինի մանրբուրժուական սոցիալիստական ուսմունքների սնանկությունը: «Կոմունան,— գրել է Ֆ. Էնգելսը,— սոցիալիզմի պրուդոնյան դպրոցի գերեզմանն էր»:

Կոմունարների դաժան ջարդը արյան գետի նման պրոլետարիատին բաժանեց բուրժուազիայից: Պրոլետարիատի ազատագրական պայքարը կոմունարների պայքարի շնորհիվ մտավ նոր փուլ, «համաշխարհային պատմական կարևորություն ունեցող մի նոր ելակետ» նվաճվեց:

Կոմունան համաշխարհային պրոլետարիատի ազատագրական պայքարի հանրագումարն էր ու նրա մեծագույն նվաճումը: Հսկայական էր նրա պատմական փորձի նշանակությունը բանվորական շարժման հետագա զարգացման գործում: «Որքան էլ մեծ լինեն Կոմունայի զոհերը,— ասել է Լենինը,— նրանք փավվում են համապրոլետարական պայքարի համար նրա ունեցած նշանակությամբ» (Երկեր, հ. 13, էջ 614): Իր բոլոր սխալներով հանդերձ Կոմունան XIX դարի «...պրոլետարական մեծագույն շարժման մեծագույն օրինակն է» (նույն տեղը):

Փարիզի կոմունան ոգեշնչել է ողջ աշխարհի աշխատավորությանը: Պատահական չէ, որ Կոմունայի համար ակտիվ պայքարում էին լեհերը, ռուսները, իտալացիները, բելգիացիները, գերմանացիները և այլ ազգությունների ներկայացուցիչներ: Տպավորիչ են ամերիկացի ռադիկալ ժուռնալիստ Լինտոնի խոսքերը. «Ես կցանկանայի ավելի շուտ լինել Դելեկլյուզ արյունաշաղախ Փարիզում, քան կայսր՝ հաղթական մարտակառքում»:

Կոմունայի հարուստ փորձը ուսանելի է ամբողջ աշխարհի բանվորական շարժման համար: Կոմունայի փորձը հիմտորեն օգտագործեց Ռուսաստանի պրոլետարիատը՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նախապատրաստման ու իրականացման ժամանակ: Կոմունայի ինտերնացիոնալիզմի վեհ սկզբունքին հավատարիմ Ֆրանսիայի բանվոր դասակարգը ողջունեց ռուսական պրոլետարիատի հաղթանակը և հանդես եկավ «Ձեռքե՛րդ հեռու Սովետական Ռուսաստանից» լոզունգով:

Ֆրանսիայում կոմունարների հեղափոխական ավանդույթների ու նրա անմահ գործի իրագործման համար պայքարող ուժը Ֆրանսիայի կոմունիստական կուսակցությունն (ՖԿԿ) է, որը ծնվեց 1920 թվականին դասակարգային պայքարի բոցերում: Ֆրանսիայի կոմկուսը ղատապարտեց տեղի բուրժուազիայի ինտերվենցիան Սովետական Ռուսաստանի դեմ և ռազմաճակատներում կազմակերպեց ռուս և ֆրանսիացի զինվորների եղբայրացումը: ՖԿԿ-ն, հաշվի առնելով, որ կոմունարների գործի անմիջական շարունակողը ՍՍՀՄ-ն է, վերջինիս 1924 թվականին հավերժ պահպանության հանձնեց Կոմունայի գումարտակներից մեկի կարմիր դրոշը:

Երկրորդ համաշխարհային պատերազմի բովում, գերմանական ֆաշիզմի դեմ համատեղ պայքարում առավել կոփվեց ու արյան գնով ամրապնդվեց սովետական ու ֆրանսիական ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, որի լավագույն օրինակը «Նորմանդիա-Նեման» փառապանծ ավիագնդի սովետական և ֆրանսիական օդաչուների սխրագործություններն են:

Այս օրերին ողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը մեծ երախտագիտությամբ ու հանդիսավոր տոնում է փառապանծ կոմունայի հարյուրամյակը և նշում, որ եթե 1871 թ. Փարիզի պրոլետարիատի «Երկնքի գրոհը» կոմունարների հերոսության ու դեպի ապագան ունեցած ուժեղ հավատի արտահայտությունն էր, ապա այժմ սոցիալիստական հզոր ճամբարը կոմունայի ավանդույթների մարմնացնողն ու շարունակողն է:

Կոմունայի գործն ապրում է ու հաղթանակում:

---

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ

Վ. ԿՈՐՏՈՒՆՈՎ

## ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՌԱՍՊԵԼՆԵՐԻ ՓԼՈՒԶՈՒՄԸ

*ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՍՐՈՒՄԸ ԱՐԴԻ ԷՏԱՊՈՒՄ ⊙ ՀԱԿԱԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՏԱԿՏԻԿԱԿԱՆ ՆՈՐ ՊՐԻՈՄՆԵՐԸ ⊙ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՍՆԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ ⊙ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՌԱՍՊԵԼՆԵՐԸ ԵՎ ՌԵԱԼ ԻՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ:*

Կապիտալիստական դարավոր կարգերի հեղաբեկման և սոցիալիստական նոր քաղաքակրթության ձևավորման փոթորկահույզ ժամանակաշրջանը, որով այժմ ընթանում է համաշխարհային պատմությունը, հատկանշական է գաղափարական ամենասուր պայքարով հասարակական գործունեության բոլոր ոլորտներում: Վերցնենք թեկուզ որևէ պետության ներքին կյանքը կամ միջազգային հարաբերությունների բնագավառը, էկոնոմիկայի, քաղաքականության, կամ կուլտուրայի հարցերը,— ամենուրեք երևան է գալիս գաղափարական տարբեր դիրքորոշումների լարված բախումը, որը, վերջին հաշվով, արտացոլում է արդի դարաշրջանի դասակարգային անտագոնիստական ուժերի հակամարտությունը, կապիտալիզմի և սոցիալիզմի պայքարը համաշխարհային ասպարեզում:

Բազմազան գաղափարական հոսանքների, տեսական կոնցեպցիաների և պրոպագանդիստական դոկտրինաների բարդ հեղեղատում տարեցտարի ավելի ու ավելի հստակ է երևան գալիս մեր օրերի գաղափարական պայքարի գլխավոր ջրբաժան գիծը. մի կողմից՝ մարքս-լենինյան աշխարհայացքի հարձակումը, որի հզորությունը չափվում է Սովետական Միության ու համաշխարհային սոցիալիստական սիստեմի, կոմունիստական ու բանվորական շարժման, ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի նյութական մեծ ուժով, մյուս կողմից՝ մարտնչող հակակոմունիզմի դրոշի ներքո այդ հարձակմանը մեռնող դասակարգերի ցույց տված կատաղի դիմադրությունը, որն այնքան ավելի սուր է, որքան ավելի ակնհայտ է դառնում նրանց պատմական դատապարտվածությունը:

Մարքսի, Էնգելսի, Լենինի ուսմունքի հաղթանակին դեմ-հանդիման, կապիտալիստական աշխարհի իշխող ընտրախավը և նրա մանրբուրժուական կամակատարները մոբիլիզացնում են աշխատավոր մասսաների հոգևոր ստրկացման իրենց ողջ բազմադարյան փորձը, մարդու ներքին աշխարհի վրա ներազդելու բոլոր միջոցները: Վերջին տասնամյակների ընթացքում իմպերիալիզմն ստեղծել է «հոգեբանական մշակման» հզոր և խնամքով սարքավորված մեքենա, որի միջոցով նրան դեռևս հաջողվում է հոգևոր գերության մեջ պահել միլիոնավոր մարդկանց և այս կամ այն չափով նրանց ծառայեցնել իր նպատակներին: Ուստի, բուրժուական, հատկա-

պես առավել բացահայտ իմպերիալիստական գաղափարախոսության, նրա ամենամարտնչող ձևի՝ հակակոմունիզմի, մերկացումը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալական առաջընթացի համար աշխատավորների մղած ընդհանուր պայքարի անկապտելի բաղադրիչ մասն է:

Այդ պայքարը քիչ ջանքեր չի պահանջում: Խոսելով այն մասին, թե անհրաժեշտ է «...հաղթահարել կապիտալիստների ոչ միայն ռազմական ու քաղաքական, այլև գաղափարական ամբողջ դիմադրությունը», Վ. Ի. Լենինը այս վերջինը բնորոշում էր որպես «ամենախորը և ամենազորը» (Երկեր, հատ. 31, էջ 464): Դա եղել և մնում է ամենախորն ու ամենազորն այն պատճառով, որ բուրժուական աշխարհայացքը մասսաների գիտակցության մեջ արմատավորվում է ոչ միայն պրոպագանդայի ու գաղափարական ներգործության բոլոր միջոցներով, այլև կապիտալիստական երկրների կյանքի բուն պայմաններով, բուրժուական աշխարհի ողջ առօրյա կենսաձևով, նրա ավանդույթներով ու կենսական ստանդարտներով: Գաղափարական այդ դիմադրությունը չի դադարում նաև այն բանից հետո, երբ շահագործող դասակարգերը կորցնում են իրենց դիրքերը էկոնոմիկայի ու քաղաքականության ասպարեզում: Պայքարն այստեղ ծավալվում է մարդկային գործունեության առանձնահատուկ և առավել բարդ ոլորտում, որտեղ հակադիր դասակարգերի միջև եղած սահմանագիծը երբեմն բավական դժվար նշմարելի է՝ քաղաքական, ազգային, կուլտուրական և այլ բնույթի բազմաթիվ ուղեկցող և հաճախ բարդ կերպով միահյուսվող գործոնների պատճառով:

Սակայն, չնայած այս բոլորին, գաղափարական պայքարի ընդհանուր տենդենցն ունի իր տրամաբանությունը. գաղափարների ճակատամարտում անխուսափելիորեն հաղթանակում են այն գաղափարները, որոնք համապատասխանում են կյանքի իրական պահանջմունքներին, մասսաների առջև կոնկրետ ուղիներ են բացում հասունացած խնդիրները լուծելու համար: Հենց այդ հասարակ տրամաբանությունն էլ վկայում է գիտական կոմունիզմի գաղափարների ժողովրդականությունը և բացահայտում բուրժուական գաղափարախոսության խորացող ճգնաժամի արմատները:

ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ գաղափարախոսության ճգնաժամն անկասելի է, որովհետև այն բխում է ոչ թե բուրժուական մտքի ինչ-որ մասնակի անհաջողություններից, այլ արդի ողջ կապիտալիստական հասարակության պատմական սնանկացման փաստից: Մահվան դատապարտված ապրելակերպին ծառայող ինտելեկտուալ գործունեությունը ինքնին անէանում է ու մեռնում: Եվ մի՞թե այժմյան բուրժուական գաղափարախոսության բուն էությունը, նրա առավել բնորոշ գծերը՝ մերկապարանոց հակակոմունիզմը, մասսաներին քաղաքականությունից հեռացնելու ձգտումը, իր իսկական նպատակները բացեիբաց հռչակելու վախը—այդ խոր ճգնաժամի համոզիչ հաստատումը չեն:

Ըստ երևույթին, ինչպես այժմ իմպերիալիզմի ողջ պրոպագանդիստական մեքենայի համար հակակոմունիզմի արմատավորումը համընդհանուր խնդիր չէր դառնա, եթե նրա կառավարող վերնախավը մահացու սարսափ չզգար սոցիալիզմի հանդեպ և կարողանար նրան հակադրել իր սեփական պոզիտիվ գաղափարները, հասարակության պահանջմունքներին համապատասխանող գործնական առաջարկները: Նա կարիք չէր ունենա դիմելու կասկածելի խորամանկությունների՝ մասսաներին քաղաքականությունից հեռացնելու համար, եթե նրա բուն քաղաքականությունը աղաղակող հակասության մեջ չլիներ ժողովրդի մեծամասնության արմատական շահերի հետ: Իմպերիալիստական ռեակցիան հարկ չէր ունենա թաքցնելու իր իսկական նպատակները և հմտանալու ամեն տեսակ գաղափարական առասպելներ հորինելու մեջ, եթե կարողանար հուսալ, որ ժողովրդական մասսաները կպաշտպանեն նրա գիծը: Այս բոլորը իմպերիալիզմի անողոք քաղաքական մեկուսացման հետևանքն է:

Արդի հակակոմունիզմը իր գաղափարական դոկտրինաներով հանպատրաստի չի հայտնվել, ինչպես գերիմաստուն Միներվան Զևսի գլխից, այլ արդյունք է բուրժուական գաղափարախոսության երկարատև էվոլյուցիայի՝ պայմանավորված կապիտալիստական տիրապետության սոցիալական բազայի նեղացմամբ:

Բուրժուական մտքին ծանոթ էին այն երանելի ժամանակները, երբ աբսոլյուտիզմի դեմ մղված պայքարում նրա ներկայացուցիչները, փոխառնելով դեմոկրատական իդեալներ, հանդես էին գալիս որպես առաջընթացի ու մարդասիրության մունետիկներ: Երիտասարդ, մարտնչող բուրժուական դասակարգի անունից նրանք առատորեն մեծախոսում պարտավորություններ էին շռայլում, խոստանալով կառուցել ազատության, հավասարության և եղբայրության սկզբունքների վրա հիմնված նոր հասարակարգ: Բայց տարիները անցնում էին, բուրժուազիան իր տիրապետությունը հաստատեց Եվրոպայի մայրցամաքում ու նրա սահմաններից դուրս, իսկ տրված մուրհակները անվճար էին մնում:

Ազատության, հավասարության ու եղբայրության երջանիկ դարը աշխատավորների համար շարունակում էր լինել նույնքան անսահման հեռավոր մի իդեալ, որքան աղքատությունից և ռազմական բնաջնջման մշտական սպառնալիքից փրկվելը: Դեռ ավելին, բուրժուազիան որքան տնտեսապես ուժեղանում էր, որքան շատ հարստություն և իշխանություն էր կենտրոնացնում իր ձեռքում, այնքան պարզորոշ էր ի հայտ գալիս նրա տիրապետության հակաժողովրդական էությունը, այնքան անտագոնիստական բնույթ էր ստանում նրա կոնֆլիկտը աշխատավոր մասսաների հետ, այնքան ակնհայտ էր բացահայտվում նրա գաղափարախոսության բնածին արատը՝ ժամանակին հռչակած իդեալների և գործերի միջև եղած աղաղակող հակասությունը: Մարդասիրության մեծ գաղափարները, որոնք բուրժուազիան առաջին շրջանում օգտագործում էր իր քաղաքական հակառակորդների դեմ, այժմ շուռ եկան իր իսկ դեմ:

Այն բանից հետո, երբ մարքսիզմը մերկացրեց կապիտալիստական շահագործման ողջ մեխանիզմը, հստակ որոշեց բուրժուազիայի պատմական դերն ու տեղը և սոցիալական արդարության կոնկրետ գործողությունների ծրագրում մարմնավորեց աշխատավոր մարդկության դարավոր երազը, վերջնականապես պսակազերծվեցին բուրժուազիայի գաղափարախոսների կողմից դեմոկրատական լոզունգների դեմագոգիական չարաշահումները: Դրանից հետո բուրժուական գաղափարախոսությունը անդառնալիորեն ետ շպրտվեց պաշտպանության դիրքերը:

Նրա ուղղություններից մեկը, որից հետագայում ծնունդ առան լիբերալ-դեմոկրատական բնույթի բազմաթիվ հոսանքներ ու դպրոցներ, հարկադրված են զբաղվել բուրժուական հասարակական մտքի որոշ հետևությունների քննադատական վերագնահատմամբ՝ դրանք ռեալ իրականությանը հարմարեցնելու նպատակով: Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո, որը նոր հզոր հարված էր բուրժուազիայի գաղափարախոսությանը, այդ ուղղության ներկայացուցիչները սկսեցին իրենց կոնցեպցիաները որպես կանոն մշակել՝ որոշ չափով հաշվի առնելով սոցիալիզմի փորձը: Մյուս ուղղությունը լկտիաբար հռչակեց «ընտրյալ ռասայի» կողմից մարդկային ցեղը բռնությամբ ստրկացնելու խնդիրը և խոշոր մոնոպոլիստական կապիտալի տոտալիտար դիկտատուրայի հաստատումը: Սկսելով ձևավորվել դեռևս XIX դարի երկրորդ կեսում որպես նիցշեական փիլիսոփայություն, այդ ուղղությունը, վերջին հաշվով, իր տրամաբանական ավարտումը գտավ ֆաշիզմի մեջ:

Ֆաշիզմի հրեշավոր ոճրագործությունները, միլիոնավոր մարդկանց բնաջնջումը և կուլտուրայի բարբարոսական ոչնչացումը, ՍՍ-ի պատժիչ ջոկատները, Մայդանեկի և Օսվենցիմի վառարանները չափազանց թարմ են ժողովուրդների հիշողության մեջ: Եվ Արևմուտքի ո՞ր հարգարժան բուրժուական քաղաքական գործիչը կամ գաղափարախոսը, բացի, թերևս, ամենաանուղղելի խավարամոլներից, այսօր չի ձգտում հրապարակորեն սահմանազատվել այն «ծայրահեղություններից», որոնց ոչ վաղ անցյալում դիմում էին «նոր կարգի» ձախողակ կառուցողները: Բայց ֆաշիզմը ոչ միայն համակենտրոնացման ճամբարներ ու էսէսականների գրոհային ջոկատներ էր, այլև խնամքով մշակված գաղափարական դոկտրինա, որը երևան է եկել մարտնչող հակակոմունիզմի հիման վրա և առավել ավարտուն է արտահայտում տենդենցը դեպի համաշխարհային գերիշխանություն և ռեակցիա բոլոր գծերով: Հիտլերը սոսկ միայն ավելի հեռուն գնաց այդ ուղղությամբ, քան այդ հաջողվեց անել որևէ մեկին նրանից առաջ, բայց նա ղեկավարվում էր ոչ թե մի ինչ-որ առանձին, այլ նույն այն գաղափարական ու քաղաքական օրիենտիրներով, ինչ-որ աշխարհի բոլոր ռեակցիոներները: Ֆաշիստական գաղափարախոսության հիմքերի հիմքը հակակոմունիզմն է: Եվ ինչպես էլ զգեստավորվեն հակակոմունիստները, ինչպիսի դիմակներ էլ կրեն, նացիզմի կրախից հետո ոչ ոք տարակույս չպետք է ունենա, թե վերջին հաշվով ինչի կարող է հանգեցնել արդի հակակոմունիզմը, եթե իր ճանապարհին չհանդիպի արգելքի ու վճռական հակահարվածի: Հակակոմունիզմի քարոզիչների թիկունքում երևում են Նյուրնբերգի «հերոսների» չարագուշակ ստվերները:

ԱՇԽԱՐՀՈՒՄ դեմոկրատիայի ու սոցիալիզմի օգտին տեղի ունեցած ուժերի հարաբերակցության փոփոխությունը հարկադրեց բուրժուական կարգերի ջատագովներին ձևափոխելու հակակոմունիզմի տակտիկան: Վախենալով (և ոչ առանց հիմքի) բացահայտ կերպով հանդես գալ սոցիալիզմի դեմ, այժմ նրանք գերադասում են դիմել շրջանցիկ մանևրների, ըստ հնարավորին իրերն իրենց անունով չկոչել, կապիտալիստական հին լափը տարածել նոր պիտակներ կրող անոթներով:

Բացահայտելով մարքս-լենինյան ուսմունքի, սոցիալիզմի և ազատագրական շարժման դեմ ուղղված իմպերիալիզմի գաղափարական դիվերսիաների այժմյան տակտիկայի էությունը, Լ. Ի. Բրեժնևը կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային

խորհրդակցությունում ասել է. «Իմպերիալիզմը չի կարող հաջողություն հուսալ՝ բացեիբաց հռչակելով իր իսկական նպատակները: Նա ստիպված է ստեղծել գաղափարախոսական առասպելների մի ամբողջ սիստեմ, որոնք մթագնում են նրա մտադրությունների իսկական իմաստը, բթացնում ժողովուրդների զգոնությունը»:

Բուրժուական պրոպագանդան դրա վրա է կենտրոնացնում իր գլխավոր ջանքերը: Ինչ փույթ, եթե նրա առասպելները կենսունակ չեն և խորտակվում են ռեալ իրականության հետ բախվելիս: Միշտ կգտնվեն նորերը հորինելու պատրաստ ցանկացած թվով ուսյալ պրոֆեսորներ: Չէ որ այդ ամբողջ գործունեությունը բնավ նպատակ չունի գտնելու ճշմարտությունը, տալու պատմական պրոցեսի ճիշտ մեկնաբանությունը, այլ, ընդհակառակը, մասսաներին հեռացնելու ճշմարտությունից, սերմանելու թեկուզ ոչ հարատև, բայց առերևույթ ճշմարտանման պատրանքներ, որոնք այդ մասսաներին կարողանային շեղել ազատագրական պայքարի հիմնական ուղղությունից, գաղափարիկներ նետելու՝ նրանց գիտակցությունը թունավորելու, հոգեպես զինաթափելու համար:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, հատկապես վերջին տասը-տասնհինգ տարվա ընթացքում, իմպերիալիզմի գաղափարախոսները և նրանց ռևիզիոնիստական ձայնակիցները արտասովոր բեղմնավոր էին: Նրանք շրջանառության մեջ դրին գրեթե տասնյակ գիտականակերպ կոնցեպցիաներ, որոնք հավակնում էին կամ ժխտելու, կամ «կատարելագործելու» գիտական կոմունիզմի տեսությունն ու պրակտիկան, ժողովուրդների աչքում արդարացնել կապիտալիստական կարգը: Այստեղ և՛ «ժողովրդական կապիտալիզմն» է, և՛ «ընդհանուր բարօրության պետությունը», և՛ մասսայական սպառման հասարակությունը, և՛ «տնտեսական աճի ստադիաների» տեսությունը, և՛ «պոստինդուստրիալ հասարակությունը», և՛ «միասնական միջին դասակարգի», երկու սիստեմների «կոնվերգենցիայի», հասարակական կյանքի «ապագաղափարախոսացման» և շատ այլ կոնցեպցիաներ: Դրանք բոլորը պարծենկոտությամբ հրամցվում են որպես գիտական իմացության մեջ «նոր խոսք», որը, իբր թե, մարքսիզմ-լենինիզմից առաջ է անցնում արդի իրականության այնպիսի երևույթների «իմաստավորման» գործում, ինչպիսիք են գիտա-տեխնիկական հեղափոխությունը, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը, միջիմպերիալիստական ինտեգրացիայի պրոցեսների զարգացումը և այլն, որոնք իբր ո՛չ Մարքսը, ո՛չ Լենինը «չեն կանխատեսել»:

Իրականում, սակայն, խոսքը վերաբերում է մարքսիզմ-լենինիզմի ուղղակի խեղաթյուրմանը և ռեալ իրականության ավելի կամ պակաս վարպետ կեղծմանը: Բուրժուական մտքի նորահայտ կորիֆեյների սովորական մեթոդը այն է, որ նրանք ընդհանուր պրոցեսից կամայականորեն պոկում են ինչ-որ առանձին, թեկուզև շատ կարևոր երևույթներ և դրանց տալիս են ինքնաբավ նշանակություն: Այսպես, վերջերս Արևմուտքում առանձնապես մոդա է դարձել ճամարտակել այն «անսպասելի» պահերի առթիվ, որոնք, իբր, երևան են եկել գիտա-տեխնիկական հեղափոխության կապակցությամբ և, իբր, ավտոմատ կերպով փոխում են կապիտալիզմի սոցիալական բնույթը: Միաժամանակ պնդում են, որ մարքսիզմ-լենինիզմը «բավականաչափ հաշվի չի առել» կամ «թերագնահատել» է այդ երևույթները:

Իրականում, սակայն, մարքսիզմի արդի քննադատները փաստորեն քննադատում են ոչ թե Մարքսին, այլ մարքսիզմի իրենց սեփական կամայական մեկնաբանությունը: Ոչ Մարքսը, ոչ էլ Լենինը երբեք մարգարեների դեր չեն ստանձնել (թեև նրանց հիմնական հետևությունները մարգարեական դուրս եկան), այլ հետազոտել են պատմական ողջ պրոցեսը՝ իր միասնության և դիալեկտիկական զարգացման մեջ: Այդպիսի մոտեցման դեպքում (իսկ այն միակ հնարավորն է նրանց համար, ովքեր իսկապես ձգտում են հասկանալ հասարակական զարգացման օրինաչափությունները) մարքսիզմ-լենինիզմը սպառիչ պատասխան է տալիս արդիականության արմատական, ինչպես և գիտա-տեխնիկական հեղափոխության, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի, ինտեգրացիայի զարգացման հետ կապված հարցերին և այլն: Բայց ամենից ավելի հենց դրանից են վախենում հակակոմունիզմի գաղափարախոսները: Ուստի, նրանք ձգտում են միասնական պրոցեսը մասնատել բազմաթիվ առանձին երևույթների, մեկուսացնել և իրար հակադրել դրանք, նրանցից յուրաքանչյուրին տալ իրենց սեփական մեկնաբանությունը:

Իրենց չափազանց հակասական փաստարկումն ունեցող այդ մեկնաբանությունների սնանկությունն իսկ ակնառու կերպով հաստատում է այն ակներև փաստը, որ բուրժուական միտքն անզոր է որևէ միասնական, ամբողջական գաղափարական երկընտրանք հակադրել մարքսիզմ-լենինիզմին: Եվ թեև բուրժուական պրոպագանդան փորձում է այդ արատը հրամցնել որպես առաքինություն, իսկ իր տեսական պոստուլատների խայտաբղետությունն ու անկայունությունը՝ որպես «կարծիքների ազատություն», որն, իբր, սահմանափակված չէ որևէ դոգմայով և դասակարգային շահով, հուսալով մասսաների առաջ ներկայանալ նորության ու բազմազանության կեղծ լուսապսակով, փաստը մնում է փաստ. այդպիսի երկընտրանքի բացակայության պատճառով այժմ նա ստիպված է ստացված «սոցիալական պատվերը» քողարկել մշտապես իրար փոխարինող առասպելների խայտաբղետ սուռոգատով:

Բայց այս կամ այն մոդային կոնցեպցիաների արտաքին տարբերության, նրանց անվերջ տարատեսակությունների տակ միշտ հստակ երևում է նրանց հակակոմունիստական զարմանալի միօրինակությունն ու շաբլոնը:

Իմպերիալիզմի այժմյան ուսյալ օրամշակների տեսական ողջ գործունեությունը, նրա պրոպագանդիստական ծառայությունների բոլոր ջանքերը, ըստ էության, նպատակ ունեն մարդու գիտակցության մեջ արմատավորել մի շարք յուրատեսակ ստերեոտիպներ, որոնցով նա ղեկավարվեր արդի իրականության բոլոր բարդ երևույթները գնահատելիս: Ամենից ավելի հաճախ զգեստավորված լինելով նրբին դեմագոգիական փրազաբանությամբ, այս կամ այն կոմբինացիայի դեպքում դրանք առկա են իմպերիալիզմի պրոպագանդիստական մեքենայի կոնվեյերից դուրս եկած գրեթե յուրաքանչյուր նյութի մեջ: Դիմելով գլխավորապես ընթերցողին, ունկնդրին կամ հանդիսատեսին, որը շատ էլ անփորձ չէ տեսության ու քաղաքականության մեջ, իմպերիալիստական պրոպագանդան ձգտում է համոզել նրան, որ իր հերյուրանքները ռեալ են: Ահա նրա բազմիցս հոլովված առասպելներից մի քանիսը:

— Կոմունիզմը քայքայում է քաղաքակրթության հիմքերը, մարդկանց զրկում է գույքից և ազատությունից: Եթե կոմունիստական երկրներից մի քանիսը հասել են զարգացման բարձր տեմպերի, ապա դա ո՛չ թե սոցիալիստական սիստեմի առավելությունների, այլ բնակչության կենսամակարդակի իջեցման արդյունքն է:

— «Ազատ» ձեռնարկատիրության աշխարհը, հավատացնում են կապիտալիստական սիստեմի ջատագովները, հակառակ «կոմունիստական դոգմաների», հաղթահարել է իր նախկին խոցերը և այժմ ապահովում է առավելագույն գործարար ակտիվություն, դեմոկրատիա, անհատական նախաձեռնություն, ի վերջո, անհատի ազատություն: Այստեղ ամեն ոք հնարավորություն ունի առաջադիմելու և կոշիկ մաքրողից միանգամից միլիոնատեր դառնալու: Եվ եթե դու դեռ չես հասել այդպիսի դրության, ապա կամ ինքդ ես մեղավոր դրանում, կամ առայժմ պարզապես բախտդ չի բերել: Գիտության ու տեխնիկայի զարգացումն ինքնին, առանց հասարակության սոցիալական կառուցվածքից որևէ կախում ունենալու, գրեթե անսահման հնարավորություններ է բացում հասարակական և անձնական բարեկեցության բարձրացման համար, պայմանով, եթե բոլորը ջանասիրությամբ աշխատեն, զորավիգ լինեն գոյություն ունեցող հասարակարգին և այժմյան բուրժուական օրինականությանն ու կարգին:

— Մարդու շահագործումը մարդու կողմից, մոնոպոլիաների բռնացումը, դասակարգային շահերի անտագոնիզմը կոմունիստների հերյուրանքներն են: Եթե անցյալում դրանք որոշ հիմքեր ունեցել են, ապա այժմ այլևս չունեն: Այսօրվա կապիտալիստը նույն աշխատավորն է, իսկ յուրաքանչյուր բանվոր կարող է բաժնետոմսեր ձեռք բերել և կապիտալի համատեր դառնալ: Դասակարգերն անհետանում են, իսկ դասակարգային պայքարն անմտություն է, ավելին, վնասակար է, քանի որ միայն խանգարում է ինդուստրիալ հասարակության տարերային շարժմանը, դեպի առատության ու մասսայական սպառման երջանիկ դարը:

— Արդի աշխարհի բոլոր դժբախտությունները, ինչպես նաև նրա ապագայի հանդեպ սպառնալիքը (բացի կոմունիստների չարամիտ դավերից) բխում են այնպիսի ցավալի երևույթներից, ինչպես մարդկային էության անկատարությունն է, նրա մութ բնազդների իռացիոնալությունը. դրանք հետևանք են նաև դեմոգրաֆիական պայթյունի, ծայրահեղ ուրբանիզացիայի, շրջապատող միջավայրի աղտոտման և մարդկության գլխին տեղացող այլ դժբախտությունների, որոնց համար կապիտալիզմը, բնական է, չի կարող պատասխան տալ: Այդ անհաջողությունները հաղթահարելու համար դարձյալ հարկավոր է դեն նետել դասակարգային պայքարը և կենտրոնանալ համաշխարհային պրոբլեմների լուծման վրա, դրա համար օգտագործելով բուրժուական գաղափարախոսների առաջարկած դեղատոմսերը:

Այս բոլորը և դրանց նման զրպարտությունները հետապնդում են մի ակներև նպատակ՝ սքողել արդի դարաշրջանի գլխավոր հակասությունը— հակամարտ դասակարգերի, կապիտալիզմի ու սոցիալիզմի միջև եղած հակասությունը և գաղափարական այնպիսի առասպելներ հորինել, որոնք աշխատավոր մասսաների մեջ յուրատեսակ իմունիտետ ստեղծեին գիտական կոմունիզմի տեսության ու փորձի դեմ:

Ընդ որում, բուրժուական պրոպագանդան դիմում է ամեն մի խարդախության, որոշ հասկացություններ, ըստ էության, նենգափոխելով ուրիշներով: Վերցնենք դեմոկրատիայի հարցը: Ավելի քան կես դար սոցիալիզմի հակառակորդները աներեսաբար պնդում են, թե անհատը «ճնշված է» սովետական հասարակության պայմաններում, այդ հասարակությունը հակա-

դրում են կապիտալիզմի «ազատ աշխարհը», որտեղ, իբր, ստեղծված են բոլոր պայմանները մասսաների քաղաքական «կամքի արտահայտման» և յուրաքանչյուր քաղաքացու «ինքնաարտահայտման» համար: Իբրև ապացույց, սովորաբար բերում են բուրժուական ընտրական սիստեմի բազմակուսակցականությունը, կարծես թե կառավարական պորտֆելների համար բուրժուական կուսակցությունների մղած պայքարը իսկական դեմոկրատիա է: Միևնույն ժամանակ այնպիսի ոչ նվազ կարևոր «մանրամասներ», ինչպիսիք են պետական իշխանության սոցիալական կառուցվածքը, դասակարգերի և ազգերի փոխհարաբերությունները, հասարակության տնտեսական, քաղաքական և գաղափարական նպատակները, ներքին և արտաքին քաղաքականության համապատասխանությունը կամ անհամապատասխանությունը ժողովրդի շահերին, պարզապես աչքաթող են արվում: Այսպես ուղղակի կեղծիքի միջոցով հորինվում է այն առասպելը, թե դեմոկրատիան ծաղկում է կապիտալիստական երկրներում՝ ի հակակշիռ սոցիալիզմի:

Սակայն առասպելները հենց առասպել են կոչվում, քանի որ միշտ տառապում են մի թերությամբ. դրանք չեն համապատասխանում ռեալ իրականությանը: Ուստի իմպերիալիստական մոնոպոլիաների արդի ջատագովները ինչպիսի կախարդության էլ դիմում են հակակոմունիզմի ասպարեզում, նրանց բոլոր խորամանկ կոնցեպցիաները հողմացրիվ են լինում, երբ լրջորեն զուգակցվում են կյանքի հետ:

Եվ իրոք, մի՞թե աղաղակող սրբապղծություն և առողջ մտածողության ծաղր ու ծանակ չէ իմպերիալիզմի գաղափարախոսների հենց հավակնոտ փորձը՝ դատողություններ անել մարդասիրության, դեմոկրատիայի, անհատի ազատության մասին և այլն, երբ այն ձեռնարկվում է մի հասարակության անունից, որը քաղցի, թշվառության ու տգիտության է մատնում միլիոնավոր մարդկանց, օրինականացնում է սոցիալական անհավասարությունը, շարունակ ագրեսիա է ծնում և որը, անհուսալիորեն խճճվելով սեփական հակասությունների մեջ, մարդկությանը կանգնեցնում է ջերմամիջուկային աղետի եզրին:

ՇԱՏ տասնամյակներ է, ինչ կապիտալիզմը տեր ու տնօրինություն է անում երկրագնդի վրա: Այդ ժամանակամիջոցում արտադրաուժերի և գիտության զարգացումը ստեղծել է բոլոր նախադրյալները, որպեսզի նյութական ու հոգևոր բարիքների առատություն ապահովվի երկրագնդի բոլոր մարդկանց համար: Բայց կապիտալը գործ չունի մարդու հետ, նրան հետաքրքրում է միայն շահույթը: Այդ է նրա հակամարդասիրական էությունը, այդ է կապիտալիզմը՝ որպես մարդու կողմից մարդու շահագործման վրա հիմնված հասարակարգի, բոլոր հակասությունների պատճառը: Քանի դեռ գոյություն ունի կապիտալիզմը, շահույթի հետապնդումը եղել է, կա և կլինի նրա ամբողջ մեխանիզմը շարժման մեջ դնող գլխավոր զսպանակը, որի հետևանքով անխուսափելիորեն կխորանա նրա կոնֆլիկտը միլիոնավոր մարդկանց հետ, որոնք հարկադրված են հանուն մոնոպոլիաների առասպելական հարստացման ողորմելի գոյություն քարշ տալ և շարունակ վախ զգալ իրենց ապագայի համար:

Մեր օրերում ավելի քան այժմեական է հնչում այն բնութագիրը, որ Վ. Ի. Լենինը տվել է իմպերիալիզմին մոտ վաթսուն տարի սրանից առաջ. «Որ կողմ նայում ես— ամեն քայլափոխի հանդիպում ես խնդիրների, որոնք մարդկությունն ի վիճակի է լրիվ լուծելու **անհապաղ**: Խանգարում է կապիտալիզմը: Նա կուտակել է հարստության կույտեր և դարձրել մարդկանց այդ հարստության **ստրուկներ**: Նա լուծել է տեխնիկայի շատ բարդ հարցեր և կասեցրել տեխնիկական բարելավումների կիրառումը կյանքում բնակչության միլիոնների աղքատության և տգիտության պատճառով, մի բուռ միլիոնատերերի գծուծության պատճառով:

Քաղաքակրթությունը, ազատությունն ու հարստությունը կապիտալիզմի օրով հիշեցնում են չափից շատ կերած այն հարուստին, որը ողջ-ողջ փտում է և հնարավորություն չի տալիս ապրելու այն ամենին, ինչ երիտասարդ է» (Երկեր, հ. 19, էջ 478—479):

Որքան ավելի են զարգանում հասարակության արտադրողական ուժերը, այնքան ավելի ակներև է դառնում դրանք համամարդկային առաջադիմության օգտին գործադրելու կապիտալիզմի բացահայտ անկարողությունը: Շահագործելով միլիոնավոր մարդկանց աշխատանքը, կապիտալիզմը մարդուն հնարավորություն չի տալիս ապրելու այնպես, ինչպես պահանջում են նրա խիղճն ու արժանապատվությունը, իսկ մարդկությանը՝ առաջ ընթանալ այնպես, ինչպես կարող է առաջ ընթանալ տեխնիկական ու հասարակական գիտելիքների արդի մակարդակի պայմաններում: Արտադրողական ուժերի, դեմոկրատիայի, միջազգային համագործակցության հետագա զարգացումը՝ ամեն ինչ դեմ է առնում կապիտալիստական հարաբերությունների՝ իր դարն ապրած սիստեմին:

Արդի կապիտալիզմի անկարողությունը՝ լիովին օգտագործելու եղած արտադրական հնարավորությունները, երբ միլիոնավոր աշխատավորներ չեն կարողանում կիրառել իրենց ուժերը, շարունակում է մնալ բուրժուական հասարակության խրոնիկական և անբաժանելի



ախտը: Մասսայական գործազրկությունը կապիտալիզմի մշտական ուղեկիցն է: Կապիտալիզմի օրոք գիտա-տեխնիկական մտքի վերջին նվաճումների հիման վրա արտադրության մեքենայացման ու ավտոմատացման աճը կարող է աշխատավորների համար մշտական աղետ դառնալ: Արդյոք այդ պատճառով չէ՞, որ արևմտյան գաղափարախոսները, տեխնիկայի ֆետիշացման հետ մեկտեղ, այժմ սկսել են ավելի ու ավելի հաճախ խոսել և գրել դրա «ավերիչ» ազդեցության վերաբերյալ, այդ թեմային մոտենալով «մեքենայական քաղաքակրթության» պայմաններում մերթ շրջապատող միջավայրի աղտոտման, մերթ ծայրահեղ ուրբանիզացիայի, անհատի «համահարթման» պրոբլեմի արծարծմամբ: Բայց որքան էլ բուրժուական գիտնականները տրտնջան տեխնիկայից, այդ ամենի պատճառը տեխնիկան չէ: Մեքենայի «ավերիչ» հետևանքների համար պատասխանատու է այն հասարակարգը, որը չի կարողանում տեխնիկայի համար խելացի կիրառում գտնել:

Իր տիրապետության ողջ դարաշրջանում կապիտալիզմը կարողացել է արտադրաուժերի բարձր վերելքի հասնել միայն մի քանի, այսպես կոչված՝ առաջավոր երկրներում ու ի վիճակի չի եղել ապահովելու երկրագնդի հսկայական շրջանների ինդուստրիալ զարգացումը և, հետևաբար, արդի տեխնիկական մակարդակի պայմաններում յուրացնելու նրա բնական ռեսուրսները: Մեր մոլորակի մեծ մասը գրավում են տնտեսապես թույլ զարգացած երկրները, որոնց հիմնական բնակչությունն այսօր, ինչպես և հարյուրամյակներ առաջ, հողը մշակում է ամենապրիմիտիվ գործիքներով և, ունենալով հսկայական բնական հարստություններ, երբեմն սեփական ուժերով չի կարողանում կերակրվել: Արդի գիտա-տեխնիկական առաջընթացը, ըստ էության, շրջանցում է նրանց, որովհետև կապիտալիզմը, որը ձգտում է Ասիայի և Աֆրիկայի ընդարձակ մայրցամաքները պահել որպես իր հումքային կցորդներ ու շահագործման օբյեկտներ, ամենևին շահագրգռված չէ դրանց զարգացմամբ:

Աղքատության ու տգիտության դատապարտելով ողջ մայրցամաքների ժողովուրդներին, կապիտալիզմը հասարակական առաջընթացում դուրս է նետվում պատմության թատերաբեմից: Արդյոք դրանո՞վ չի բացատրվում իմպերիալիզմի գաղափարախոսությունների լպիրշ ձգտումը՝ մարդկությանն ահաբեկել «դեմոգրաֆիական պայթյուններով», որոնք, իբր, հղի են աղետալի հետևանքներով: Նրանք անդադար գուշակում են ազգաբնակչության ենթադրվող աճը տասը, քսան, երեսուն և ավելի տարի առաջ, այն զուգադրելով պարենի, սպառման ապրանքների, էներգիայի և այլնի արտադրության հնարավոր աճի հետ: Սակայն այդ դեպքում բուրժուական գիտնականները գերադասում են լռությամբ մատնել այն, թե բուրժուական հասարակությունն ինչպես է տնօրինում արդեն արտադրված նյութական բարիքները: Մինչդեռ փաստերն այստեղ իրենք են խոսում իրենց մասին և մերկացնում արդի մալթուսականների կեղծ բարեպաշտությունն ու երկերեսանիությունը:

Իմպերիալիզմի ողջ պատմությունը նշանավորվեց մարդկային աշխատանքի այնպիսի հրեշավոր վատնումով, որպիսին չի եղել ոչ մի այլ դարաշրջանում: Հաշվված է, որ մեր դարի վեց տասնամյակների ընթացքում ապարդյուն ռազմական ծախսերի, երկու համաշխարհային և տասնյակ «փոքր» պատերազմների, ճգնաժամերի ու դեպրեսիաների հետևանքով իմպերիալիզմը աշխարհի ժողովուրդներին հասցրել է նյութական արժեքների այնպիսի վնաս, որը կազմում է առնվազն 6600 միլիարդ դոլար: Եվ դա այն ժամանակ, երբ ավելի քան մեկուկես միլիարդ մարդ կարիքի մեջ է, միլիոնավորները մեռնում են քաղցից, երբ ոչ միայն զարգացող, այլև, այսպես կոչված՝ բուն առաջավոր կապիտալիստական երկրներում բնակչության հսկայական զանգվածներ մնում են առանց բժշկական օգնության, չեն ստանում նույնիսկ տարրական կրթություն, ծվարում են գետնախորշերում:

Կարելի՞ է արդյոք լուրջ ընդունել բուրժուական պրոպագանդայի այն հավաստիացումները, թե կապիտալիզմը նյութական առաջընթաց է, թե անհատը ազատ է կապիտալիստական աշխարհում: Արդյոք կարո՞ղ է մարդն իսկապես ազատ լինել, եթե նա չունի գոյության նույնիսկ նվազագույն միջոցներ, եթե անվստահ է վաղվա օրվա նկատմամբ, եթե կարդալ և գրել չգիտե:

Ժամանակին Վ. Ի. Լենինը, բնութագրելով իմպերիալիզմը, այն բնորոշել է որպես ռեակցիայի ուժեղացում բոլոր ուղղություններով: Բուրժուական հասարակության հետագա պատմությունը բազմաթիվ օրինակներով ցույց տվեց, որ կապիտալիստական էկոնոմիկայում համակենտրոնացման պրոցեսներին անխուսափելիորեն ուղեկցում է ռեակցիայի ուժեղացման որոշակի արտահայտված տենդենցը քաղաքական կյանքում: Մոնոպոլիստական կապիտալիզմի վերաճումը պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի, խիստ արտասովոր խարխլում է նույնիսկ բուրժուական սահմանափակ դեմոկրատիայի հիմքերը, իսկ, մյուս կողմից՝ որոշակի շաբլոնով, կարգավորում մարդկանց հասարակական ու անձնական վարքագիծը: Ընդ որում, մասսաներին առաջադրվող քաղաքական պահանջները և իշխանու-

թյուն ունեցողների գործողությունները որոշվում են ոչ թե սահմանադրություններում ամրագրված ժողովուրդների իրավունքներով, այլ մոնոպոլիաների եսամոլական շահերով:

Դրա համար օրինակ կարող է ծառայել կապիտալիստական աշխարհի գլխավոր երկիրը՝ Ամերիկայի Միացյալ Նահանգները: Անկախության դեկլարացիայում հռչակված ամերիկյան քաղաքացու դեմոկրատական երբեմնի իրավունքներն այժմ կոպիտ ոտնահարվում են հանուն ռազմա-արդյունաբերողների շահերի, որոնք, փաստորեն, մոնոպոլիստների, զինվորականության և ամերիկյան ծայրահեղների ֆաշիստացող խմբերի հակաժողովրդական դավադրություն են:

Այդ չարագուշակ միության ճնշման տակ ԱՄՆ-ը հետպատերազմյան ժամանակաշրջանում ռազմական կարիքների համար ծախսել է ավելի քան տրիլիոն դոլար: 1969 թվականին այդ նպատակներով նրա կատարած ուղղակի և անուղղակի հատկացումները կազմեցին ֆեդերալ կառավարության բյուջետային բոլոր ծախսերի գրեթե 80 տոկոսը, որը գերազանցեց առողջապահության, կրթության, բնակարանային շինարարության և սոցիալական ապահովագրության վրա կատարված ֆեդերալ ու տեղական ծախսերի ողջ գումարը: Այդ ուժերի կամքով, ստանձնելով համաշխարհային ժանդարմի դեր, ԱՄՆ-ը ավազակային պատերազմ է մղում Վիետնամում, կազմակերպում ագրեսիվ բլոկներ և աջակցում դրանց, բազմաթիվ ռազմական բազաներ է պահում ամբողջ աշխարհում: Նրանց բացահայտ կամ գաղտնի համաձայնությամբ վայրագորեն հետապնդվում են ամերիկյան դեմոկրատները, քաղաքներն ու շրջանները դառնում այլախոհների դեմ ուղղված մասսայական պատժիչ գործողությունների ասպարեզ, իսկ այն քաղաքական լիդերները, որոնք սկսում են խանգարել ռեակցիայի պլաններին, ճանապարհից հեռացվում են ըսպանության միջոցով:

Անտարակույս, ամերիկյան կապիտալիզմը դրսևորել է արտասովոր դինամիզմ: ԱՄՆ-ը դարձել է աշխարհի առաջին արդյունաբերական երկիրը, որն արտադրության մասշտաբներով և կուտակած հարստությամբ գերազանցել է մյուս երկրներին: Նրա խանութները լեփլեցուն են պարենով և այլ ապրանքներով: Դա հանրահայտ է, բայց հանրահայտ է նաև մի այլ բան: Միացյալ Նահանգները չեն կարող կամ չեն ուզում կուշտ կերակրել իրենց գրեթե 26 միլիոն քաղաքացիներին, որոնք գորշ կյանքով են ապրում պաշտոնապես սահմանված «աղքատության սահմաններում»: Անգլիացիներին, գերմանացիներին, իտալացիներին, սկանդինավցիներին «վերանձնելով» որպես ամերիկացիներ, նրանք, կամա թե ակամա, դեռ առան 22 միլիոն նեգրերի դրամային, որոնք, ըստ էության, ազգից դուրս են մնացել: Միացյալ Նահանգների գովաբանված դեմոկրատական հաստատությունները չեն կարող կամ չեն ուզում հաղթահարել հանցագործության հրեշավոր խրախճանքը, հոգեկան հիվանդությունների և հաշիշամոլության աճը, որոնք ազգային աղետ են դարձել:

Հասարակության և անհատի անլուծելի կոնֆլիկտն այսօրվա Ամերիկայում ստանում է ավելի ու ավելի խոր և ողբերգական բնույթ: Մոնոպոլիաների իշխանությունն ազգին զրկում է իդեալներից, այլանդակում և ավերում մարդու հոգևոր աշխարհը: Գոյության համար մղվող հյուծիչ պայքարում, ենթարկվելով մշտական բարոյական ճնշման, մարդը սուր հակասության մեջ է ընկնում ողջ կենսաձևի հետ: Ճգնաժամն այնքան խոր է ու ակներև, որ Ամերիկայի կառավարող դասակարգը հարկադրված է հրապարակորեն ընդունել այն:

Ռ. Նիքսոնը երկու տարի առաջ ԱՄՆ-ի պրեզիդենտի պոստն ստանձնելու առթիվ արտասանած իր ճառում ասաց. «Մեկ երրորդ դար սրանից առաջ կանգնած լինելով հենց այդ նույն տեղում, Ֆրանկլին Դելանո Ռուզվելտը դիմեց տնտեսական դեպրեսիայից ավերված և սարսափով համակված երկրին: Վերլուծելով երկրին հասած աղետները, նա կարող էր ասել. «Փա՞ռք աստծո, դրանք վերաբերում են միայն նյութական իրերին»: Մեր այժմյան ճգնաժամը հակադիր բնույթի է:

Մենք տեսնում ենք, որ մենք հարուստ ենք ապրանքներով, բայց աղքատ ենք հոգով. զարմանալի ճշգրտությամբ հասանք Լուսնին, բայց կատաղի տարաձայնությունների զոհ ենք այստեղ, երկրագնդում:

Մենք պատերազմի գերին ենք և կարիք ունենք խաղաղության: Մենք տառապում ենք պառակտումից և կարիք ունենք միասնության: Մենք մեր շուրջը տեսնում ենք մի կյանք, որը նպատակի կարիք է զգում: Մենք տեսնում ենք այն խնդիրները, որոնք պետք է կատարել, որոնք սպասում են այնպիսի ձեռքերի, որ կարող են կատարել դրանք:

Հոգևոր ճգնաժամի համար մենք պետք է գտնենք հոգևոր պատասխան»:

Վերջին ժամանակներս ԱՄՆ-ում ավանդական է դարձել, որ յուրաքանչյուր նոր պրեզիդենտ, ընդունելով կառավարման ղեկը, անհրաժեշտ է համարում այս կամ այն ձևով անել հասարակական կարծիքին: Ջ. Քենեդին իր ժամանակ խոստացավ ամերիկացիների առջև բացել «նոր բնագծեր», Լ. Ջոնսոնը՝ կառուցել «մեծ հասարակություն», Ռ. Նիքսոնը



մարտնչում է հոգևոր ճգնաժամը հաղթահարելու համար: Հայտարարությունների պրոպագանդիստական ասպեկտն ակներև է: Բայց, այնուամենայնիվ, Նիքսոնի բերած ասույթը հատկանշական է:

Տարիներ շարունակ ամերիկյան պրոպագանդան աշխարհին հավաստիացնում է, որ հենց ԱՄՆ-ն է իր ձեռքում պահում երկրային դրախտի՝ մասսայական սպառման հասարակության բանալին, գլխավորում մարդկության երթը դեպի «տեխնիկայի թագավորության դարը», որտեղ ինդուստրիալ զարգացման և գիտա-տեխնիկական առաջընթացի շնորհիվ սոցիալական հակասություններն ինքնաբերաբար ջնջվում են, գաղափարախոսության անհրաժեշտությունն ինքնին վերանում է: Տնտեսական, քաղաքական և սոցիալական գործոնների ամբողջ կոմպլեքսի բարդ փոխներգործության վերլուծությունը ամերիկյան իմպերիալիզմի ջատագովները փորձում են նենգափոխել հետևյալ չափազանց պրիմիտիվ սխեմայով. որքան բարձր է ինդուստրիալ զարգացման մակարդակը, այնքան շատ են ապրանքները, որքան շատ են ապրանքները, այնքան բարձր է մասսայական սպառման մակարդակը, որքան բարձր է այդ մակարդակը, այնքան թույլ են սոցիալական հակասությունները, այնքան պակաս է գաղափարական պայքարի անհրաժեշտությունը: Վերջ ի վերջո այդ հասկացությունները պետք է բոլորովին անհետանան, ասես լուծվելով «ընդհանուր բարօրության պետության» մեջ: Եթե այդ այդպես է, ապա, նրանց «տրամաբանության» համաձայն, ԱՄՆ-ը, որն ունի ամենահզոր ինդուստրիալ բազա, բոլորից շատ էլեկտրոնային-հաշվիչ մեքենաներ, և կուտակել է ամենից ավելի շատ ապրանքներ, իբր, բոլոր հիմքերն ունի հավակնելու մնացած աշխարհի գաղափարական լիդերը դառնալու, յուրատեսակ չափանիշ լինելու մյուս երկրների համար: Եվ ահա ինքը՝ ԱՄՆ-ի պրեզիդենտը, հարկադրված է այդ սխեման, ըստ էության, անհիմն համարել:

Արդյունաբերական զարգացման բարձր մակարդակը համաշխարհային կապիտալիզմի գլխավոր միջնաբերդում մինչև այժմ մազաչափ անգամ չի բթացրել ամենասուր սոցիալական անտագոնիզմները երկրի ներսում, չի թուլացրել նրա հակասություններն արտաքին աշխարհի հետ: Գաղափարական խոր կոնֆլիկտներն այսօր ծվատում են ամերիկյան հասարակությունը, մյուս կապիտալիստական երկրներում խախտում հավատն ամերիկյան ապրելակերպի նկատմամբ:

«Այն տասնամյակը, որի ընթացքում սկսվեցին տիեզերական թռիչքները և առաջին անգամ մարդուն պատվաստեցին ուրիշի սիրտը, տասնամյակ, որի ընթացքում բացահայտվեց մարդկային ժառանգականության մեխանիզմը և ստեղծվեց էլեկտրոնային-հաշվիչ սարքերի մի ամբողջ բանակ, այնուամենայնիվ, ոսկե տասնամյակ չէր,— հոռետեսորեն արձանագրում է արևմտագերմանական «Շպիգել» հանդեսը,— եթե դրա վերջում... երկրագնդի ամենահզոր ինդուստրիալ երկիրը մինչև հիմքը ցնցվում է հուզումներից ու բռնությունից և միլիոնավոր պատանիներ ու աղջիկներ մասնակցում են բողոքի ցույցերին կամ փորձում մոռացում գտնել հաշիշի և մարիխուանի առաջ բերած երազներում»: Այսպես են բնութագրվում վաթսունական թվականների արդյունքները:

Իսկ ո՞ւր է այն երաշխիքը, որ այդ դրությունը դեպի լավը կփոխվի, ասենք, յոթանասնական թվականներին կամ քիչ ավելի ուշ: Իհարկե, ԱՄՆ-ը կարող է է՜լ ավելի առաջ ընթանալ ինդուստրիալ զարգացման բնագավառում, կառուցել դարձյալ հազարավոր էլեկտրոնային-հաշվիչ մեքենաներ, բայց դրանից արդյոք ավելի բովանդակալի՞ց կդառնա ամերիկյան քաղաքացիների կյանքը և դա կապիտալիզմի համար կավելացնի՞ ժողովրդական մասսաներին գրավելու ունակ գաղափարներ:

Ամերիկյան իմպերիալիզմի գաղափարական-քաղաքական խոր ճգնաժամը ողջ կապիտալիստական հասարակության գաղափարական-քաղաքական դեգրադացիայի առավել խտացված արտահայտությունն է:

Այն հասարակարգը, որը շարունակ անտագոնիստական հակասություններ է ծնում և իր գաղափարական զինանոցում դրանք լուծելու ոչ մի արմատական ծրագիր չունի, դատապարտված է պատմության կողմից և պետք է անհետանա: Բայց, ինչպես ամեն մի գիշատիչ, իմպերիալիզմը մտադիր չէ ձեռքից բաց թողնել իր ավարը: Ընդհակառակը, նա շարունակ ձգտում է նորանոր զոհեր որսալ:

Հասունացած սոցիալական ու քաղաքական պրոբլեմները լուծելու անկարողությունը կապիտալիստական հասարակությանն ավելի է փակուղու մեջ դնում, որից նա փորձում է ելք գտնել աշխատավոր մասսաների նկատմամբ բռնությունն ավելի խստացնելով, գործադրելով վերջինիս ամենածայրահեղ ձևերը, որպիսին պատերազմն է:

Բուրժուազիայի տիրապետության երեք ու կես հարյուրամյակի ընթացքում մարդկությունը պատերազմներում կորցրել է ավելի քան 100 միլիոն մարդ: Միայն երկու համաշխարհային պատերազմներում զոհվել է ավելի քան 60 միլիոն մարդ և 110 միլիոն էլ դարձել են հաշմանդամներ: Ներկայումս աննախընթաց չափերով բորբոքելով սպառազինությունների

մրցավազքը, իմպերիալիզմը պատրաստում է նոր պատերազմ, այդ նպատակի համար օգտագործելով նյութական ռեսուրսների մեծ մասը և մարդկային հանճարի նորագույն գիտատեխնիկական նվաճումները:

Բուրժուական գաղափարախոսները, որոնք չեն կարողացել ոչ պատերազմների ծագման պատճառները բացահայտել, ոչ էլ դրանք կանխելու համար կոնստրուկտիվ առաջարկներ անել, ներկայումս կամ փորձում են ժողովուրդների գիտակցությունը թմրեցնել այնպիսի միամիտ առասպելներով, ինչպես «վախի հավասարակշռման» կոնցեպցիան, կամ էլ կանգնում են ագրեսիայի քաղաքականության արդարացման, սպառազինությունների մրցավազքի և իմպերիալիզմի էկոնոմիկայի անկապտելի հատկանիշը դարձած ռազմականացման պաշտպանության դիրքում: Հասկանալի է, որ ժողովուրդները չեն կարող համաձայնվել այդ մարդատյաց դիրքորոշման հետ և վճռականորեն մերժում են այն:

Այսպիսով, արդիականության բոլոր արմատական պրոբլեմներում իմպերիալիստական մոնոպոլիաների և աշխատավոր մասսաների, այսինքն՝ իմպերիալիստների մի չնչին խմբի և երկրագնդի բնակչության հսկայական մեծամասնության դիրքավորումները բացարձակապես անհամատեղելի են: Այդ օբյեկտիվ հողի վրա ձևավորվում է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար ժողովուրդների մղած պայքարի հակաիմպերիալիստական հզոր ճակատը:

ԿՅԱՆՔԸ ջարդուփշուր է անում բուրժուական պրոպագանդայի տարածած առասպելը՝ մեր օրերում հասարակական կյանքի «ապագաղափարայնացման» մասին: Բազմաթիվ փաստերը և, ամենից առաջ, կապիտալի երկրներում տեղի ունեցող դասակարգային մարտերի աճող լարվածությունը, ականատես վկայում են, որ աշխատավորական զանգվածները ո՛չ միայն մերժում են իմպերիալիստական քաղաքականությունը, այլև ակտիվ պայքարում են դրա դեմ, ոչ միայն աճող հետաքրքրություն են ցուցաբերում կոմունիստական աշխարհայացքի հանդեպ, այլև զինվում են նրանով:

Աշխարհի ողջ հասարակական պրակտիկան հաստատում է, որ արդի դարաշրջանում միայն գիտական կոմունիզմի տեսությունն է պատասխան տալիս արդիականության արմատական պրոբլեմներին: Մարքսիզմ-լենինիզմի գաղափարական դրոշի ներքո սովետական ժողովուրդն անցել է փառապանծ ուղի և համաշխարհային-պատմական հաղթանակներ ձեռք բերել տնտեսական, քաղաքական ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում: Մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո կոմունիստական կուսակցությունները սոցիալական առաջընթացի համար մղվող պայքարի գործնական ծրագրեր են մշակում: Արդի բոլոր քաղաքական կուսակցություններից միայն կոմունիստական կուսակցություններն են պարզորոշ պատասխաններ ունեն այն հարցերին, թե ինչպես ապահովել միջազգային անվտանգությունը, ինչպես հասնել ազգային ազատագրման, արդյունավետ պայքար մղել մոնոպոլիաների բռնացման դեմ, ի՞նչ անել, որպեսզի կանխվի իմպերիալիզմի՝ մարդկությանը ջերմամիջուկային պատերազմի հորձանուտը նետող վերջին և ամենասոսկալի ոճրագործությունը:

Մարքս-լենինյան գաղափարների մեծ ու անհաղթահարելի ուժն այսօր այն է, որ դրանք, արտացոլելով ժողովրդական մասսաների արմատական շահերը, բազմակողմանիորեն ընտուգվել են կյանքի քուրայում և այժմ հենվում են հզոր նյութական հիմքի վրա: Գիտական կոմունիզմի գաղափարները հաղթանակի հզոր են դառնում, քանի որ նրանց կողմն է աշխատավոր ժողովրդի իշխանության ուժն այն երկրներում, որտեղ սոցիալիզմը դարձել է ռեալ իրականություն, նրանց կողմն են կապիտալիստական երկրների աշխատավորները, որոնք շարունակ ամրապնդում են իրենց գաղափարական ու կազմակերպական միասնությունը, նրանց կողմն են հակաիմպերիալիստական ազգային-ազատագրական շարժումները, որոնք ստանում են առավել հզոր թափ և ձեռք բերում իրենց պայքարի նպատակների ավելի մեծ պարզորոշություն:

Սովետական ժողովուրդը և Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, դիմավորելով իրենց XXIV համագումարը, հըպարտ են, որ, բարձր են պահում մարքսիզմ-լենինիզմի գաղափարական դրոշը, գլխավորում են մարդկության կոմունիստական ապագայի համար մղվող մեծ պայքարը:

«Международная жизнь», № 2, 1971.

# ԸՆԴԴԵՄ ԱՆԿՈՒՄԱՅՆՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԵՏԱԴԻՄՈՒԹՅԱՆ

Բ. Տ. ՅՈՒԶԲԱՇՅԱՆ

Գաղափարական պայքարի ժամանակակից էտապում, երբ իմպերիալիստական բուրժուազիան բացարձակ հետադիմությունը քաղաքական բնագավառում միահյուսում է տեսական մտածողության և արվեստի ու գրականության խորացող անկման հետ, շատ ավելի էական նշանակություն են ստանում իդեալիստական փիլիսոփայության և գեղագիտական մտքի դեմ սկզբունքային պայքարի հարցերը:

«Правда»-ն իրավացիորեն նկատում է, որ բուրժուական ժամանակակից անկումային գրականության հարցերը «հնարավոր չէ քննարկել առանց նրա գաղափարական-գեղագիտական և սոցիալ փիլիսոփայական պլատֆորմի կոնկրետ վերլուծության» («Правда», № 48, 1969 թ.):

Բուրժուական գաղափարախոսության մեջ, ինչպես և արվեստի ու գրականության բնագավառում տեղի ունեցող ճգնաժամը հետևանք ու արտահայտություն է պատմական այն վիճակի, որն այժմ ապրում է կապիտալիզմի համաշխարհային սիստեմը: Զգալով անխուսափելի անկումը, իմպերիալիստական բուրժուազիան դիմում է ամեն միջոցի՝ ֆիզիկական հաշվեհարդարների, կրոնամիստիկական քարոզների, ռասայական մարդատյացության ու անցյալի արժեքները զեղծելուն: Կապիտալիստական աշխարհում վրա է հասել մի այնպիսի պատմական պահ, երբ իշխող բուրժուազիան, աճող ու զարգացող հեղափոխական ազատագրական շարժումների և սոցիալիզմի օրավուր աճող հզորության հանդեպ տածած երկյուղից, պաշտպանում է ամեն մի հետամնաց, մահացող, միջնադարյան երևույթ: «Զառամյալ բուրժուազիան միանում է իր դարն ապրած ու ապրող բոլոր ուժերի հետ, որպեսզի տատանվող վարձու ստրկությունը պահպանի», գրում է Լենինը (տե՛ս Երկեր, հ. 19, էջ 100):

Բուրժուական արվեստի ու գրականության անկման ժամանակակից փուլը գերազանցապես արտահայտվում և կոնկրետանում է մոդեռնիզմ ընդհանուր անվան տակ, որում, սակայն, իրարից զանազանվում են լոկ մասնակի, ոչ արմատական տարբերություններ ունեցող դպրոցներ, խմբավորումներ և հոսանքներ: Այդ տարատեսակություններից են սյուռռեալիզմը, էկզիստենցիալիզմի իդեալիստական սիստեմի տեսական հիմքի վրա բարձրացող արվեստը, լետրիզմը, դադաիզմը, սուպերգրաֆիզմը, աբստրակցիոնիզմը, իմպրեսիոնիզմը և այլն:

Անկումայնության բազմազան նրբերանգները, անկասկած, ունեն աշխարհաճանաչողության և իրականության գեղարվեստական ընկալման իրենց

մասնակի ինքնատիպությունները: Ավելին, միևնույն հոսանքին և ուղղությանը պատկանող առանձին հեղինակների մոտ անկման և հետադիմականության միտումներն ու մոտիվները տարբեր ուժով ու խորությամբ են արտահայտվում: Արվեստի ու գրականության մեջ նման երևույթներն անխուսափելի են: Սակայն այդ հակասությունները չէ, որ բնութագրում են ժամանակակից դեկադանսի ընդհանուր ուղղությունը, մասնավորապես իմացաբանական առումով:

Մոդեռնիզմի գրականության, նրա տեսական գեղագիտական բազմազան սիստեմների մեջ շատ ավելի նշանավոր են էկզիստենցիալիզմը, աբստրակցիոնիզմը և սյուրռեալիզմը: Փիլիսոփայական-հոգեբանական տարբեր ուսմունքների ազդեցության առումով, հատկապես ամերիկյան իրականության մեջ, նշանակալից են ֆրեյդիզմն ու պրագմատիզմը՝ միավորված շոպենհաուերականության, նիցշեականության և այլ ռեակցիոն փիլիսոփայական հոսանքների հետ:

Արվեստի բուրժուական տեսության ժամանակակից տարբեր ուղղությունները, գեղագիտական տարբեր սիստեմները, վերջին հաշվով, քարոզում են արվեստի անջատումը ռեալ իրականությունից, խեղաթյուրում նրա էությունը, ջատագովում իռացիոնալիզմը, մերժում բանականությունն ու տրամաբանականն արվեստի մեջ: Դրանով իսկ բացառվում են արվեստի և գրականության իմացաբանական բովանդակությունը և գեղագիտական էությունը, սահմանափակվում իրականության արտացոլման նրա հնարավորությունները: Ժամանակակից մոդեռնիզմի տեսաբանները մերժում են ռեալիզմը և ռեալիստական ճշմարտությունը, հաստատելով, թե արվեստը գործ չունի իրական ու ռեալ կեցության հետ: Ըստ նրանց, այդ ամենը շատ «կոպիտ ու պարզունակ է»: Արվեստի «աշխարհն» ուրույն է, որը կարող է լոկ հակադիր լինել իրականությանը և ոչ երբեք դառնալ նրա համապատասխան արտացոլումը: Այս տեսակետից միանգամայն անսքող է արտահայտվում Պիեռ Բուադեֆրը: Ժամանակակից գաղափարների բառարանում զետեղված իր «Ձևերի նոր լեզուն» հոդվածում նա այն միտքն է արտահայտում, թե մոդեռնիզմը հրաժարվում է ճշմարտությունից, գեղեցիկից, բարուց, բանականությունից ու բնությունից: «...Ժամանակակից արվեստը,— գրում է նա,— ավարտել է... առարկայի քայքայումը... իմպրեսիոնիզմը տարաբաժանում է մատերիան, կուբիզմն այն պայթեցնում է, աբստրակցիան այն վերցնում է փակագծի մեջ (Критика основных направлений современной буржуазной эстетики, М., 1968 г., стр. 3—4):

Անկումային արվեստի և գրականության ժամանակակից բոլոր տարատեսակություններին բնորոշ են ծայրաստիճան վերացականությունը և հոգու սուբյեկտիվիստական ըմբռնումը: Ժոզեֆ Էմիլ Մյուլերը Ժամանակակից արվեստը գրքում այն կարծիքն է պաշտպանում, թե արվեստը ստեղծում է իր օբյեկտն ու բովանդակությունը և ոչ թե արտացոլում ռեալ իրականությունը՝ իր բազմազան դրսևորումների մեջ: Նա գտնում է, որ սկսած իմպրեսիոնիստների գործունեությունից, արվեստի մեջ շատ ավելի նկատելի է «հոգու ստեղծումը, քան արտաքին աշխարհի արտացոլումը» (նույն տեղը, էջ 4):

Այս ծայրաստիճան սուբյեկտիվիզմը ստեղծագործող անհատին իրավունք է վերապահում աղճատելու, աղավաղելու աշխարհն արվեստի մեջ, ստեղծագործական պրոցեսում վերաձևելու և ձևափոխելու այն՝ ինչպես ինքն է կամենում և անգամ մերժելու ու բացասելու այն: Ֆրեյդի հետադիմա-



կան ուսմունքի հետևորդ Ֆ. Ալեքսանդերն առանց որևէ սեթևեթանքի գրում է, թե ժամանակակից արվեստի համար հիմնականը պետք է լինի և է օբյեկտիվ ռեալականության մերժումը կամ առնվազն նրա աղավաղումն ու աղճատումը: Արտացոլումը ժամանակակից արվեստում, ըստ նրա, «իրերի ագրեսիվ ժխտմամբ իրականության... արմատական վերաձևափոխումն է» (նույն տեղը):

Բուրժուական գաղափարական հետադիմության և անկումայնության արտահայտություն է էկզիստենցիալիզմը, որը դեռևս անցյալ դարի կեսերին ձևավորեց դանիական մտածող Կերկեգորը:

Կերկեգորյան իդեալիզմն իր արտահայտությունն ստացավ նրա հետևորդ էկզիստենցիալիզմի ոչ անհայտ ներկայացուցիչ Կ. Յասպերսի գեղագիտական սկզբունքներում: Նա անվերապահորեն որդեգրեց էկզիստենցիայի կերկեգորյան այն ըմբռնումը, թե իբր վերջինս սինթեզում է վախճանականն ու անվախճանը, վերջավորն ու անսահմանը, ժամանակավորն ու հավիտենականը: Կերկեգորի, Յասպերսի և այլ էկզիստենցիալիստների համար էկզիստենցիան անհատի «ներքին կեցությունն է», որը հակադիր է արտաքին, ըստ նրանց, «երևութային» կեցությանը: Սուբյեկտիվ իդեալիզմի ավելի նրբին, առավել խճողված դրսևորում և դրա անմիջական կապը կրոնի աստվածային նախասկզբի դոգմատիկ հայացքի հետ՝ ահա Յասպերսի տեսությունը բովանդակող միջուկը: Իր Փիլիսոփայություն երկասիրության մեջ նա բացահայտորեն քարոզում է իրականության և արվեստի անխուսափելի անջատվածությունը:

Էկզիստենցիալիզմի սուբյեկտիվ իդեալիստական իմացաբանության հիմնական սկզբունքները արվեստի ու գրականության, գեղագիտության բնագավառում շատ ավելի որոշակի ու արմատականորեն հիմնավորեց XX դարի գերմանացի փիլիսոփա Մարտին Հեյդեգերը: Արդեն 20-ական թվականներին Հեյդեգերը հիմնադրեց էկզիստենցիալիզմի փիլիսոփայական իր սիստեմը, որը մասնավորապես շարադրեց Կեցությունը և ժամանակը գրքում: Նույնացնելով փիլիսոփայությունը արվեստին, նա միաժամանակ վերջինս բարձր էր դասում: Արվեստն ու փիլիսոփայությունը նույնանում են, որովհետև երկու դեպքում էլ սուբյեկտն է ստեղծում ճշմարտությունը: Սակայն, դրանք հակադրվում են ենթագիտակցականի տեսակետից: Հեյդեգերը նույնպես անգիտակցականը համարում է արվեստի ներքին էությունը: Հեյդեգերյան էկզիստենցիալիզմը ելնում է այն բանից, թե միակ ճշմարիտ կեցությունը այնկողմնայինի, տրանսցենդենտալի խորհրդավոր, մարդկային իմացության անիմանալի էությունն է: Հետևաբար այն յուրաքանչյուր փիլիսոփայության, ինչպես և պոեզիայի էությունն ու բովանդակությունն է: Այստեղ իրարից որոշակիորեն սահմանազատվում են գոյի և կեցության կատեգորիաներն ու հասկացությունները: Կեցության էությունն ամբողջանում է ոչ թե օբյեկտիվ, իրական աշխարհի ռեալ գոյությամբ, այլ «գոյություն չունեցողի» կամ ոչնչի էությամբ: Հեյդեգերյան էկզիստենցիալիզմի համար միակ կեցությունը կարող է լինել գոյություն չունեցողի կեցությունը, որը հնարավոր չէ ըմբռնել ու հասկանալ, բայց միայն նրանով է հնարավոր դառնում գոյություն ունեցողի կամ գոյի էությունը: Կեցությունը,— ասում է Հեյդեգերը,— շատ ավելի լայն է ու ընդարձակ, քան գոյը և այն շատ ավելի մոտ է մարդուն, քան յուրաքանչյուր գոյ: Չնայած դրան, «մարդուն ամենամոտ կեցությունը» չի տրվում մարդուն, չի կարող ըմբռնվել ու հասկացվել նրա կողմից: Մարդն իրականում միշտ շաղկապված է միայն գոյին: Այն, ինչ էական է, մարդուն մոտ է լոկ ենթագիտակցական.

իռացիոնալ հակումների անմեկնելի էության միջոցով, բայց ոչ երբեք ռացիոնալ հիմունքների շնորհիվ։ Մարդը միշտ կարող է ըմբռնել ոչ էականը, բայց ոչ երբեք էականը։

Հեյդեգերյան էկզիստենցիալիզմը հիմնականում ներկայանում է որպես քրիստոնեական եկեղեցու կրոնամիստիկական հոսանքի մի տարատեսակ՝ փիլիսոփայական և գեղագիտական զգեստավորմամբ։ Այն ավելի ակներև է դառնում, երբ համեմատվում է եկեղեցու հոգևոր հայրերի քարոզների և պատվիրանների հետ։ Քրիստոնեական ուսմունքի ոչ անհայտ դեմքերից էկհարտը մինչ Հեյդեգերն արդեն իր Քարոզներ և դատողություններ գրքում նույն սկզբունքներն է արտահայտում, բացահայտ օգտագործելով կրոնական տերմիններն ու հասկացությունները։ Աստված, ասում է էկհարտը, դա մի էակ է, որին շատ ավելի ճիշտ ու լիակատար կարելի է ճանաչել ոչնչի միջոցով։ Նման ճանաչումը հնարավոր է դառնում այն դեպքում, երբ մարդկային, ընկալելու ունակ հատկությունները դադարում են այլևս շփվել իրերի հետ և առաջին անգամ կապվում են աստծո, կամ ավելի ճիշտ, աստվածայնության հետ, էկհարտը նկատում է, թե ոչինչը սկիզբ չունի և մարդկային հոգին ավելի լավ ու հուսալի միջոց չունի աստվածային էությանը հասնելուն, քան ոչինչն է։

Այս համառոտակի վերլուծությունը հաստատում է այն հետևության ճըշմարտությունը, թե էկզիստենցիալիզմը կրոնա-միստիկական ուսմունքից շատ էլ հեռու չի անցնում։

Կերկեգորի, Յասպերսի, Մարսելի, Հեյդեգերի և իդեալիզմի այլ ներկայացուցիչների գեղագիտական հայացքները ելնում են այն բանից, թե քանի որ միակ ռեալ կեցությունը ոչինչն է, որը երբեք չի կարելի բանականորեն, ռացիոնալի ուղիով ըմբռնել ու հասկանալ, և որը, սակայն, տրանսցենդենտալի էությանը հասնելու միակ միջոցն է, ապա արվեստի ու գրականության համար էականը, գուցե և միակը, դառնում է գաղտնիքը կամ գաղտնայնությունը, որն անհնար է ճանաչել։ Պոեզիայի բնագավառում գերագույն խնդիրը հանգում է այն բանին, որ գաղտնին պահպանվի իր ամբողջության մեջ որպես այդպիսին և այդ ձևով ներկայացվի։ Նման խնդրի իրականացումը բացառվում է ռացիոնալ մտածողության ուղիով, որովհետև բանականությունը միշտ ձգտում է թափանցել իրերի ու երևույթների մեջ, բացահայտել ու ճանաչել այնտեղ թաքնված էությունը։ Այս դեպքում միակ նշանակալից միջոցը մնում է արվեստը, մասնավորապես պոեզիան, քանի որ, ըստ Հեյդեգերի, այն անմիջապես կապվում է լեզվի հետ, իսկ լեզուն կեցության միակ գոյատեղին է։ Որպես այդպիսին, լեզուն կոչված է ոչ թե բացահայտելու էությունները, այլ ընդհակառակը, շղարշելու դրանք։ Էկզիստենցիալիզմի հեյդեգերյան գեղագիտության համար, ինչպես զուտ փիլիսոփայության, այնպես և արվեստի մեջ, խնդիրը հանգում է կեցության բացահայտմանը ոչնչի միջոցով, իրականի իմացությանը՝ անիրականի միջոցով։ Այս առումով պոեզիայի բնագավառում էական ու վճռական է լռությունը։ Գեղարվեստական ստեղծագործության մեջ արվեստի լեզվով ասվածը կարելի է ընկալել միայն տակավին չասվածի միջոցով, նրա միջոցով, ինչ ընդհանրապես հնարավոր չէ ասել և չպետք է ասվի։

Անկումային արվեստի ներկայացուցիչների համար լռությունը պոեզիայի գերագույն հատկանիշն է, գեղարվեստական արտահայտչական միջոցների գերունակ տեսակը։ Այն արվեստի անմեկնելի էության դրսևորումն է։

Էկզիստենցիալիզմի գեղագիտությունն իր հիմնական գծերով դարի վեր-



ջին ձևավորված սիմվոլիզմի տեսական, գեղագիտական սկզբունքների մի նոր, առավել նրբացած և սպեկուլյատիվ արտահայտությունն է։ Տակավին սիմվոլիզմի նշանավոր տեսաբաններն ու պոետները՝ Ստեֆան Մալարմեն, Մորիս Մետեռլինգը, Արթուր Ռեմբոն, Պոլ Վեռլենը, Շառլ Մորեասը և այլոք, ինչպես տեսության բնագավառում, այնպես էլ ստեղծագործական պրակտիկայում դավանում ու քարոզում էին անհասկանալի խորհրդավորի, անմեկնելի ճակատագրայինի, գաղտնայնության և այլ սկզբունքներ։

Ինչ խոսք, մանրամասների մեջ էկզիստենցիալիզմը, որպես տեսական-գեղագիտական սիստեմ, սիմվոլիզմի և իդեալիստական գեղագիտության այլ սիստեմների հետ համեմատած, ունի իր ինքնատիպությունները։ Սակայն աշխարհաճանաչողության և նրա վերարտադրության հիմնական հարցում, ինչպես և գեղարվեստական արտացոլման սկզբունքներում նրանց միջև որակական որևէ տարբերություն չկա։ Իդեալիստական փիլիսոփայության տարբեր տարատեսակների և նրանց իմացաբանական հիմքի վրա ձևավորված ու ձևավորվող գեղագիտական սիստեմների նկատմամբ մարքս-լենինյան սկզբունքային վերաբերմունքի տեսակետից էականը մասնակի տարբերությունները չեն, այլ ներքին, սկզբունքային նմանությունը։

«Փիլիսոփայական իդեալիզմի այլատեսակությունների միջև,— ասում է Լենինը,— հազարավոր երանգներ են հնարավոր և միշտ կարելի է ստեղծել հազարումեկերորդ երանգը, և այդպիսի հազարումեկերորդ սիստեմիկի... հեղինակին կարող է կարևոր թվալ նրա տարբերությունը մնացածներից։ Մատերիալիզմի տեսակետից այդ տարբերությունները բոլորովին էական չեն։ Էական է ելակետը» (Երկեր, հ. 14, էջ 357)։ Լենինյան այս դրույթն ամբողջապես վերաբերում է նաև բուրժուական արվեստի բնագավառում գոյություն ունեցող ժամանակակից հոսանքներին։ Այդպիսիներից է աբստրակցիոնիզմը, որի տեսական-գեղագիտական սկզբունքները մշակվում են սկսած XX դարի երկրորդ տասնամյակից, մասնավորապես Վ. Վորինգերի (Աբստրակցիա և ներազդում), Վ. Կանդինսկու (Հոգեկանի մասին արվեստի մեջ), Պ. Մոնդրիանի (Նեոպլաստիզմ), Կ. Մալևիչի (Առարկայազուրկ աշխարհը) և այլ հեղինակների ու տեսաբանների մոտ։

Աբստրակցիոնիզմն իր բարդությունների և խճողվածությունների մեջ, վերջին հաշվով, միևնույն ռեակցիոն իդեալիզմի քարոզն է արվեստում։ Այն գտնում է, որ գոյություն ունեն միայն գաղափարները, իսկ առարկաներն ու իրերը լոկ նրանց կռահելի պատկերներն ու կերպարներն են։ Աբստրակցիոնիզմն անվերապահորեն հրաժարվում է առարկայական-նյութական աշխարհի օբյեկտիվ գոյության հնարավորությունից և արվեստի ու փիլիսոփայության մեջ ընդունում է միայն «զուտ գաղափարի» միահեծան գերիշխանությունը, աբստրակցիայի բացարձակ տիրապետությունը։ Աբստրակցիոնիզմի համար աբստրակցիան ամենևին նյութական աշխարհի, իրականության առարկայական կոնկրետությունից և նրա օբյեկտիվ շարժման պրոցեսից տրամաբանականի էական ընթացքով ամբողջացված ընդհանրացում չէ, որով մարդու համար կոնկրետանում է օրինաչափականի հայտնաբերումն ու ըմբռնումը։ Այն չի ընդունում «...աբստրակցիաներ, որոնք... համապատասխանում են աշխարհի՝ մեր իմացության իրական խորացմանը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 38, էջ 102)։

Աբստրակցիոնիզմի համար, ընդհակառակը, աբստրակցիան այն է, ինչ որևէ կապ ու հարաբերություն չունի օբյեկտիվ ռեալականության հետ և դրա

տոտալ բացառումն է։ Աբստրակցիոնիզմը բուրժուական տեսական մտածողության ժամանակակից անկման, դեպի իռացիոնալիզմը կատարած նրա ընթացքի արգասիքն ու մի նոր երանգի արտահայտությունն է։ Աբստրակցիոնիզմը ձգտում է արվեստն ու արվեստագետին անջատել սոցիալ-հասարակական կոնկրետությունից, անգամ բնությունից ու նրա ազդեցություններից։ Այս ուղղության համար բնութագրական է Կանդինսկու այն միտքը, թե անհրաժեշտ է բնության շրջանակներից հանել արվեստի էմանսիպացիային, և հնարավորություն տալ, որ նա ազատ ծավալվի սուբյեկտի ներքին էությունը որպես միակ անհրաժեշտություն ընդունելու հիմքից։ Էմանսիպացիան, գրում է Կանդինսկին, «պետք է տեղի ունենա ներքին անհրաժեշտության սահմաններում, իսկ բնության ձևերն այդ արտահայտությանը հաճախ սահմաններ են դնում. հետևաբար դրանք պետք է դեն նետել...» (Критика основных направлений современной буржуазной эстетики, М., 1968, стр. 49):

Բուրժուական գաղափարախոսության և արվեստի անկման ընդհանրական շղթայի օղակներից է սյուրռեալիզմը, որն իր իմացաբանական հիմքերով կապվում է փիլիսոփայական իդեալիզմի մի այնպիսի ռեակցիոն ուղղության հետ, որպիսին Շոպենհաուերի և Բերգսոնի ծայրահեղ հետադիմական, եկեղեցական կենսազուրկ միստիկայով տոգորված սիստեմն է։ Սյուրռեալիզմի քրեդոն պահանջում է, որ արվեստը հրաժարվի բանականի և տրամաբանականի իր էությունից, դեն նետի հնացած պատկերացումներն ու հասկացությունները, որոնք իրականության մեջ իրարից զանազանում են բարին ու չարը, գեղեցիկն ու հրեշավորը, ճշմարիտն ու անարդարացին։ Մարդկանց միջև եղած կապերի ու հարաբերությունների մասին մինչև այժմ ընդունված բոլոր պատկերացումներն ու մարդկային նորմերը պետք է մերժել որպես ոչ-պիտանի։ Այս կրքոտ բացասման մեջ սյուրռեալիստներն ավելի առաջ են անցնում և հասարակության կյանքում մերժում յուրաքանչյուր կարգ ու կանոն, օրինաչափություն։ Արվեստն ըստ նրանց, օրինաչափությունից զուրկ անկարգության իռացիոնալիստական արտահայտությունն է։ Սյուրռեալիստները ժառանգեցին շոպենհաուերյան այն ըմբռնումը, թե արվեստն իռացիոնալի արտահայտությունն է ֆանտազիայի միջոցով։

Սյուրռեալիստներն առաջ քաշեցին, այսպես կոչված՝ նոր ռեալականության տեսությունը, որը որևէ կապ չունի մարդկանց սոցիալական կյանքի հետ։ Դա մտքերի ու պատկերացումների, ֆանտազիայի ու իռացիոնալիզմի աշխարհն է։ Իրենց նոր ռեալականությամբ սյուրռեալիստները մերժում էին սոցիալական հակասությունների ռեալ գոյությունը, բացառում սոցիալ-դասակարգային յուրաքանչյուր պայքար։ Սյուրռեալիզմի նշանավոր ներկայացուցիչներից Ա. Բրետոնն իրենց մանիֆեստում ձևակերպել է այդ հոսանքի ուղղությունն ու նպատակները, գրելով, թե սոցիալական գործողությունների պրոբլեմն էական չէ, էականը մտքերի մեջ կատարվող հեղափոխության պրոբլեմն է։ Սյուրռեալիզմի ըմբռնողությամբ արվեստը բանական յուրաքանչյուր ազդեցությունից ազատ, զուտ գեղագիտական, ինտուիտիվ ակտ է և ոչ երբեք իրականության ճշմարտացի արտացոլում։

Սյուրռեալիստներն արվեստի աշխարհը համարում են բարձրագույն ռեալականություն, ուր մարդկային հոգու ենթագիտակցականի խորքերում գտնվող վատթար կրքերը հակասության մեջ են մտնում բանականության



հետ, այդ բախման մեջ հաղթանակ տանում և մարդուն մաքրում բանականի ազդեցությունից ու սահմանափակումներից։

Եթե իրականության գեղարվեստական արտացոլման իմացաբանական իր բովանդակության մեջ ժամանակակից բուրժուական անկումային արվեստի և գրականության բնութագրական կողմը դառնում է նյութական աշխարհի օբյեկտիվ գոյության բացասումը, բանականության տրամաբանական կարգավորվածության անվերապահ մերժումը և իռացիոնալիստականի լիակատար գերիշխանության քարոզը, ապա սոցիալական իր բովանդակության առումով՝ այն մերժում է հասարակական սոցիալական հակասությունները և օբյեկտիվ իմաստով դառնում գոյություն ունեցող բուրժուական սարկության պաշտպանություն։

Ժամանակակից մոդեռնիզմն արվեստի և գրականության բնագավառում բուրժուական աշխարհի հոգևոր կյանքում իշխող անկումային տրամադրությունների արտահայտությունն է։

Արդի անկումային արվեստը, իրոք, կանգնած է փակուղու առջև։ Պատահական չէ, որ նրանում ծայր են առնում անելանելիության, պեսիմիզմի և հուսալքության, կյանքի ոչնչության և այլ տրամադրություններ ու հայացքներ։ Եթե աշխարհը զուրկ է կարգից ու կարգավորվածությունից, ներքին, օբյեկտիվ օրինաչափություններից, ինչպես քարոզում է բուրժուական ժամանակակից տեսական միտքը, ապա աշխարհն ու կյանքն անիմաստ են, և ոչինչ ռեալ գոյություն չունի, բացի առանձին անհատի սուբյեկտիվ էգոիստական հակումներից, ուժեղի բնական տիրապետության անխուսափելիությունից։ Այս տեսակետից տիպական է կաթոլիկ Մորիակի ստեղծագործությունը, մասնավորապես նրա Կրակը երկրի վրա դրաման։ Հեղինակի ստեղծագործական խնդիրը դառնում է այն ամենի բացասումը, ինչ մարդկային է և մարդուն կապում է կյանքի հետ։ Եվ, որովհետև ամենից առաջ սերն է այդ ուժը, ապա հեղինակը քարկոծում է այն և քարոզում, թե մարդկանց միջև սեր գոյություն ունենալ չի կարող։ Սիրո գոյության ու հնարավորության հավատը պատրանք է և ինքնախաբեություն։ Ավելին, սիրո հնարավորության նկատմամբ հավատն ինքնին խիստ վտանգավոր է հենց այն տեսակետից, որ թուլացնում է աստծո նկատմամբ մարդու հավատը։

Երկնային խորհրդավոր ուժի նկատմամբ մարդու կույր հնազանդության և բռնության անխուսափելիության քարոզն անկումային գրականության մեջ հանգեցնում է հակահասարակական այն հայացքների գեղարվեստական մարմնավորմանը, թե մարդ որևէ առնչություն չունի սոցիալական իրականության մեջ գոյություն ունեցող հակասությունների հետ։ Սարսափների ու սարսուռների քաոսային գերիշխանությունից մարդուն կարող է փրկել միայն արվեստի կախարդական էությանը տիրապետող հզոր ու միակ պոետանհատը։ Այդ ամենազորության ու կախարդանքի գաղտնիքը պոետական խոսքի մեջ է, և ինքը պոեզիան ոչ այլ ինչ է, եթե ոչ խոսք, բառ։ Լեզուն ինքնին դառնում է գրականության և՛ բովանդակությունը, և՛ նպատակն ամբողջացնող ու սպառող գործոն, իսկ լեզվին տիրապետող բանաստեղծը՝ իրականության հետ կապ չունեցող ինչ-որ գերագույն, վերացական ռեալականություն ստեղծող արարիչ։

Բառի կախարդական ուժի նման ընդգծումը ֆորմալիզմի ծայրահեղ արտահայտություն է, որը գրականության մեջ բացառում է յուրաքանչյուր սոցիալական բովանդակություն, հասարակական կոչում ու նշանակություն,

իմացաբանական էությունը։ Այդ ամենին փոխարինում է միստիկական, բանականից զուրկ բարձրագույն ռեալականությունը, որը որևէ կապ չունի իրականության հետ և զուրկ է ռեալ բովանդակությունից։ Ռեալականի մերժումը պոեզիայի մեջ հասցնում է այն բանին, որ նրանում տիրապետող են դառնում անպտուղ ֆանտաստիկան ու անհավանական հրաշապատումները։

Ժամանակակից անկումային արվեստի իմացաբանության ռեակցիոն էության գեղարվեստական արտահայտության տեսակետից տիպական է մոդեռնիզմի ներկայացուցիչ Ռենե Շարի պոեզիան։ Նրա համար պոետին վայել միակ իրականությունն այն աշխարհն է, որը հնարավոր չէ որոշակի արտահայտել։ Բանաստեղծի խնդիրը մարդկային ռեալ խոհերի ու ապրումների պատկերումը չէ, այլ անսովոր պահերի և անհավանական ակնթարթների հաղորդումը։ Նրա համար ընդունելի է միայն ոչնչով իրար հետ չկապվող երևույթների ու իրերի, գծերի ու հատկությունների այնպիսի քմահաճ կապը, որով կարող է արտահայտվել միայն անհավանականն ու անսովորը։ Այս ուղիով, ըստ պոետի, հնարավոր է հայտնաբերել միստիկականի խորհրդավոր էությունը, կամ ավելի ճիշտ, կապվել նրա հետ։

Ռենե Շարը պոետական լեզվով արտահայտում է հենց նման քմահաճ կապերը, երբ նկատում է, թե ինքը «արևի պսակիկի մեջ նշմարում է զամբիկ և նրա մեզով հագեցնում իր ծարավը», կամ ճանապարհի «կեռմանը հիմա հանկարծ կելնի, արագ, ինչպես ծուխը և նրանում կորրվի «բարևը» ծռված, ինչպես փուշը» և ապա «ոչ մի թռչուն չի կամենում երգել հարցերի մացառուտներում» և այլն։ Այս անիմաստ, տրամաբանությունից զուրկ քմահաճ կապակցությունները, վերջին հաշվով, ոչ թե իրականության, մարդկային ռեալ կեցության ու տպավորությունների ճշմարտացի արտացոլումն են՝ այլ, ընդհակառակը, կոչված են խեղաթյուրելու, աղավաղելու ռեալականությունը՝ հանուն սուբյեկտիվ տպավորությունների ակնթարթային «երկարակեցության» հաղորդման։

Իմացաբանական հիմքով ժամանակակից անկումային գրականությունը շատ չի հեռացել եպիսկոպոս Բերկլիի սուբյեկտիվ իդեալիստական իմացաբանությունից։ Ինչպես Բերկլու և ընդհանրապես յուրաքանչյուր սուբյեկտիվ իդեալիստի մոտ, այնպես էլ Ռենե Շարի պոեզիայում առարկայական աշխարհը մարդուց անկախ, ընդհանրապես որպես այդպիսին գոյություն չունի։ Գոյություն ունեն միայն սուբյեկտիվ անհատի «զգայությունների կոմպլեքսները», գոյություն ունեն եսի կողմից ստեղծված և նրա կողմից ընկալվող հատկանիշներ, տպավորություններ, գաղափարներ և ուրիշ ոչինչ։ Էկզիստենցիալիզմը, աբստրակցիոնիզմը և այլ անկումային հոսանքներ իրենց իմացաբանական հիմքով ոչինչ նոր բան չեն տալիս, միայն նոր ձևով կրկնում են նախկինը։

Ինչպես XIX դարավերջի և XX դարասկզբի գրականության ու պոեզիայի, մասնավորապես սիմվոլիզմի, այնպես և ժամանակակից մոդեռնիզմի գեղարվեստական-ստեղծագործական վերարտադրության ու արտացոլման մեջ էական սկզբունքներից մեկն ամբողջի ու ամբողջականության մերժումն է, մասնակիի, մանրուքի, առանձին գծի ու հատկանիշի խորհրդանշանային նկարագրության առաջ մղելը։ Այս բանին հաճախ ռեալիստական բնույթ է տրվում, որովհետև շատ են խորանում մանրուքի ու մասի նատուրալիստական նկարագրության մեջ։ Դրությունը, սակայն, դրանով չի փոխվում։ Ընդհակառակը, որքան մանրուքն ավելի հանգամանալից է նկարագրվում ու ներկա-



յացվում, այնքան արտացոլումն ավելի է հեռանում առարկայի և երևույթի էության ու օրինաչափականի պատկերման սկզբունքներից, խեղաթյուրում ու կեղծում ճշմարտությունը։

Ժամանակակից անկումային պոեզիայում իրականության երևույթների ստեղծագործական վերարտադրությունն իրար է խառնում մետաֆիզիկական, անկիրք, սառը դատողությունը և առանձին մանրուքի բծախնդիր ու հանգամանալից նկարագրությունը։ Նման սկզբունքը, մի կողմից՝ հանգեցնում է օբյեկտիվ իրականության զգացողական կենդանության ու կոնկրետության մերժումին, մյուս կողմից՝ բանաստեղծության պոետական կառուցվածքի ամբողջականության ու միասնության խարխլման։ Մոդեռնիզմի այս հատկանիշների արտահայտության տիպական օրինակներից է Ֆրանսիս Պոնժի ստեղծագործությունը, ուր գեղարվեստական պատկերը կամ կերպարը չունի ոչ քնարական ներքին իմաստ, և ոչ էլ էպիկական ամբողջականություն։ Այստեղ, որպես պոեզիայի պարտադիր նախապայման, բացասվում է սոցիալական կեցությունը, և ընդունվում է միայն բնականը։ Այնուհետև բնականի կամ բնության երևույթների մետաֆիզիկական ընկալման ու մանրուքի չափազանց ընդգծման ու խորացման տեսադաշտում պատկերը զրկվում է դրսևորման ամբողջականությունից և կենդանի կոնկրետությունից։ Պոնժը ամենայն բծախնդրությամբ, հաճախ տաղտկության ու ձանձրույթի հասնող երկարաբանությամբ նկարագրում է անձրևի վայր իջնող կաթիլի թողած հետագիծը, ավազահատիկի ձևն ու գույնը, մեծությունն ու երանգավորումը։ Այդպիսով, նա աստիճանաբար հեռանում է էությունից և, վերջին հաշվով, մոռացության տալիս այն։

Այսպես իրականության արտացոլման գեղարվեստական ճշմարտությունը փոխարինվում է սուբյեկտիվ, անկապ ու կցկտուր տպավորություններով, «զգայությունների կոմբինացիաներով»։ Ճշմարիտ պոեզիայի հմայքի, նրա ներազդման ուժի գաղտնիքը քնարական քնքշանքի և փիլիսոփայական ներքին լրջախոհ վեհության դիալեկտիկական ներդաշնակ միասնությունն է, ուր կոնկրետանում է նրա գեղագիտական էությունը։ Հենց այս միասնությունն է, որ բացակայում է մոդեռնիստական ժամանակակից պոեզիայի մեջ։

Վերը բերված օրինակներն իրենց առանձնահատկություններով հաստատում են, որ ժամանակակից անկումային գրականության ու արվեստի մեջ ձևավորվող ուղղությունները՝ պատմության գիրկն անցած հակառեալիստական զանազան հոսանքների արդի դրսևորումներն են։

* * *

Անկումայնությունը գեղարվեստում ոչ միայն կապիտալիստական հարաբերությունների յուրատեսակ պաշտպանությունն է, այլև բուրժուական գաղափարախոսության անկման արտահայտությունը։ Շատ հեղինակներ իրենց մարդկային և պոետական անհատականությամբ սուբյեկտիվորեն հակադրվում են բուրժուական հասարակությանը։ Նրանք ամենայն անկեղծությամբ մերկացնում են կապիտալիզմի արատները, սակայն արվեստի իրենց ըմբռնմամբ հեռանում են կյանքից, իրականության գեղարվեստական ճանաչումից։

Սիմվոլիզմի շատ նշանավոր ներկայացուցիչների մոտ՝ Ռեմբո, Մետեռլինգ, Վեռլեն, Բոդլեր, Բրյուսով և այլն, արվեստն իր ներքին օրինաչափությունների ուժով հաճախ ընդվզում է իրերի ու հայացքների, մտայնությունների ու տրամադրությունների գոյություն ունեցող սիստեմի դեմ, և այդ պրոցե-

սում ստեղծվում են պոետական արժեքավոր ստեղծագործություններ, պատկերավորման միջոցների հարստություն, բանաստեղծական լեզվի մաքրություն, քնարական քնքշանքի մարմնավորման հարուստ ու գունագեղ երանգներ։ Խնդիրը դեկադանսի առանձին ներկայացուցիչների պոետական տաղանդի և սուբյեկտիվ ազնվության ու հումանիզմի մեջ չէ, այլ բուրժուական աշխարհի սոցիալ-հասարակական անհաշտելի հակասությունների խորացման, գաղափարական հետադիմության և հոգևոր անկման ու քայքայման մեջ է։ Այլ բան է, երբ արվեստի և գրականության ստեղծագործական պրակտիկան և նրա տեսությունը հաճախ չեն համընկնում, երբ գեղարվեստական փաստը հակադրվում է տեսական ընդհանրացմանը։

Սիմվոլիստական արվեստի տեսությունն իր ամբողջության մեջ, գեղագիտական իր հիմունքներով անմիջականորեն կապվում է սուբյեկտիվ իդեալիզմի հետադիմական փիլիսոփայության հետ, ելնում նրանից և հանդես գալիս որպես ռեակցիոն սիստեմ։ Սակայն միաժամանակ չի կարելի չնկատել, որ սիմվոլիստական պոեզիան ստեղծագործական իր պրակտիկայում, գեղարվեստական ծավալման ու կոնկրետացման մեջ, հաճախ խախտելով «տեսականի» շրջանակները, դուրս գալով նրա գերությունից, ստեղծել է արվեստի մնայուն արժեքներ։ Այս երևույթը խոսում է ոչ թե սիմվոլիզմի՝ որպես իրականության գեղարվեստական ընկալման և ստեղծագործական իմաստավորման սիստեմի հնարավորությունների մասին, այլ լոկ այն ճշմարտության մասին, որ արվեստի ներքին օրինաչափություններն իրենց ստեղծագործական ծավալման մեջ երբեմն հնարավորություն են ստանում դուրս գալու տեսության գերությունից և մի պահ ընթանալու իրենց բնական հունով։ Սիմվոլիստական պոեզիայի համընդհանուր ամբողջականության մեջ նման երևույթներ տեղի ունեցան Արթուր Ռեմբոյի, Շարլ Բոդլերի, Պոլ Վեռլենի, Բալմոնտի, շատ ավելի Վ. Բրյուսովի և այլ նշանավոր ներկայացուցիչների մոտ։

Նույն երևույթները նկատելի են նաև ժամանակակից էտապում։ Կարելի է հիշատակել հենց ֆրանսիական գրականության մեջ էկզիստենցիալիզմի նշանավոր ներկայացուցիչ Ժան Պոլ Սարտրի ստեղծագործությունը։ Իր տեսության մեջ, մասնավորապես Կեցություն ու չկեցություն երկում նա թեորիական իմացաբանական առումով հիմնականում մնում է իդեալիզմի շրջանակներում։ Սակայն, միայն դրանով չի կարելի բնութագրել այդ բարդ ու հակասական արվեստագետի ստեղծագործությունը։ Սարտրը Սատանան և աստված, Ճգնավորը Ալթանից դրամաներում և մասնավորապես Ազատության ճանապարհը վեպում պատռում է փիլիսոփայական-գեղագիտական սեփական սկզբունքների շրջանակներն ու արտացոլում ռեալ իրականությունը, հասնում ժամանակակից ճշմարտության արտահայտմանը։

Մեր հիշած այս առանձին երևույթները, որոնք չնայած եզակի չեն անկումային գրականության ընդհանրության մեջ, այնուամենայնիվ, այն բացառություններից են, որոնք կոչված են ոչ թե ժխտելու, այլ հաստատելու այն հակադիր օրինաչափությունը, թե դեկադանսն իր ամբողջության մեջ, ինչպես XIX դարի վերջին և XX դարի սկզբին, այնպես էլ ժամանակակից էտապում գեղարվեստական արտացոլման իր սկզբունքներով և իմացաբանական հիմքերով իմպերիալիստական բուրժուազիայի գաղափարական և հոգևոր համընդհանուր անկման արտահայտությունն է։ «Правда»-ն իրավացիորեն ընդգծում է մոդեռնիզմի նկատմամբ եղած յուրաքանչյուր անտարբեր վերաբերմունքի վնասակարությունը, գրելով, թե «...ցավոք մեր քննադատական գրականության մեջ էլ երբեմն իրեն զգալ է տալիս այդ արվեստի հետադիմական էության կամա թե ակամա մեղմացումը (№ 62, 1970)։



Մոդեռնիզմի ներկայացուցիչները ռեալիզմի և, մասնավորապես, սոցիալիստական ռեալիզմի դեմ իրենց պայքարը դիտում են որպես պայքար հանուն նոր ռեալիզմի՝ ռեալիզմի բարձրագույն էտապի։ Նման միտումի նպատակն է արդարացնել մոդեռնիզմը, փորձել այն դիտել որպես ժամանակակից արվեստի զարգացման մայրուղին բնութագրող ուղղություն և մեթոդ։ Այս տենդենցներն առավել կամ նվազ չափով հանդես են եկել մոդեռնիզմի տեսաբանների ու ներկայացուցիչների՝ Մոնդրիանի, Գաետոն Պիկոնի, Ջոն Դյուիի, Պիեր Բուադեֆերի, Ժոզեֆ-Էմիլ Մյուլերի, Ալեքսանդերի, Ալեն Ռոբ Գրիյեի, Ժակ Մարիտենի և այլոց մոտ։ Հիմնականում նույն տեսակետն է պաշտպանում նաև Սարտրը։ Նա փորձում է բանն այնպես պատկերացնել, թե իբր մոդեռնիզմը մեծ նվաճումների է հասել գեղարվեստական ձևի կատարելության մեջ, իսկ սոցիալիստական ռեալիզմի արվեստն ունի լոկ բովանդակության հարստություն։ Հետևաբար Սարտրն անհրաժեշտ է գտնում մոդեռնիզմի և սոցիալիստական ռեալիզմի միավորումը, որով, իբր, վրա կհասնի արվեստի ժամանակակից մեծ փուլը։

Անկախ այն բանից, թե ֆրանսիական նշանավոր գրողն ու փիլիսոփան սուբյեկտիվորեն ինչ միտումից է ելնում, նրա հայացքը էկլեկտիկական հակասության մեջ է միախառնում մի կողմից՝ բովանդակության և ձևի մարքս-լենինյան ըմբռնումը, մյուս կողմից՝ արվեստի, մասնավորապես սոցիալիստական ռեալիզմի արվեստի գաղափարական բովանդակության և նրա գեղարվեստական ձևի ու գեղագիտական էության միասնության առանձնահատկության հարցը։ Որ սոցիալիստական ռեալիզմը պետք է յուրացնի համաշխարհային արվեստի անցյալի և ներկայի շատ թե քիչ նշանակալի ձեռքբերումները, այդ միանգամայն օրինաչափ է ու անխուսափելի։ Սակայն այն չի կարող տեղի ունենալ ժամանակակից մոդեռնիզմի անկումային արվեստի ռեակցիոն սկզբունքների և սոցիալիստական ռեալիզմի միավորմամբ... Ընդհակառակը, սոցիալիստական ռեալիզմը զարգացել, առնականացել ու շարունակում է նոր բարձունքների հասնել միայն արվեստի մեջ անկումայնության և հետադիմության յուրաքանչյուր արտահայտության դեմ սկզբունքային, անզիջում պայքարի ուղիով և ոչ փոխադարձ հաշտությամբ և միավորմամբ։

Համաշխարհային արվեստի զարգացման մայրուղին ընթանում է դեպի սոցիալիստական ռեալիզմի ստեղծագործական մեթոդի համընդհանուր տիրապետություն՝ որպես մեր ժամանակների ամենակենսունակ, իրականության գեղարվեստական արտացոլման, նրա ստեղծագործական իմաստավորման ու կոնկրետացման խոր ու ամբողջական ճշմարտությունը վեր հանող մեթոդ։ Այն իր պոտենցիալում ունի անսպառ հնարավորություններ։

Մոդեռնիստական նոր ռեալիզմը փորձում է ավելորդ համարել այն պայքարը, որ առաջադիմական միտքը մղում է մոդեռնիզմի գեղագիտության, արվեստի նրա հետադիմական սկզբունքների, իմացաբանական նրա իդեալիստական հիմքերի դեմ։ Այս հարցում յուրաքանչյուր զիջում հարվածում է ճշմարիտ ռեալիստական արվեստի զարգացմանը։

Մոդեռնիզմի դեմ պայքարը շարունակում է մնալ որպես մարքս-լենինյան գրականագիտության ու գեղագիտության հիմնական խնդիրներից մեկը։

# Գիտությունը և կյանքը

## ՀՈՂԱՅԻՆ-ԱՆՏԱՌԱՅԻՆ ՄԵԼԻՈՐԱՑԻԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ


Վ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆ

*ՀՍՍՀ ԳԱ բուսաբանական ինստիտուտի դիրեկտոր, ԳԱ թղթակից անդամ*

Լ. Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ

*ՀՍՍՀ Մինիստրների սովետի անտառտնտեսության պետական կոմիտեի նախագահ*


Ամեն մի երկրի կլիմայի, ջրային ռեսուրսների, գյուղատնտեսական օգտագործման հողազանգվածների արդյունավետության, բնակչության սանիտարա-հիգիենիկ ընդհանուր պայմանների և տնտեսական ու ժողովրդի առողջապահական գործոնների մեջ առաջնակարգ նշանակություն ունեն անտառները: Հանքային ռեսուրսների հետ մեկտեղ դրանք արտադրաուժերի զարգացման հիմնական պայմաններից են: Անտառազանգվածների պահպանումը, դրանց ընդլայնումը, տեսակային կազմի բարելավումը և տնտեսական արդյունավետության բարձրացումը ոչ միայն անտառային տնտեսությունների անմիջական խնդիրներն են, այլև հասարակության յուրաքանչյուր անդամի ու տեղական սովետների սրբազան գործը:

Անտառային հարստության տեսակետից Սովետական Հայաստանը, ինչպես հայտնի է, Միության հանրապետությունների մեջ գրավում է հետին տեղերից մեկը, թեև պատմական Հայաստանի տերիտորիայի գերակշռող մասը պատված են սաղարթավոր ու ասեղնատերև կուսական անտառներով: Նույնիսկ հնագիտական պեղումների ժամանակ փայտյա իրերից պատրաստված տարբեր նմուշների հետազոտությունը ցույց է տալիս, որ նշված տեսակները լայնորեն տարածված են եղել Արարատյան դաշտում և Սևանի ափնյա հողերում, որոնք այժմ պատած են միայն տափաստանային խոտածածկով:

Երկարամյա, անխնամ ու անսիստեմ հատումների հետևանքով Հայաստանի անտառածածկույթը խիստ կրճատվել է, հասնելով հանրապետության ընդհանուր մակերեսի 9,8 տոկոսին: Միայն վերջին 200 տարում անտառազանգվածները փոքրացել են ավելի քան 2 անգամ: Փոխվել է դրանց տեսակային կազմը. խոնավասեր և ինտենսիվ անող ծառերը վաղուց անհետացել են, փոխարինվելով չորադիմացկուն, ոչ բարձրարդյունավետ տեսակներով, իսկ շատ տեղերում՝ թփուտային մացառներով:

Անտառապատ տարածությունների արագ նվազումը թողել է իր բացասական հետևանքները, որոնցից, թերևս, ամենավնասակարը գյուղատնտեսական օգտագործման հողատարածությունների՝ խոշոր չափերի հասնող էրոզիան է:

Մեր հանրապետության սակավահողության պայմաններում դա մեծ չարիք է: Ուստի, անհրաժեշտ է վերականգնել գյուղատնտեսական օգտագործման՝ էրոզիայի ենթարկված հողազանգվածները, բարձրացնել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, բարելավել արոտավայրերն ու խոտհարքները, հանրապետության կլիման: Նշված խնդիրների լուծման ամենաառացիոնալ միջոցը հողանտառամելիորացիայի լայն կիրառումն է՝ սկսած արդյունաբերական նշանակություն ունեցող անտառների հիմնադրումից մինչև դաշտապաշտպան անտառաշերտերի ստեղծումը: Այդ նպատակի իրականացմանն են նվիրված ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1967 թ. մայիսի ու 1968 թ. սեպտեմբերի որոշումները, ուր նախատեսվում է 1968—1980 թթ. ընթացքում մեր հանրապետությունում անտառապատել էրոզիայի ենթարկված և գյուղատնտեսության համար անօգտագործելի դարձած ավելի քան 120 հազար հեկտար հողատարածություններ: Նշված միջոցառումները ժամանակին և ինչպես հարկն է կենսագործելու համար անհրաժեշտ է անտառամշակույթների գիտականորեն հիմնավորված այնպիսի տեղաբաշխում, որ հողակլիմայական ամեն մի գոտում ու շրջանում ընտրվեն և աճեցվեն դրանց համապատասխան կենսաբանական առանձնահատկություններով օժտված ծառեր ու թփեր: Դրա համար, անտառամշակույթների ճիշտ շրջանացման հետ մեկտեղ, անհրաժեշտ է յուրաքանչյուր հողակլիմայական գոտում ստեղծել տնկարաններ՝ հիմնադրվող անտառներն ու այլ տիպի կանաչ զանգվածները համապատասխան սորտիմենտի, որակի ու հասակի տնկիներով ապահովելու նպատակով: Անտառամշակույթների շրջանացումը հնարավորություն կընձեռի՝ համեմատաբար փոքր կապիտալ ներդրումներով կարճ ժամանակամիջոցում ստեղծելու կայուն ու բարձր արտադրողականությամբ արդյունաբերական և այլ նշանակություն ունեցող անտառազանգվածներ:

Բուսաբանական ինստիտուտի մի խումբ աշխատողներ, 1968—1969 թթ., ձեռնամուխ լինելով այդ կարևոր խնդրի լուծմանը, մշակեցին անտառամշակույթների շրջանացման օրինակելի սխեմ, որն ընդգրկում է հանրապետության ողջ տերիտորիան և անտառամելիորատիվ համակողմանի միջոցառումները:

Հայաստանում անտառամշակույթների շրջանացման դժվար, բայց կարևոր հարցերից են՝ տարբեր պայմաններում համապատասխան ծառային ու թփային սորտիմենտի ընտրությունն ու դրանց օպտիմալ աճման ագրոտեխնիկայի մշակումը: Այս հարցերի գիտական լուծմանը մեծ չափով նպաստել են ՀՍՍՀ ԳԱ բուսաբանական ինստիտուտում կատարված գիտահետազոտական աշխատանքների արդյունքները՝ բնական և ինտրոդուկցված ծառային ու թփային տեսակների դենդրոլոգիական (ծառաբանական) շրջանների, սորտիմենտի, վերջինիս կենսաբանական, ինչպես և հանրապետության տարբեր զոնաների հողային ու բնակլիմայական պայմանների առանձնահատկությունների պարզաբանման և անտառամշակույթների ստեղծման բազմամյա տարիների հարուստ փորձի ընդհանրացման ասպարեզում: Ստացված արդյունքները, որոնք ներկայացնում են ժողովրդա-տնտեսական կարևորագույն նշանակություն ունեցող միջոցառումների գիտական հիմնավորված սխեմ, ընդգրկում են հետևյալ հիմնական հարցերը:

ԻՆՏՐՈԴՈՒԿՑՎԱԾ ԵՎ ԲՆԱԿԱՆ ԾԱՌԵՐԻ ՈՒ ԹՓԵՐԻ ՇՐՋԱՆԱՑՈՒՄ: Թերևս չկա Հայաստանի նման փոքրիկ մի այլ երկիր, որն իր տերիտորիայի, ռելիեֆի, ուղղահայաց զոնայնության, կլիմայի, հողային ու ջրային ռեժիմների և, որ ամենակարևորն է, բուսածածկույթի բազմազանությամբ գերազանցի մեր հանրապետությանը: Բնա-պատմական խիստ տարբեր պայմանները, մի կողմից, հնարավորություն են ընձեռում Հայկական ՍՍՀ տերիտորիայում անեցնելու խիստ բազմազան բույսեր, մյուս կողմից՝ լուրջ դժվարություններ են հարուցում անտառապատմամբ ու կանաչապատմամբ զբաղվող մասնագետների համար, քանի որ անհնար է դառնում թփային ծառատեսակների միասնական, ստանդարտ օգտագործումը: Ուստի, անհրաժեշտ է դառնում Հայկական ՍՍՀ տերիտորիան բաժանել բնապատմական համանման, համեմատաբար սակավաթիվ շրջանների, որպեսզի հնարավոր լինի դրանց համար ընտրել թփերի ու ծառերի տեսակների համապատասխան ասորտիմենտ, դրանք մասսայաբար բազմացնել անտառապատման նպատակով օգտագործելու համար:

Վերջին տարիներս մի շարք մասնագետներ զբաղվել են Հայաստանի տերիտորիայի շրջանացման խնդրով: Նրանց ջանքերով ստեղծվել են կլիմայական, ագրոկլիմայական, տնտեսական, լանդշաֆտային, հողային, բուսածածկույթի քարտեզներ և շրջանացման սխեմաներ: Սակայն մինչև օրս դեռ չի մշակվել դենդրոլոգիական շրջանացման սխեմ: Դրա փոխարեն կազմված են ընդհանուր բնույթի փոքրիկ սխեմաներ, որոնք, սակայն, չեն ընդգրկում բնական ու ինտրոդուկցված ծառային ու թփային ասորտիմենտի հիմնական տեսակաշարը:

Դեռևս հայտնի բուսաբան, աշխարհագրագետ Հումբոլդը նշել է, որ կլիմայի, հողածածկույթի, հիդրոլոգիական պայմանների, օրոգրաֆիայի, քամիների ռեժիմի և, նույնիսկ, օդի բաղադրության ամենանուրբ ինդիկատորը բույսերն են: Ուստի, դենդրոլոգիական շրջանացման համար, առաջին հերթին, հիմք է ընդունված վայրի (տեղական) և ժողովրդական ու գիտական երկարամյա ինտրոդուկցիայի ճանապարհով Հայաստան ներմուծված և նրա պայմաններին հարմարված ծառերի ու թփերի ասորտիմենտը: Սկզբում կազմվել են բուսական նահանգների քարտեզներ, առանձնացնելով բուսաբանական, ապա՝ դենդրոլոգիական շրջանները: Վերջիններս իրարից տարբերվում են մի շարք տարաշխարհիկ, տեղական ծառաթփային, ինչպես և որոշ խոտաբույսերի տարածման տերիտորիալ՝ բնակլիմայական ուրույն պայմաններով: Այս սկզբունքով Հայաստանը բաժանված է հողաբանական 8 շրջանների.

ա) լեռնա-մարգագետնային (Վերին Ախուրյանի արևմտյան գոտին, Մանթաշի ցուրտ մեզոֆիլ ենթաշրջանը, Լոռվա հարթավայրը, Կամո—Նորադուզի և Բազարչայի ենթաշրջանները), բ) համեմատաբար խոնավ լեռնատափաստանային (Ապարանի, Սևանի, Դուկասյանի հարավ-արևելյան և Կրասնոսելսկի ենթաշրջանները), գ) համեմատաբար չոր լեռնա-տափաստանային (Սպիտակ—Փամբակի, Մարտունու—Մազրայի, Սիսիանի շրջանները, Տեղի, Գնիշիկի—Մարտիրոսի ենթաշրջանները), դ) անապատային և կիսաանապատային (Արեգի, Հոկտեմբերյանի շրջանները, Երևանյան փոսորակը, Արագդայանի ենթաշրջանը, Արփայի ցածրավայրային և Այորի կիրճի ենթաշրջանները), ե) արիդային նոսրանտառային (Ամբերդի, Արենու, Գեղամա, Երանոսի, Երախ-Ուրցի գիպսոֆիլ և Մեղրու միջին լեռնային անտառային ենթաշրջանները), զ) կենտրոնական Հայաստանի չափավոր խոնավ կղզային անտառների (հարավ ծաղկունքյան մեզոֆիլ ցուրտ անտառային և Եղեգիս—Ջերմուկ շրջանները), է) մեզոֆիլ-անտառային (Ստեփանավանի, Դեբետ—Աղստևի շրջանները, Գուգարքի, Շամշադինի, Դարբասի, Որոտանի և Բարգուշատ—Խուստուփի, Գեղիի արևմտյան և Մարմարիկի ենթաշրջանները, Ուջանիսը, Ոխչին), ը) մերձարևադարձային (Մեղրու ներքին լեռնային, չոր, մերձարևադարձային ենթաշրջանը):

Վերոհիշյալ ծառաբանական շրջաններում տարածված են 243 ինտրոդուկցված և 171 վայրի (տեղական) թփերի ու ծառերի տեսակներ: Կոնկրետ որոշված են յուրաքանչյուր ծառաբանական շրջանում անող ինչպես ինտրոդուկցված, այնպես և տեղական տեսակների կազմն ու դրանց տարածման տերիտորիան:

ԱՆՏԱՌԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ՇՐՋԱՆԱՑՈՒՄ: Այս միջոցառման հիմնական նպատակն է՝ ստեղծել անտառարդյունաբերական և ագրոանտառաբարելավման տնկարկներ: Առաջին դեպքում պլանավորվում է ստեղծել բարձրարժեք բնափայտ արտադրող արդյունաբերական օգտագործման անտառազանգվածներ, երկրորդ դեպքում՝ էրոզիայից պաշտպանող և ջրապաշտպան նշանակություն ունեցող ցածր արդյունավետ անտառներ, որոնց հետագա վերակառուցումը՝ բարձրարժեք և երկարակյաց տեսակների օգտագործման շնորհիվ կմեծացնի դրանց անտառտնտեսական արժեքը, մոտեցնելով արդյունաբերական անտառատիպերին:

Արդյունաբերական անտառների հիմնադրման համար ընտրված են 24 ծառային և 10 թփային տեսակներ, որոնք բաշխվում են ըստ ուղղահայաց զոնայնության, առաջին հերթին՝ անտառաբացատները, չվերականգնված հատման տեղերը, ինչպես նաև խոնավ կլիմա ունեցող միկրոտերիտորիաներն իրացնելու նպատակով, որտեղ առկա են արդյունաբերական նշանակություն ունեցող տեսակների աճման քիչ թե շատ բավարար պայմաններ: Մանրազնին մշակված են տնկման սխեմաները և տեսակների խառնուրդի ձևերը՝ տվյալ վայրի հողակլիմայական պայմաններին համապատասխան անտառատիպեր ստեղծելու համար:

Հայաստանի ժողովրդական տնտեսության համար այժմ ավելի առաջնակարգ նշանակություն ունի էրոզիայի ենթարկված լեռնալանջերի անտառապատումը: Այդպիսի անտառազանգվածները, կանոնավորելով կլիման և ջրային ռեժիմը, նպաստում են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացմանը: Նախատեսվում է նման չորային ու կմախքային հողերում, որպես հիմնական տեսակաշար, օգտագործել չորադիմացկուն ծառերի և, գլխավորապես, հողի հանդեպ սակավապահանջ թփերի տեսակներ: Նման տնկարկները ժամանակի ընթացքում ստեղծում են անտառային յուրահատուկ համակեցություն, բարերար ազդեցություն թողնելով հողածածկույթի վրա, լավացնելով նրա ֆիզիկական բաղադրությունն ու բիոլոգիական հատկանիշները, առաջին հերթին՝ նպաստելով միկրոֆլորայի զարգացմանը, որն, իր հերթին, հարստացնում է հողը բույսերի համար անհրաժեշտ հանքային և օրգանական նյութերով:

ԴԱՇՏԱՊԱՇՏՊԱՆ ԱՆՏԱՌԱՇԵՐՏԵՐ: Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում յուրահատուկ դեր են խաղում նաև դաշտապաշտպան անտառաշերտերը, որոնք կիսանապատային և տափաստանային գոտիների երկրագործության սիստեմի հիմնական օղակն են:

Դաշտապաշտպան անտառաշերտերը հաղթահարում են չոր քամիների վնասակար ազդեցությունը, բարելավում ջրային ռեժիմը և կանխում հողածածկույթի քայքայման պրոցեսը: Դրանք ավելացնում են ձնհալի ջրերի պաշարը հողում, նվազեցնում ջրի գոլորշիացումը, զգալի չափով բարձրացնում կիրառվող ագրոտեխնիկական միջոցների ու պարարտացման արդյունավետությունը: Այս է պատճառը, որ կուսակցությունն ու կառավարությունը այդքան մեծ ուշադրություն են նվիրում դաշտապաշտպան անտառաշերտերի ընդլայնմանը:

Ինչպես Միության այլ հանրապետություններում, այնպես և Հայաստանում, նախատեսվում է անտառաշերտերը տեղադրել երկու ուղղությամբ. հիմնական անտառաշերտ, որը ձգվում է տվյալ վայրին բնորոշ գերակշռող վնասակար քամիներին ուղղահայաց, և օժանդակ կամ ընդլայնական, որը ձգվում է ընդլայնականին ուղղահայաց, նպատակ ունենալով թուլացնել այդ վնասակար քամիների ուժը:

Հիմնական անտառաշերտերի միջև ընկած տարածությունը մեծ չափով պայմանավորված է տվյալ վայրի հողա-կլիմայական անտառմելիորատիվ պայմաններով: Այս տեսակետից մեր հանրապետության տարբեր շրջաններում անտառաշերտերի ստեղծման ժամանակ հաշվի են առնվում նշված պայմանները, ինչպես և՝ ծառերի ու թփերի ասորտիմենտի կենսաբանական հատկությունների համապատասխանությունը տվյալ վայրի հողակլիմայական պայմաններին: Նպաստավոր պայմաններում ընտրվում են բարձրահասակ ծառերը, իսկ շերտերի միջև թողնվում է 500—600 մետր տարածություն: Որքան վատանում են բույսերի աճման և բնակլիմայական այլ պայմանները, այնքան պակասում է հիմնական անտառաշերտերի միջև ընկած տարածությունը. շատ տեղերում այն հասնում է 150 մետրի և դրանից էլ պակաս:

Տարբեր է նաև անտառաշերտերի լայնությունը: Ցանքաշրջանառության դաշտերում և դրա սիստեմից դուրս նպատակահարմար է ստեղծել 20—75 մ լայնությամբ շերտեր, ձորամերձ և հեղեղամերձ վայրերում՝ 15—30 մ., ոչ-գյուղատնտեսական մշակույթներով զբաղեցված անտառապուրակները սահմանազատող վայրերում ու բնակավայրերում՝ 500—600 մ.:

ԱՆՏԱՌԱՅԳԻՆԵՐ: Հայկական ՍՍՀ անտառները հարուստ են վայրի պտղատու տեսակներով, որոնք զբաղեցնում են մոտ 300 հազար հեկտար տարածություն: Դրանք գլխավորապես կենտրոնացված են հյուսիսային Հայաստանի, Դարալագյազի, Զանգեզուրի և Մեղրու ստորին ու միջին անտառային գոտիներում: Անտառայգիները, սովորաբար, տալիս են բավական բերք, սակայն վայրի պտղատուների զբաղեցրած տարածությունից իրականում քիչ բերք է ստացվում: Դրա պատճառներից ամենագլխավորն այն է, որ վայրի պտղատու այգիներից միայն 5—6 հազար հեկտարն են իսկական անտառայգիներ՝ բարձր բերքատվությամբ:

Անտառայգին կազմում է անտառի կամ անտառամշակույթների մի մասը, որն այգու տեսք է ստանում պատվաստի կամ խնամքի ու մշակության միջոցով: Անտառի և այգու այս միակցությունն օժտված է անտառի հիմնական հատկություններով, տալիս է բնափայտ, միաժամանակ՝ որոշակի քանակությամբ բարձրորակ պտուղներ: Դրա հետ միասին պտղատու այգուց այն տարբերվում է նրանով, որ այստեղ չկան ժամանակակից կուլտուրական



սորտերի կանոնավոր տնկարկներ և չի կիրառվում վերջիններիս բնորոշ ագրոտեխնիկան:

Անտառայգիների արդյունավետության բարձրացման հիմնական եղանակներից մեկը վայրի պտղատու սորտերի շրջանացումն է՝ տվյալ հողակլիմայական պայմանների համար համապատասխան սորտը ճիշտ ընտրելու նպատակով:

Հայաստանի անտառներում տարածված են 16 ընտանիքի և 34 ցեղի պատկանող 126 տեսակ վայրի պտուղներ, որոնցից անտառայգիների համար հեռանկարային են 52-ը: Վերջիններս բնական անտառներում լինում են համեմատաբար մեծ խմբերով, որակով պտուղներ են տալիս և լավագույն պատվաստակալ են կուլտուրական սորտերի համար:

Բնական անտառներում անտառայգիները հիմնադրվում են պատվաստի միջոցով և պահանջում պատշաճ խնամք: Պատվաստում են այն տեսակները, որոնց պտուղները ցածրարժեք են և սակավ պիտանի: Սակայն, ունենալով լավ զարգացած արմատասիստեմ, դրանք պատվաստակալ են դառնում առավել բարձրարժեք պտղատու տեսակների համար, երկարացնում վերջիններիս կյանքն ու պտղակալման շրջանը:

Մաքրման ու խնամքի միջոցով անտառայգիներ սովորաբար ստեղծվում են այն տեսակներից (տխլենի, արջատխլենի, հաղարջենի, ընկուզենի և այլն), որոնց պտուղները բարձրորակ են և պարունակում են մեծ քանակությամբ շաքարներ, սպիտակուցներ, ճարպեր, վիտամիններ և օգտակար այլ նյութեր: Բնի և շրջակա մացառների մաքրման ու խնամքի շնորհիվ արագանում է նշված տեսակների աճը, ավելանում բերքատվությունը:

Անտառայգիներ հիմնելու գործում կարևոր են պտղատու և անտառային տեսակների ճիշտ համակցումն ու տեղաբաշխումը՝ դրանց միջտեսակային պայքարը նվազագույնի հասցնելու համար: Սովորաբար ընդունված է գլխավոր և ուղեկցող տեսակների համակեցություն: Դրանցից առաջինները պտղատուներն են, երկրորդները՝ անտառային տեսակները, որոնք կոչված են պահպանելու և բարձրացնելու հողի բերքատվությունը: Համակցվող տեսակներն իրենց աճման տեմպերով չպետք է գերազանցեն պտղատուներին, միաժամանակ մացառներով չբազմանան, իսկ արմատասիստեմի տարածման հորիզոնը պետք է տարբերվի պտղատու տեսակների արմատակալման զոնայից:

ԱՆՏԱՌԱՊՈՒՐԱԿՆԵՐ: Ժամանակակից քաղաքաշինության ամենակարևոր պրոբլեմներից մեկը քաղաքամերձ կանաչ գոտիների՝ անտառապուրակների ստեղծումն է: Դրանք մեղմացնում են շոգը, բարձրացնում օդի հարաբերական խոնավությունը, հարստացնում շրջապատող մթնոլորտը թթվածնով, մեղմացնում քամիների ուժը, մաքրում օդը փոշուց և այլն: Հաշվումները ցույց են տալիս, որ կանաչազուրկ տարածությունների յուրաքանչյուր հեկտարի վրա տարեկան նստում է ավելի քան 4 հազար կիլոգրամ փոշի, մինչդեռ կանաչապատ տարածություններում՝ միայն 600: Այս առումով վճռական դեր են խաղում ծառերի ու թփերի տերևային մակերեսները:

Բույսերի մեծ մասն իրենց տերևների, ծաղիկների կամ այլ օրգանների միջոցով արտադրում է հատուկ նյութեր՝ ֆիտոնցիդներ, որոնք սպանում են շրջապատի օդի վնասակար միկրոօրգանիզմները: Դրա շնորհիվ վնասակար միկրոօրգանիզմների թիվը կանաչապատ տարածություններում մի քանի տասնյակ անգամ պակաս է կանաչազուրկ տարածությունների համեմատությամբ: Կանաչ տնկարկներն ունեն նաև գազապաշտպան և ծխապաշտ-

պան նշանակություն: Դրանք մեծ չափով իջեցնում են օդի վնասակար գա-
զերի խտությունը, աղտոտվածությունը և այլն: Կանաչ տնկարկներն ունեն
նաև էսթետիկական նշանակություն: Դրանք մեղմացնում են արևի ճառա-
գայթների գրգռիչ ազդեցությունը, հանգստացնում մարդու նյարդային հա-
մակարգը:

Լեռնա-մարգագետնային շրջաններում անտառապուրակների դերը սո-
վորաբար սահմանափակվում է դրանց հողապաշտպան և հակաէրոզիոն,
ինչպես և էսթետիկական նշանակությամբ: Նման տիպի պուրակները կոչվում
են մարգագետնապուրակներ, թույլատրվում է գազոնապատ տարածություն-
ներն այստեղ օգտագործել որպես խոտհարքներ, լրացուցիչ և բարձրորակ
կեր ստանալու համար: Համեմատաբար խոնավ, լեռնա-տափաստանային
շրջաններում անտառապուրակներն ունեն էսթետիկական, հողապաշտպան և
հակաէրոզիոն նշանակություն: Դրանց ընդհանուր ֆոնի վրա ծառերից և
թփերից ստեղծվում են բարձր դեկորատիվ կոմպոզիցիաներ:

Անտառային և կիսանապատային վայրերում, ուր հողակլիմայական
պայմանները նպաստավոր չեն բուսածածկույթի զարգացման համար, ան-
տառապուրակները նպաստում են բնակչության սանիտարա-հիգիենիկ պայ-
մանների բարելավմանը: Տվյալ գոտում նախատեսվում է հիմնել խիտ
ծառուտներ, որոնք զբաղեցնում են անտառապուրակների ընդհանուր տարա-
ծության 60 տոկոսը: Ընդ որում, մեկ հեկտարի վրա խորհուրդ է տրվում
տեղադրել 300—350 ծառ, 250 և ավելի թուփ:

Անտառապուրակային տիպի տնկարկներից լավագույնն է 1936 թ. ան-
տառային տնտեսության հիմնադրած, Երևանի շրջակա Սարի-թաղի կանաչ
զանգվածը, որը շատ կարևոր նշանակություն ունի Երևանի բնակչության
համար, սակայն, ցավոք, լիովին չի ծառայում իր նպատակին, մի շարք մի-
ջոցառումներ չիրականացնելու հետևանքով: Այնտեղ չկան ցայտաղբյուրներ,
ճարտարապետական ոչ մեծ կառույցներ, երեխաների համար խաղահրա-
պարակներ, երթևեկության բարեկարգ ճանապարհներ, դեկորատիվ կանաչ
կոմպոզիցիաներ, նստարաններ, տաղավարներ, իսկ նորակառույց ջրպանու-
դին չի գործում: Ինչպես հարկն է չեն խնամվում եղած տնկարկները:

ՏՆԿԱՐԱՆԱՅԻՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ: Անտառային կուլտուրաների,
պաշտպանական անտառաշերտերի, անտառապուրակների և անտառայգինե-
րի ստեղծման աշխատանքները չեն սահմանափակվում միայն ծառերի ու
թփերի ասորտիմենտի ճիշտ ընտրությամբ: Ամենակարևորը տարբեր հողա-
կլիմայական պայմաններին համապատասխան բիոլոգիական հատկություն-
ներով օժտված բարձրորակ ու ստանդարտ տնկիների անեցումն է: Մեզ մոտ
եղած սահմանափակ թվով տնկարանները, որոնք տեղավորված են հիմնա-
կանում նախալեռնային շրջաններում, ունեն ցածր արտադրողականություն:
Այդ պատճառով էլ անհնար է դրանցում աճեցնել հանրապետության բազ-
մապիսի հողակլիմայական պայմաններին համապատասխանող ծառերի ու
թփերի տեսակներ, պտղատու կուլտուրաներ:

Տնկարանային տնտեսության անբավարարության հետևանքով հանրա-
պետության շատ անտառտնտեսություններ ամեն տարի ստիպված են տնկա-
նյութ հայթայթել Միության տարբեր վայրերից: Այդպիսի պայմաններում
մի կողմից՝ չնախատեսված հսկայական միջոցներ են ծախսվում տնկանյու-
թի տեղափոխման համար, մյուս կողմից՝ ձեռք բերված ասորտիմենտը, չհա-
մապատասխանելով տարբեր վայրերի բնակլիմայական ու հողային պայման-



ներին, ինչպես հարկն է չի աճում ու կպչում: Բացի դրանից, տնկանյութը
երկարատև փոխադրման ժամանակ խոնավազրկվում է, կորցնում կենսունա-
կությունը. չորանում են արմատները, անման բողբոջները, երիտասարդ
ընձյուղները և այլն: Հանրապետության մի քանի շրջաններում սոճու տըն-
կարկների ստեղծման անհաջող փորձը մեզ թելադրում է լիովին հրաժարվել
այլ հանրապետություններից տնկանյութ հայթայթելու պրակտիկայից և ամեն
մի ուրույն հողակլիմայական զոնայում ստեղծել սեփական տնակարան իր.
կամ համանման զոնայի անտառապատման նպատակով:

Ելնելով այս ամենից, նախատեսվում է հանրապետության դենդրոլո-
գիական շրջանների անտառմելիորատիվ աշխատանքների համար ստեղծել
լայն ասորտիմենտ ունեցող, մեքենայացված 7 մշտական տնկարան. այսպես՝

I տնկարան— Հյուսիսային Հայաստանի չոր մերձարևադարձային գո-
տում, Իջևանի կամ Նոյեմբերյանի շրջաններում, 600—700 մ. բարձրություն-
ներում: Այն տնկանյութով պետք է ապահովի Հյուսիսային Հայաստանի
400—1200 մ. բարձրությունները, մասամբ՝ Մեղրու և Զանգեզուրի չոր մերձ-
արևադարձային գոտին: Այստեղ նախատեսվում է բազմացնել հիմնականում
չոր, մերձարևադարձային ջերմասեր կուլտուրաներ, ինչպես և պտղատու
տեսակներ.

II— Հյուսիսային Հայաստանի միջին անտառային գոտում, 1000—1500
մ. բարձրություններում: Առաջարկվում է այստեղ աճեցնել խոնավասեր
տեսակներ, առանձնապես ասեղնատերևավորներ, որոնցով պետք է կանա-
չապատվեն հանրապետության քաղաքներն ու բնակավայրերը: Ասեղնատե-
րևավորներն այս տեսակետից մի շարք առավելություններ ունեն մյուս տե-
սակների համեմատությամբ: Ամենից առաջ դրանք իրենց դեկորատիվ հատ-
կանիշները պահպանում են ամբողջ տարին, արտադրում ֆիտոնցիդային և
սանիտարա-հիգիենիկ պայմանները բարելավող նյութեր, տալիս լավ շինա-
նյութ, երկարակյաց են և հողային պայմանների հանդեպ համեմատաբար
սակավապահանջ:

III— Շիրակի սարահարթում, 1500—1700 մ. բարձրություններում. այն
պետք է տնկանյութով ապահովի Ախուրյան գետի ավազանը, Կալինինոյի
ու Սպիտակի անտառազուրկ տարածությունները: Այստեղ աճեցվելու են
միաժամանակ չորադիմացկուն տեսակներ:

IV— Սևանի ավազանում կամ Հրազդանի շրջանում, 1800—2000 մ բարձ-
րություններում: Այն տնկիներ կմատակարարի Սևանի ավազանի, Ազիզբե-
կովի, Արարատի, Աբովյանի, Եղեգնաձորի, Հրազդանի և Ապարանի շրջան-
ների բարձրադիր մասերին: Այստեղ նախատեսվում է աճեցնել ցրտադիմաց-
կուն, չորադիմացկուն, հողի նկատմամբ համեմատաբար սակավապահանջ
տեսակներ: Ի տարբերություն մյուս տնկարանների, այստեղ աճեցվող տըն-
կիները չեն ապահովվի ոռոգման ջրով: Նման պայմաններում կզարգանա
բույսերի չորադիմացկունությունը:

V— Արարատյան դաշտի նախալեռնային գոտում, 1000—1400 մ. բարձ-
րություններում. այն տնկանյութով կապահովի Արարատյան դաշտը և նրան
կից Ազիզբեկովի, Եղեգնաձորի, Արարատի, Աբովյանի, Աշտարակի, Թալինի,
մասամբ և Ապարանի ու Հրազդանի նախալեռնային շրջանների 800—1000 մ.
բարձրություններով սահմանափակված տարածությունները: Նշված տնկա-
րանը կունենա բարձր արտադրողականություն, տալով բազմազան ասորտի-

մենտ: Տնկանյութով կապահովի նաև կիսանապատային գոտու ֆաղաֆների և բնակավայրերի կանաչապատումը:

VI— Զանգեզուրի և Մեղրու չոր մերձարևադարձային գոտու 500—700 մ. բարձրություններում: Իր ասորտիմենտով որոշ չափով այն նման կլինի հյուսիս-արևելյան շրջանների չոր մերձարևադարձային գոտու տնկարաններին, սակայն դրանցից կտարբերվի պտղատու կուլտուրաների մեծ բազմազանությամբ: Այն տնկանյութ կմատակարարի Մեղրու, Ղափանի, Գորիսի, Սիսիանի շրջաններին, մասամբ էլ Դարալագյազի բարձրադիր գոտուն:

VII— Սիսիանի շրջանում, 1000—1700 մ. բարձրություններում: Կապահովի Մեղրու, Գորիսի, Ղափանի շրջանների՝ 1800—2300 մ. բարձրության վրա ընկած տարածությունները, ինչպես և Ջերմուկի առողջարանը: Այստեղ հիմնականում կաճեցվեն ցրտադիմացկուն և երաշտադիմացկուն տեսակներ:

Բոլոր տնկարանները պետք է հիմնադրվեն հարթ, ազատ հողածածկույթ ունեցող վայրերում, ապահովված լինեն ոռոգման ջրով, եզերված դաշտապաշտպան անտառաշերտերով և ունենան ցանֆի, կտրոնավորման, պատվաստի, դպրոցի և մայրական հողամասեր: Այստեղ բոլոր աշխատանֆները պետք է մեքենայացվեն, ֆանի որ մեքենայացված և լավ կազմակերպված ամեն տնկարան տնտհաշվարկային եկամտաբեր մի տնտեսություն է:

*ՀՈՂԱՄԵԼԻՈՐԱՏԻՎ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ:* Անտառամշակութային աշխատանֆները Հայաստանում սկսվել են 1928—1930 թթ., դրանց հիմնական նպատակը եղել է անտառապատել բացատներն ու անտառամերձ որոշ տարածություններ:

Սկսած 1951 թ. ագրոանտառբարելավման աշխատանֆներ ծավալվեցին Սևանի ավազանում, Սևանա լճի ջրերից ազատված հողակտորների վրա և Ողջաբերդ—Գառնի ավանների միջև ընկած մի ֆանի հողազանգվածներում: Այդպիսի աշխատանֆներ առավել չափով ծավալվել են վերջին տարիներս, ընդգրկելով էրոզիայի ենթարկված և լվացված լեռնալանջերը: Եթե մինչև V հնգամյակը անտառամշակութային աշխատանֆները սահմանափակվել են միայն 200—600 հեկտարով, ապա վերջին տարիներս այն հասել է մի ֆանի հազարի: Այսպես՝ 1966 թ. իրացվել է 5000, 1967 թ.՝ 6000, 1968 թ.՝ 6000 հեկտար հողատարածություն. մինչդեռ, որպեսզի մինչև 1980 թվականն իրացվի 117.300 հեկտար, անհրաժեշտ է ամեն տարի անտառապատել 9000 հեկտար հողատարածություն: Նշված ծավալի և տարբեր նշանակության անտառապատման կազմակերպման համար անհրաժեշտ են գիտա-կազմակերպչական մի շարֆ աշխատանֆներ:

Առաջին հերթին՝ պետք է հոգալ հանրապետության տարբեր գոտիներում տնակարանային տնտեսություններ կազմակերպելու մասին: Նկատի ունենալով, որ անտառտնտեսություններում, որպես հիմնական և բարձրորակ ասորտիմենտ, օգտագործվում են սերմերով բազմացող ծառերը, անհրաժեշտ է պետական անտառային կոմիտեի սիստեմում կազմակերպել մեկ-երկու սերմնատնտեսություն՝ համապատասխան լաբորատորիաներով:

Ժամանակակից սելեկցիայի ամենազործնական մեթոդներից մեկը լավագույն սերմացուի ընտրությունն է: Սերմնաբուծության պատշաճ կազմակերպումը մեծ չափով կնպաստի տնակարանային տնտեսությունների գործունեության բարելավմանը և լավագույն տնկանյութերի աճեցմանը:

Անտառմելիորատիվ միջոցառումների արդյունավետ կենսագործման



կարևորագույն պայման են նաև մեծ հողազանգվածների վրա կոմպլեֆսավորված նախագծումները և դրանց միաժամանակյա իրագործումը: Ինչպես դաշտապաշտպան անտառաշերտերը, այնպես և տարբեր նշանակության անտառտնկարկները հաճախ տեղադրվում են այնպիսի հողազանգվածների վրա, որոնֆ պատկանում են տարբեր կոլտնտեսությունների ու վարչական շրջանների, բայց դենդրոլոգիական տեսակետից մտնում են մեկ շրջանի մեջ: Նման պարագաներում ագրոմելիորատիվ աշխատանֆները պետք է կազմակերպվեն ոչ թե ըստ կոլտնտեսային հողամասերի, այլ ըստ դենդրոլոգիական շրջանների, մեկ կազմակերպության կողմից, որն այնուհետև պետք է հոգա նաև ստեղծված տնկարկների լրացման ու խնամֆի մասին:

1970—1980 թվականների ընթացֆում նախատեսվող անտառմելիորատիվ աշխատանֆները հնարավոր է ապահովել մեքենայացման միջոցով (սկսած հողի մշակությունից, վերջացրած տնկման ու խնամֆի աշխատանֆներով): Բանն այն է, որ անտառային կուլտուրաների տնկման ժամանակաշրջանը համընկնում է գարնանային կամ աշնանային գյուղատնտեսական նոուն աշխատանֆներին, որոնֆ պահանջում են մեծ ֆանակությամբ բանվորական ձեռֆեր: Այսպիսի պայմաններում մեքենայական աշխատանֆի արմատավորումն ու ընդարձակումը անհրաժեշտություն են: Մեքենայացման շնորհիվ զգալի չափով նվազում են ընդհանուր ծախսերը, հեշտանում տընկարկների հետագա խնամֆն ու պայֆարը վնասատուների դեմ: Մեքենայացումը խիստ անհրաժեշտ է լեռնային անտառատնկումների ժամանակ:

Վերը նշված պլանային աշխատանֆների հաջողությունը պայմանավորված է բանիմաց կադրերի, հիմնականում անտառագետների առկայությամբ: Այդպիսի կադրերի պատրաստման նպատակով անհրաժեշտ է Հայկական գյուղատնտեսական ինստիտուտի և գյուղատնտեսական տեխնիկումների ցանցում հիմնել անտառագիտության և մելիորացիայի համապատասխան բաժիններ: Թեև այս հարցը բազմիցս բարձրացված է համապատասխան օրգաններում, սակայն մինչև օրս դրականապես չի լուծվել:

Անտառմելիորատիվ աշխատանֆների այսպիսի ծավալի հաջող իրականացումը դժվար է միայն հանրապետության անտառային տնտեսության պետական կոմիտեի ջանֆերով: Այս ասպարեզում անհրաժեշտ է հանրապետության կոլտնտեսությունների, սովխոզների, շրջանային կուսակցական ու պետական կազմակերպությունների, ինչպես և գյուղատնտեսության, ջրային տնտեսության և այլ մինիստրությունների ջանադիր գործակցությունը:

# ՄԵՐ ՆՈՐՈԳ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Վ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Բոլոր բնագավառներում ձեռք բերված մեր վիթխարի նվաճումների մեջ ակնառու են նվաճումները նաև քաղաքաշինության և ճարտարապետության ասպարեզում: Որպես հասարակության նյութական ու հոգևոր կյանքի բաղկացուցիչ մաս, դրանք, ինչպես բովանդակ Սովետական Միությունում, այնպես և մեր հանրապետությունում, ի սպաս են դրվել սոցիալական կարևոր պրոբլեմների լուծմանը, աշխատավորության կենսապայմանների բարելավմանը:

Մարքսիզմի կլասիկները, տարբեր առիթներով անդրադառնալով ճարտարապետության բնույթին ու դերին, տվել են դրա մատերիալիստական ճշգրիտ սահմանումը: Այս ասպարեզում ևս ընդգծելով նյութականի առաջնությունը, նրանք, միաժամանակ, պատշաճ նշանակություն են տվել արվեստի կարևոր բնագավառներից մեկի՝ ճարտարապետության, գաղափարա-գեղարվեստական դերին, որով վերջինս համարվում է մարդկային հասարակության վերնաշենք:

Խոսելով մարդու գործունեության ստեղծագործական բնույթի մասին և այդ կապակցությամբ անդրադառնալով այն տարբերությանը, որ գոյություն ունի նախագծող ճարտարապետի և մեղվի լավագույն աշխատանքի միջև, Մարքսը նշում է, որ մարդը վերափոխում է ձևն այն բանի, ինչ տվել է բնությունը և դա իրականացնում՝ հետևելով իր գիտակցական նպատակին: Զարգացնելով Մարքսի միտքը, Էնգելսը, մի առիթով մարդու նպատակադրված գործունեության հարցը շոշափելիս, նշում է, որ նա վերստեղծում է նյութը՝ ղեկավարվելով նաև գեղեցկության օրենքներով: Լենինի ուշադրությունից են չի վրիպել ճարտարապետության գեղագիտական նշանակությունը: Նա բարձր է գնահատել հասարակական արտադրության զարգացման հիման վրա արմատական փոփոխությունների անխուսափելիությունը ճարտարապետության մեջ, «իրենց ճարտարապետությամբ» սկզբունքորեն նոր շենքերի առաջացումը:

«Առևտրի, գործարանների, քաղաքների ու երկաթուղիների աճը,— կարդում ենք Լենինի մոտ,— պահանջ է դնում բոլորովին տարբեր կառուցվածքների, որոնք նահապետական դարաշրջանի հին շենքերին նման չեն ո՛չ իրենց ճարտարապետությամբ և ո՛չ իրենց մեծությամբ: Նոր կառուցվածքները պահանջում են շատ բազմատեսակ ու թանկարժեք նյութեր, պահանջում են ամենաբազմատեսակ մասնագիտությունների պատկանող բանվորների զանգվածների կոոպերացում, պահանջում են իրենց ավարտման համար տևական ժամանակ. այս նոր կառուցվածքների տեղաբաշխումը բոլորովին չի համակերպվում բնակչության ավանդական տեղաբաշխման հետ. դրանք կառուցվում են մեծ քաղաքներում և քաղաքամերձ արվարձաններում, անբնակ վայրերում, կառուցվող երկաթուղագծերի երկայնքով և այլն» (Երկեր, հ. 3, էջ 687:)



Լենինը արտակարգ նշանակություն էր տալիս քաղաքաշինության խնդիրներին: Բնակեցման լենինյան սկզբունքը, որ նկատի ուներ բնակավայրերի զարգացումն արդյունաբերության համաչափ տեղաբաշխման հիման վրա, դարձավ սովետական քաղաքաշինության հիմքը, ինչպես նաև մեր հանրապետության հին քաղաքների ու բնակավայրերի սոցիալիստական վերակառուցման, նորերի ստեղծման մեկնակետը: Դրանով է ղեկավարվել սովետահայ քաղաքաշինության ու ճարտարապետության հիմնադիր Ալ. Թամանյանը 1923—24 թթ. Երևանի գլխավոր հատակագիծը մշակելիս: Այդ սկզբունքով են առաջնորդվել սովետահայ քաղաքաշինարարների հաջորդ սերնդի ներկայացուցիչները, որոնք 30—40-ական թթ. մշակեցին Կիրովականի, Լենինականի, Դիլիջանի, Ղափանի, Ալավերդու, Էջմիածնի և այլ բնակավայրերի գլխավոր հատակագծերն ու վերակազմեցին Երևանի հատակագիծը:

Իր 2750-ամյակը բոլորած Երևանն ապրում է երկրորդ երիտասարդությունը: Այն բնութագրվում է ո՛չ միայն բնակչության քսանապատիկ աճով (որն արդյունք է արդյունաբերության աննախընթաց զարգացման), այլև դրան համապատասխան քաղաքաշինության ծավալով ու քաղաքային բարեկարգմամբ, տրանսպորտային շարժման կազմակերպմամբ, բնակեցման շրջանների, հասարակական կենտրոնների, կանաչապատման տարածությունների, ջրային մակերեսների և, վերջապես, արդյունաբերական շրջանների հըստակ ու նպատակահարմար տեղաբաշխմամբ:

Ինքնատիպ է մեր մայրաքաղաքը: Այն ամբողջությամբ և առանձին մասերով երբեք չի կարելի շփոթել այլ քաղաքների հետ: Տեղանքը, բնակլիմայական պայմանները, գործածված շինանյութերն ու շենքերի ճարտարապետությունն ստեղծել են Երևանի անկրկնելի համայնապատկերը:

Արդյունաբերության համաչափ տեղաբաշխումը հանրապետությունում, մի կողմից՝ կասեցնում է մայրաքաղաքի արագ և անցանկալի աճը, մյուս կողմից՝ նպաստում միջին ու փոքր քաղաքների՝ Լենինականի, Կիրովականի, Ալավերդու, Ղափանի զարգացմանը, միաժամանակ հանրապետության քարտեզի վրա ստեղծելով արդյունաբերական մի շարք նոր քաղաքներ ու ավաններ— Հրազդանը, Քաջարանը, Դաստակերտը, Ագարակը, Աբովյանը, Ջարենցավանը, Թումանյանը, Արարատը և այլն:

Դրանց հատակագծերը մշակելիս ճարտարապետներ Մ. Գրիգորյանը, Տ. Մարությանը, Ս. Մանուկյանը, Պ. Թումանյանը, Փ. Մանուկյանը, Ա. Թարխանյանը, Ս. Խաչիկյանը, Մ. Գնունին, Է. Պապյանը և ուրիշներ ղեկավարվել են սովետական քաղաքաշինության արդի փուլի առաջադիմական սկզբունքներով: Շինարարությունն արագացնելու և էժանացնելու նպատակով, կառուցման ինդուստրիալ եղանակների ու տիպային նախագծերի արմատավորման հետ մեկտեղ, նրանք ջանում են նոր կառուցապատումներում բարելավել բնակեցման պայմաններն ու բնակիչների համակողմանի սպասարկումը:

Սովետական քաղաքաշինության ու ճարտարապետության մեծագույնուժը նրա ժողովրդայնությունն է, մասսայականությունը: Խոշոր մասշտաբներով իրականացվող բնակարանային շինարարությունը վերջին 10—15 տարի-

ներին առավել մեծ թափ է ստացել, ռեալ պայմաններ ստեղծելով աշխատավորների բնակարանային պայմանների բարելավման, քաղաքների հին թաղամասերի խտության և հակասանիտարական վիճակի վերացման, ժողովրդի հարաճուն պահանջմունքները բավարարող բնակելի նոր շենքերի կառուցման և դրանց պատշաճ բնակեցման վերաբերյալ մեր կուսակցության ծրագրի կենսագործման համար։

Մի շարք հանգամանքների բերումով բնակարանային շինարարությունն առժամանակ հիմնականում իրականացվեց քաղաքամերձ ազատ տարածություններում և կոմպլեքսայնորեն։ Որպես այդ ճիշտ քաղաքականության անմիջական արդյունք, արվարձաններում արագ աճեցին բնակելի նոր շրջաններ. Երևանում— Աջափնյակն ու Նորքի զանգվածը, Լենինականում— Անտառային, Կիրովականում— Դիմացինը և այլն։ Նախագծման և կառուցման մի շարք դրական կողմերով հանդերձ դրանք ունեն մասնակի թերություններ։ Բնակելի նոր զանգվածներում բարեկարգման և ինժեներական կահավորման աշխատանքներն ավարտելուց և սպասարկման հիմնարկություններով ապահովելուց հետո բարենպաստ պայմաններ կստեղծվեն հարյուր հազարավոր բնակիչների համար։

Վերջին տարիներին մասսայական բնակարանային շինարարության մի մասը զուգահեռաբար իրականացվում է քաղաքների կազմավորված կենտրոններում՝ հին կառուցապատման արմատական վերակառուցման միջոցով, որն ստեղծագործական լուրջ ու դժվարին խնդիր է։ Անհրաժեշտ է ճիշտ զուգակցել հինն ու նորը, պահպանել կառուցապատման գոյություն ունեցող մասշտաբը, գունային լուծումը, գեղագիտական մակարդակը և այլն։

Մեր ճարտարապետները քաջ գիտակցում են, որ մեծ անելիքներ ունեն բնակելի տների և մասսայական շինարարության այլ շենքերի տիպային նախագծերի ֆունկցիոնալ և գեղագիտական մակարդակի կատարելագործման բնագավառում։ Ստեղծագործական այդ կարևոր պրոբլեմը լուծելիս նրանց համար ելակետ պետք է հանդիսանա դեռևս սովետական իշխանության հաստատման առաջին տարիներին Լենինի հայտնած այն միտքը, թե մարդու կացարանը պիտի լինի հարմարավետ, միաժամանակ՝ բարետես ու գրավիչ։

Որքան էլ ծավալուն է եղել բնակարանային շինարարությունը, այնուամենայնիվ, սովետահայ ճարտարապետությանը ոճական ուղղություն են տվել հասարակական շենքերը։ Այս բնագավառը, իր զարգացման բոլոր փուլերում, կարծես փորձագիտական լաբորատորիա է եղել ֆունկցիոնալ տեխնիկական և ստեղծագործական-գեղագիտական որոնումների համար։ Միաժամանակ, վարչա-հասարակական շենքերը մեծ դեր են խաղացել Երևանի, Լենինականի, Կիրովականի և մյուս քաղաքների ու բնակավայրերի ճարտարապետական դեմքի կազմավորման գործում։ Այդպիսիք են՝ մայրաքաղաքի Լենինի հրապարակի վարչա-հասարակական շենքերը, որոնք մի ներդաշնակ ճարտարապետական անսամբլ են, Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի, Հայֆիլհարմոնիայի մեծ դահլիճի (Ալ. Թամանյան, Գ. Թամանյան), կենտրոնական հանրախանութի (Ա. Ահարոնյան, Մ. Մազմանյան, Հ. Մարգարյան, Գ. Քոչար), «Մոսկվա» կինոթատրոնի (Տ. Երկանյան, Գ. Քոչար), ՀԿԿ Կենտրոնական կոմիտեի, Գերագույն սովետի, Մատենադարանի (Մ. Գրիգորյան), գիտությունների ակադեմիայի (Ս. Սաֆարյան), կենտրոնական ծածկած շուկայի և ավտոկայանի (Գ. Աղաբաբյան), երկաթուղային կայա-



րանի և պետական համալսարանի (Է. Տիգրանյան), Գ. Սունդուկյանի անվան թատրոնի (Ռ. Ալավերդյան, Ռ. Բադալյան, մասնակցությամբ՝ Ս. Բուրխաջյանի և Գ. Մնացականյանի) շենքերը, հանրապետական մարզադաշտը (Կ. Հակոբյան) ու ճարտարապետներ Ս. Սաֆարյանի, Հ. Մարգարյանի, Ա. Մամիջանյանի, Է. Տիգրանյանի, Մ. Միքայելյանի, Է. Սարապյանի, Ճ. Ազատյանի, Բ. Արզումանյանի, Ջ. Թորոսյանի, Վ. Հյուսյանի և այլոց նախագծերով կառուցված բարձրագույն դպրոցների, տեխնիկումների, գիտահետազոտական ու բուժական հիմնարկությունների բազում շենքեր։

Կառավարական տան (Ալ. Թամանյան) և ՀԿԿ Կենտկոմի շենքերն արժանացել են պետական մրցանակի, Լենինի հրապարակի (Ալ. և Գ. Թամանյաններ, Մ. Գրիգորյան, Է. Սարապյան, Ս. Սաֆարյան, Վ. Արեշատյան, Ն. Փարեմուզյան) ճարտարապետական անսամբլը Սունդուկյանի անվան դրամատիկական թատրոնի շենքը՝ հանրապետական մրցանակի։ Երևանի հասարակական կենտրոնների հետ մեկտեղ կուռ է և ներդաշնակ նրա գլխավոր մայրուղիների ու փողոցների ճարտարապետությունը՝ լուծված ոճական ամբողջականությամբ ու մոնումենտալ ձևերով։

Երևանի սոցիալիստական վերակառուցման բուռն ընթացքն իր որոշակի բարերար ազդեցությունն է ունեցել հանրապետության միջին ու փոքր քաղաքների և շրջանային կենտրոնների վրա, որոնք, վերակառուցվելով ու կառուցապատվելով, զգալիորեն կերպարանափոխվել են։ Հասարակական շենքերը հիմք են հանդիսացել հասարակական կենտրոնների ու գլխավոր մայրուղիների ճարտարապետական դեմքի կազմավորման համար։ Դրանցից են՝ քաղաքային սովետի գործկոմի (Գ. Քոչար), կուսակցության քաղաքային կոմիտեի (Ջ. Բախշինյան), հյուրանոցի (Դ. Ջիսլև), հանրախանութի (Ս. Ասոյան), կառուցվող թատրոնի (Ս. Սաֆարյան, Մ. Միքայելյան, Ռ. Բաղդասարյան) շենքերը Լենինականում, քաղաքային սովետի գործկոմի, հյուրանոցի (Հ. Մարգարյան, Բ. Արզումանյան), կուսակցության քաղաքային կոմիտեի (Ջ. Բախշինյան), քիմկոմբինատի կուլտուրայի տան (Ճ. Ազատյան, Մ. Ալահվերդյան) շենքերը Կիրովականում։

Հասարակական շենքերի ճարտարապետության մի ինքնուրույն բնագավառ է հանրապետության առողջարանների կառուցումը. այս ասպարեզում զգալի ավանդ են ներդրել ճարտարապետներ Գ. Քոչարը (հանգստյան տներ Դիլիջանում և Սևանում), Ս. Սաֆարյանը (Արզնու), Ջ. Բախշինյանը (Գոլովինոյի), Մ. Գրիգորյանը (Ջերմուկի, Հանքավանի և Սևանի առողջարանները), Գ. Թամանյանը (Ջերմուկի առողջարանի, լողարանների և ըմպելասրահի շենքերը), Հ. Մարգարյանը (Արզնու լողարանների շենքը), Է. Տիգրանյանը (Ջերմուկի առողջարանը), Ռ. Իսրայելյանը, Ս. Պետրոսյանը (Աղվերանի պանսիոնատի շենքը), Է. Ալթունյանը (կոմպոզիտորների հանգստյան տան համալիրը Գոլովինոյում), Լ. Չերքեզյանը (առողջարան Արզնիում, հանգստի տնակներ Սևանում, Հանքավանում) և ուրիշներ։

Զուտ ֆունկցիոնալ կարգի հարցերի հետ մեկտեղ հեղինակները կարողացել են առանձին շենքերը կամ ամբողջական համալիրները հաջողությամբ ներդաշնակել տեղանքի պայմաններին, բնական միջավայրին։ Այս առումով ուշագրավ են Հանքավանի, Արզնու կլինիկական առողջարանները, Ջերմուկի ըմպելասրահի և, հատկապես, Աղվերանի պանսիոնատի շենքերը։

Սովետահայ ճարտարապետության զարգացման բոլոր փուլերում առաջատար նշանակություն է ունեցել հասարակական շենքերի՝ դպրոցների, ման-

կապարտեզների, կուլտուրայի տների, ակումբների, կինոթատրոնների, խանութների և սպասարկման տարբեր նպատակների ծառայող այլ շենքերի կառուցումը։ Համմարավետ ֆունկցիոնալ լուծման հետ միասին, իրենց բովանդակության համար արտաքին ճարտարապետությամբ դրանք նպաստում են քաղաքների, բնակավայրերի քաղաքաշինական մակարդակի կազմավորմանը։

Մեր հանրապետությունում հաջողությամբ իրականացվում է մոնումենտալ պրոպագանդայի լենինյան պլանը՝ հարստացնելով բնակավայրերի գաղափարական ու գեղարվեստական բովանդակությունը։ Ճարտարապետների, քանդակագործների ու նկարիչների համատեղ ստեղծագործական ջանքերով բարձրանում են հեղափոխական գործիչների, պատմա-հեղափոխական իրադարձությունները նշանավորող, հաղթանակը դարբնող մարտիկներին, կուլտուրայի ականավոր գործիչներին հավերժացնող հուշարձաններ ու կոթողներ։

Երախտագետ հայ ժողովուրդն իր նոր պետության մայրաքաղաքում կանգնեցրել է մեծ Լենինի հոյակերտ արձանը (Ս. Մերկուրով, Լ. Վարդանյան, Ն. Փարեմուզյան)։ Պատմա-հեղափոխական թեմաներով իրականացված հուշարձաններից ու կոթողներից են՝ Ստ. Շահումյանի արձանը Երևանի համանուն հրապարակում (Ս. Մերկուրով, Ի. Ժոլտովսկի), Մայիսյան ապստամբության կոթողը Լենինականում (Գ. Քոչար, Արա Սարգսյան), հիսնամյակինը՝ Երևանում (Ջ. Թորոսյան, Ս. Գուրզադյան), զոհված կոմունարների հուշարձանը Գորիսում (Արա Հարությունյան, Վ. Սարգսյան), Կիրովի արձանը Կիրովականում (Արա Սարգսյան), Լենինինը՝ Գորիսում (Ս. Ստեփանյան, Գ. Մուշեղյան), Կամոյում (Արա Սարգսյան), Մյասնիկյանինը՝ Մարտունիում (Ս. Մանասյան) և այլն։

Սովետահայ ճարտարապետության ու քանդակագործության աչքի ընկնող գործ է պետական մրցանակի արժանացած «Հաղթանակ» մոնումենտը (Ռ. Իսրայելյան, Ս. Մերկուրով)։ Աշխատավոր ժողովրդի նախաձեռնությամբ ու միջոցներով Հայրենական պատերազմի հաղթանակն ու զոհվածների հիշատակը հավերժացնող բազմաթիվ այլ հուշարձաններ ու կոթողներ են բարձրանում հանրապետության քաղաքներում ու գյուղերում։

Մեր ճարտարապետության ու քանդակագործության բացառիկ հաջողված երկերից են Սասունցի Դավթի արձանը (Ե. Քոչար), եղեռնի զոհերի ու վերածննդի (Ա. Թարխանյան, Ս. Քալաշյան, Հ. Խաչատրյան), Սարդարապատի բախտորոշ ճակատամարտի հուշարձանախմբերը (Ռ. Իսրայելյան, Ա. Հարությունյան, Ս. Մանասյան, Ա. Շահինյան)։

Երևանի և մյուս քաղաքների հրապարակները, փողոցներն ու պուրակները զարդարում են հայ և ռուս կուլտուրայի նշանավոր գործիչների՝ Ալ. Սպենդիարյանի, Հ. Թումանյանի, Մ. Նալբանդյանի, Ա. Իսահակյանի, Սայաթ-Նովայի, Հ. Պարոնյանի, Ա. Պուշկինի, Ա. Չեխովի, Ե. Չարենցի, Մուրացանի և ուրիշների, արձաններն ու կիսանդրիները։ Մոնումենտալ արվեստի բազմապիսի միջոցներ առավել մեծ տեղ են գրավում մեր քաղաքաշինության ու ճարտարապետության ասպարեզում։ Հասարակական շենքերի ճակատները, ներքնակողմերը, քաղաքների փողոցները, զբոսայգիներն ու պուրակները զարդարում են որմնանկարները, խճանկարները, հարթաքանդակները...

Երկրի ինդուստրացման շնորհիվ հանրապետությունում արդյունաբերության բուռն զարգացումը կյանքի կոչեց և, որպես ինքնուրույն բնագավառ, կազմավորեց արդյունաբերական ճարտարապետությունը, որի տեսակարար կշիռը սովետահայ ճարտարապետության նվաճումներում շոշափելի է։

Արտադրական այնպիսի համալիրներ, ինչպիսիք են՝ «Արարատ» տրեստի գինու (Ռ. Իսրայելյան, առաջին հերթի հեղինակն է նաև Գ. Քոչարը), կոնյակի գործարանների (Հ. Մարգարյան), սառնարանի (Գ. Աղաբաբյան) շենքերն աչքի են զարնում իրենց ճարտարապետական բարձր արվեստով. դրանցից յուրաքանչյուրը քաղաքաշինական տեսակետից կարևոր տեղ է գրավում մայրաքաղաքում՝ կազմավորելով կարևոր հանգույցները։

Ավելի խոշոր արդյունաբերական համալիրները՝ Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատը, Կիրովականի Մյասնիկյանի անվան քիմկոմբինատը (Ն. Բարանով) և արհեստական մետաքսաթելի գործարանը (Կ. Խուդաբաշյան, Բ. Հարությունյան), Երևանի Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը (Վ. Աճեմյան, Ա. Գալիկյան, Օ. Դոխիկյան, Մ. Մխիթարյան, Հ. Պողոսյան) քաղաքաշինական առումով բնորոշում են հիշյալ քաղաքների արդյունաբերական շրջանների ճարտարապետական դեմքը։

Արդյունաբերական շենքերի նախագծման ու շինարարության բնագավառում հետևողականորեն արմատավորվում են շենքերի ֆունկցիոնալ լուծումը բարելավող, կառուցումն էժանացնող ու արագացնող միջոցներ։

Երկրի էլեկտրիֆիկացման պլանի կենսագործմամբ հանրապետությունը հարստացավ մեծ ու փոքր հիդրոէլեկտրակայանների ու հզոր ջերմակայանների ցանցով։ Ճարտարապետության այս նոր բնագավառում ծավալա-տարածական մոնումենտալ ձևերով աչքի են ընկնում Երևանի առաջին (Ալ. Թամանյան), Քանաքեռի (Մ. Գրիգորյան) և Գյումուշի (Տ. Մարության) հիդրոկայանների շենքերը։ Բարձր վարպետությամբ են լուծված Սևանի ստորերկրյա (Ս. Սաֆարյան) և Արզնու (Տ. Մարության) հիդրոկայանների գեներատորային դահլիճների ներքնակողմերը։ Ճարտարապետներ Տ. Մարությանի, Ս. Մանուկյանի և այլոց նախագծերով կառուցվել են շրջանային հիդրոէլեկտրակայանների մի քանի տասնյակ գողտրիկ շենքեր։

Իրենց տեխնոլոգիային համապատասխան ճարտարապետական մարմնավորում են ստացել Երևանի, Հրազդանի և Կիրովականի ջերմաէլեկտրակայանների հսկայածավալ համալիրները։

Ջրաշինարարական աշխատանքների ծավալման կապակցությամբ Հայաստանում զարգացել է նաև ճարտարապետության մի այլ բնագավառ։ Շիրակի, Երևանի, Արզնի-Շամիրամի, Թալինի ջրանցքների առանձին կառուցվածքները և ջրանցույցները, Հրազդանի բարաժները, Այգր լճի, Քանաքեռի, Արենիի, Վահագնի և ջրհան այլ կայանների շենքերն ուշագրավ են իրենց ճարտարապետական ինքնատիպ լուծումներով։

Հանրապետության ինժեներական կառուցվածքների լավագույն նմուշներ են Երևանի «Հաղթանակ» և Հրազդանի մեծ կամուրջները, Հրազդանի ջրանցույցը, Աշտարակի կամուրջը, որոնք ստեղծվել են ինժեներներ Ս. Հովնանյանի, Վ. Փինաջյանի, Գ. Եղյանի և ճարտարապետներ Գ. Աղաբաբյանի, Ռ. Իսրայելյանի, Ա. Ասատրյանի և այլոց համագործակցությամբ։

Աշխատավոր ժողովրդի նկատմամբ անսահման հոգատարությամբ համակված ու նրա բարօրության բարձրացմամբ մտահոգ, Վլադիմիր Իլյիչը երազում էր գյուղի և քաղաքի միջև գոյություն ունեցող տարբերությունների համահարթման մասին։ Ուելսի հետ ունեցած զրույցի ժամանակ նա ասել է. մեր երկրում կվերակառուցվեն ոչ միայն քաղաքները, գյուղերը ևս անճանաչելիորեն կվերափոխվեն։

Թեև այդ ասպարեզում դեռ կան շատ անելիքներ, սակայն ակնառու են արդեն ուրախալի հաջողությունները։ Սովետական Հայաստանի բազմաթիվ գյուղերում կարելի է տեսնել շինարար ժողովրդի եռանդուն ջանքերի պտուղ-

ները, աշխատավոր գյուղացիության տնտեսական բարգավաճման վրա խարսխված նոր կենցաղի ծիլերը: Հաճելի է գիտակցել, որ այդ առաջընթացում իրենց ավանդն են ներդրել նաև սովետահայ ճարտարապետները: Հանրապետության շատ գյուղեր ու ավաններ վերակառուցվում, կառուցապատվում են Մ. Մազմանյանի, Տ. Մարությանի, Ս. Մանուկյանի, Բ. Սմբատյանի, Պ. Խոյեցյանի, Լ. Գորյանի, Հ. Ավանեսյանի և այլոց կազմած հատակագծերով:

Ուշադիր վերաբերմունք ժողովրդի հարուստ ժառանգության նկատմամբ և անդուլ ձգտում՝ այն ստեղծագործաբար շարունակելու և զարգացնելու. Լենինյան պատգամը հիմք դարձավ սոցիալիստական ազգությունների ողջ կուլտուրայի, ինչպես և ճարտարապետության ծաղկման համար:

Առաջնորդվելով ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական նշանաբանով՝ սովետական ժողովուրդները զարկ տվին արտահայտչական բազում միջոցներով մարմնավորված արվեստին ու ճարտարապետությանը: Այդ նշանաբանով են ստեղծագործել սովետահայ ճարտարապետության հիմնադիր Ալ. Թամանյանն ու իր դպրոցի հետևորդների մի քանի սերունդների վարպետները: Սովետահայ ճարտարապետության ազգային առանձնահատկությունն արդյունք է հայ ժողովրդի բազմադարյան շինարարական-ճարտարապետական հարուստ ավանդույթների ու փորձի գործադրման, տեղի բնակլիմայական պայմաններն ու շինանյութերը, ժողովրդի գեղարվեստական պատկերացումները հաշվի առնելու:

Այդ ճանապարհով պետք է ընթանա սովետահայ ճարտարապետությունն իր զարգացման նաև արդի փուլում, երբ անհրաժեշտությունը թելադրում է ստեղծագործական արմատական վերակառուցում նախագծման ու շինարարության ասպարեզում, կառուցման պրոցեսների լիակատար ինդուստրացում, նոր շինանյութերի լայն կիրառում և այլն: Այժմ անհրաժեշտ է ցուցաբերել սկզբունքորեն նոր մոտեցում անցյալի ժառանգության նկատմամբ, որոնել ու գտնել նոր ուղիներ ճարտարապետության ազգային ինքնատիպության պահպանման, տեղական շինանյութերի անսահման հարուստ տեսակների օգտագործման համար, միաժամանակ, լայնորեն յուրացնել արդի քաղաքաշինության ու ճարտարապետության առաջադիմական փորձն ու նվաճումները:

Վերջին տարիների նախնական արդյունքները ցույց են տալիս, որ ստեղծագործական այդ դժվարին խնդիրը լուծելի է: Հուսով ենք, մեր ճարտարապետները, նորարարական իրենց որոնումներով, առաջիկա գործերում յուրովի կմարմնավորեն սովետահայ ճարտարապետության ազգային ինքնատիպությունը: Այդ անհրաժեշտ, կասեինք՝ հրամայական խնդիր է, վերականգնելու համար ճարտարապետության փոքր-ինչ խախտված գեղագիտական դերն ու նշանակությունը, հաղթահարելու այն միօրինակությունն ու տաղտկալիությունը, որ, այժմյան մասսայական շինարարության անցանկալի ուղեկիցն է դարձել:

Ճարտարապետական գիտությունը մեզ մոտ զարգացել է երկու հիմնական ուղղությամբ: Դրանցից մեկը, որ նվիրված է պատմությանը և տեսությանը, համեմատաբար ավելի երկար ճամփա է անցել, հետևապես արդյունքներն առավել շոշափելի են: Հայ ճարտարապետության պատմության ուսումնասիրման բնագավառում Թ. Թորամանյանի մեծ գործի շարունակողների ավագ, միջին և երիտասարդ սերնդի ներկայացուցիչներն իրենց արժեքավոր աշխատություններով մեծ չափով ընդարձակեցին հայ ժողովրդի ճարտարապետական հարուստ ժառանգության հետազոտության շրջանակները: Արգասավոր են դառնում ջանքերը քաղաքաշինության և ճարտարապետության պրակտիկայի այժմեական հարցերի մշակման և փորձարարական նախագծման ասպարեզում, ուր անելիքներ շատ կան, քանի որ գիտության այդ բնագավառը մեզ մոտ դեռևս նոր է հարթում իր ճանապարհը: Անհրաժեշտ է բազմակողմանի ուսումնասիրել Սովետական Հայաստանի ինքնատիպ պայմաններին համապատասխան հատակագծման, նախագծման ու նոր կոնստրուկցիաների մշակման անհետաձգելի հարցերը, դրական արդյունքները ներդնել փորձնական ու մասսայական շինարարության մեջ:

* * *

Ինչպես բոլոր բնագավառների, նույնպես և ճարտարապետության հաջողությունները մեծ չափով պայմանավորված են համապատասխան մասնագիտական կադրերի առկայությամբ, նրանց պատրաստման գործի կազմակերպմամբ: Եթե քսանական թվականներին, երբ նոր էին ձեռնարկվում շինարարական աշխատանքները, տեղացի և Ռուսաստանի տարբեր քաղաքներից Հայաստան եկած մասնագիտական փոքրաթիվ կադրերը կարողանում էին կատարել իրենց առջև ծառացած խնդիրները, ապա հետագա տասնամյակների համար անհրաժեշտ էին անհամեմատ ավելի շատ մասնագետներ: Այդ է պատճառը, որ դեռևս քսանական թվականների սկզբին Սովետական Հայաստանի կառավարությունը մտահոգվեց ճարտարապետական-շինարարական կադրերի պատրաստմամբ: Մեծ է Երևանի ինդուստրիալ (հետագայում Ալ. Թամանյանի անվան շինարարական) տեխնիկումի և պետական համալսարանի տեխնիկական ֆակուլտետի (որ 1930 թ. վերածվեց Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի) երախտիքը հանրապետությունը ճարտարապետական-շինարարական կադրերով ապահովելու գործում:

Առաջին շրջանավարտները (1928 թ.) ո՛չ միայն ստեղծագործական աշխատանքի ասպարեզ մտան, այլև նրանցից մի քանիսը ավագ սերնդի ներկայացուցիչների հետ դարձան ճարտարապետների նոր սերնդի դաստիարակներ:

Հանրապետությունում աշխատող ճարտարապետների թիվը համալրեցին պոլիտեխնիկական ինստիտուտի ճարտարապետական բաժնի 1932, 1934 և 1937 թթ. շրջանավարտները, ինչպես նաև Լենինգրադում, Մոսկվայում և այլ քաղաքներում ճարտարապետական կրթություն ստացած ու Երևան փոխադրված մասնագետները: Նախագծային գործի աննախընթաց ծավալմանը զուգընթաց մեծանում է ճարտարապետների պահանջը:

Եվ ահա 1943 թ., վերաբացվեց Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի շինարարական ֆակուլտետին կից ճարտարապետական բաժինը. 1949 թ. սկսած ամեն տարի այդ բաժինն ավարտում են 20—25, իսկ 1969 թ.՝ 40—45 հոգի: Որոշ ընդմիջումներով տեխնիկ-ճարտարապետների շրջանավարտներ է տալիս Երևանի շինարարական տեխնիկումը:

* * *

50-ամյակը բոլորած մեր հանրապետության ընդհանուր նվաճումներում իրենց ավանդն ունեն մեր ճարտարապետները, որոնք շատ բան են արել ճարտարապետական արվեստի միջոցները ժողովրդի բարօրությանը ծառայեցնելու և այսուհետև ևս ջանում են նորանոր հաջողություններով զորավիգ լինել հարազատ ժողովրդի պատմական մեծ առաջընթացին:



## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵ

### ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՄԱՐՔՍ Կ. և ԷՆԳԵԼՍ Ֆ.— Երկեր, *երկրորդ հրատ., հ. 41, Մ., Քաղհրատ, 1970, 622 էջ։*

ՄԱՐՔՍ Կ., ԷՆԳԵԼՍ Ֆ., ԼԵՆԻՆ Վ. Ի.— Փարիզյան կոմունայի մասին *(ժողովածու), Մ., Քաղհրատ, 1970, 296 էջ։*

*Այստեղ ամփոփված են Մարքսի, Էնգելսի, Լենինի ճառերն ու նամակները՝ նվիրված Փարիզյան կոմունայի պատմությանը, նշանակությանն ու դասերին։*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Երկերի լիակատար ժողովածու, *հինգերորդ հրատ., հ. 54։ Նամակներ, 1921 թ. նոյեմբերից 1923 թ. մարտը։ Մ., Քաղհրատ, 880 էջ։*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Երկերի լիակատար ժողովածու, *հինգերորդ հրատ., հ. 55։ Նամակներ հարազատներին 1893—1922։ Մ., Քաղհրատ, 672 էջ։*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Աշխատանքի արտադրողականության մասին։ *«Հայաստան» հրատ., 1970, 198 էջ։*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Արհմիությունների մասին *(Հոդվածներ, զեկուցումներ, ճառեր, նամակներ) 1894—1922։ Մ., Պրոֆհրատ, 1970, 426 էջ։*

Վ. Ի. Լենինի զինակիցները՝ ՍՍՀՄ արհմիությունների կազմակերպիչները։ *Մ., Պրոֆհրատ., 1970, 239 էջ։*

*Հեղինակային կոլեկտիվն այս գրքում արտացոլել է Յա. Մ. Սվերդլովի, Մ. Ի. Կալինինի, Ֆ. Է. Ձերժինսկու, Գ. Կ. Օրջոնիկիձեի, Ս. Մ. Կիրովի, Վ. Վ. Կույբիշևի, Պ. Պ. Պոստիշևի, Յա. Է. Ռուձուտակի, Ա. Ա. Անդրեևի, Ն. Կ. Կրուպսկայայի, Գ. Ի. Պետրովսկու, Ֆ. Ա. Սերգեևի (Արտեմ), Վ. Պ. Նոգինի արհմիութենական գործունեությունը։*

ՌԱԶԱԵՎ Ս. Ա.— Վ. Ի. Լենինը և սովետական ազգային պետականությունը։ *Դուշանբե, «Իրֆոն» հրատ., 1970, 687 էջ։*

Չինական հեղափոխության մասնակից ականավոր սովետական կոմունիստները։ *Մ., «Наука» հրատ., 1970, 111 էջ։*

*Այստեղ արտացոլված է Լ. Մ. Կարախանի (1889—1937), Մ. Մ. Բորոդինի (1884—1951), Վ. Կ. Բլյուխերի (1889—1938), Գ. Ն. Վոյտինսկու (1893—1953), Պ. Ա. Միֆի (1901—1938) և Լ. Ի. Մադյարի (1891—1937) գործունեությունը Չինաստանում, նրանց օգնությունը չինական հեղափոխականներին։*

Լենինիզմը և պատմա-փիլիսոփայական գիտությունների ժամանակակից խնդիրները։ *Մ., «Наука» հրատ., 1970, 619 էջ։*

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

Ի տ. գլխավոր խմբագրի՝ Վ. Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ, ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Адрес редакции, — Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33 Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64։

*ՎՖ 03334 Պատվեր 398 Թղթի չափսը $70\times108^{1}/_{16}$։ Տիրաժ 13000 Գինը 25 կոպ.։*

*Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 16/III 1971 թ.։*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյանի փող. № 28։*

*Թյա...*
*խագծ...*
*բնագավ...*
*բազմակո...*
*մաններ...*

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ՏՈՒՐԻՍՏՆԵՐԻ ՀԱՄԱՐ.— *Երևանի ավտոգործարանի կոնստրուկտորներն ստեղծել են նոր ավտոմեքենա՝ իր բոլոր հարմարություններով, ընտանիքով տուրիստական ուղևորություն կատարելու համար։*

*Նրա ֆուրգոնում կա ճաշարան-ննջարան, խոհանոց, գազային ջեռուցման սարքավորում։*

*Մեքենան նախատեսված է տուրիստական բազաների համար։ Վարորդի իրավունք ունեցողները մեկ ամիս և ավելի ժամանակով այստեղից կարող են վարձույթով վերցնել այն և ընտանիքով հանգստանալ բնության գրկում։*

ՃԱՄՓՈՐԴԱԿԱՆ ՍԱՌՆԱՐԱՆ.— *Օդեսայի «Ավտոգենմաշ» գործարանն սկսել է «Снежинка» մակնիշի ավտոսառնարանների սերիական թողարկումը, որոնք ճանապարհին լավ են պահպանում սննդամթերքները։ Այն նախատեսված է ավտոմեքենայով կամ մոտորային նավակով ճամփորդողների համար։*

*Սառնարանի քաշը 5 կիլոգրամ է, տարողությունը՝ 8 լիտր։ Այն կարելի է տեղակայել «Վոլգայի», «Մոսկվիչի» կամ նավակի բեռնատեղում։*

ԱԽՏՈՐՈՇՈՒՄ ՀԵՌԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՎՐԱ.— *Ճերմակ խալաթով մարդը խոնարհվել է պուլտի վրա։ Զգայուն սարքերը հաղորդում են հիվանդի օրգանիզմի վիճակի մասին— զարկերի, շնչառության հաճախականությունը, իսկ հիվանդը բժշկից հեռու է, նա լողում է, կամ պրոցեդուրաներ ընդունում, բուժիչ շարժումներ կատարում, կամ զբոսնում։*

*Օգտագործելով կոսմիկական բժշկության փորձը՝ Սոչիի կուրորտոլոգիայի և ֆիզիոթերապիայի ինստիտուտի գիտնականները մշակել են հեռավորության վրա հիվանդին զննելու յուրատեսակ մեթոդ։ Դա օգնում է նրանց՝ պարզելու հիվանդության բնույթը և ճշգրիտ ախտորոշելու։*

*Հեռավորության վրա զննման այս մեթոդը կիրառվում է Անապայի, Գելենջիկի և Սոչիի առողջարաններում։*

ԿԱՊԻ ՀԱՐՄԱՐ ՄԻՋՈՑ.— *Ռադիոտոնման երկկողմանի կապի ապարատուրա են ստեղծել «Սիգմա» միավորման ինժեներները։ Այդ սարքի կառավարման հատուկ կետը՝ աբոնենտային ընդունիչ-հաղորդիչը, կարելի է տեղավորել պարզապես գրպանում։ Ցանկացած աբոնենտին զանգահարելու համար անհրաժեշտ է վերցնել լսափողը և կառավարման կետում հավաքել նրա համարը։*

*«Рико—60» սարքավորումը խոշոր ձեռնարկությունների ղեկավարների լավ օգնականն է։ Դրանով կարելի է կապվել գործարանի տերիտորիայում գտնվող ցանկացած մարդու հետ։ Գործունեության մոտ 2 կմ տրամագիծ ունեցող այս սարքավորումը կապ է հաստատում մոտ 60 աբոնենտի հետ (Վիլնյուս)։*

ԽՆՁՈՐՆ ԸՆԴԴԵՄ ՄԱՆՐԷՆԵՐԻ.— *Անգլիական «Նյու-Սայնետիստ» ամսագիրը հաղորդում է, թե ԱՄՀ-ի Ալեքսանդրիայի համալսարանի գիտնականների ուսումնասիրություններից պարզվել է, որ խնձորի պարունակած պեկտին նյութն օժտված է հակամանրէային ուժեղ ներգործությամբ։ Մեկ տոկոսանոց խտացված պեկտինը 15 րոպեում ոչնչացնում է մեկ գրամ բացասական մանրէների 90 տոկոսը, իսկ երկու ժամում՝ գրեթե բոլոր տեսակի մանրէները։*



ԳԻՆԸ 25 ԿՈՊ. 77783

# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## 1971 թվականի ապրիլ—դեկտեմբեր ամիսների բաժանորդագրությունը

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*հրապարակում է հոդվածներ ՍՄԿԿ և ՀԿԿ պատմության, հեղափոխական շարժման, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի, միջազգային կյանքի վերաբերյալ։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է հանրապետությունում կոմունիստական շինարարության պրակտիկան, զետեղում նյութեր կուսակցական, կոմերիտական, պրոֆմիութենական և սովետական շինարարության, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերի մասին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է գիտության, գրականության ու արվեստի զարգացման հարցերը, տպագրում կոնսուլտացիաներ, տեղեկանքներ, մամուլի տեսություններ, քննադատական-գրախոսական հոդվածներ, պատասխանում ընթերցողների հարցերին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*տպագրում է նյութեր եղբայրական սովետական հանրապետությունների, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, միջազգային կոմունիստական շարժման մասին։*

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ

Ինը ամիսը— 2 ռ. 25 կ.
Վեց ամիսը— 1 ռ. 50 կ.
Երեք ամիսը— 75 կ.

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝

*կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով։*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*